## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Гос. Библиотека ... Арм.ССР им. А. М...

09 APR 2013


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


Բովանդակություն

Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина

ամս 29105



digitised by A.R.A.R.@

# Содержание



# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԱՌԱՋԱՏԱՐ ՈՒԺՆ Է

Կապիտալիզմից դեպի կոմունիզմ մարդկության անցումը մարքսիստ լենինյաններն անխզելիորեն կապում են բանվոր դասակարգի հեղափոխիչ գործունեության հետ:

Գիտական կոմունիզմի հիմնադիրները ցույց են տվել, որ կապիտալիզմի զարգացման հետ ծնվում է նաև արդյունաբերական բանվորների՝ պրոլետարների առանձին դասակարգը, որ խոշոր արդյունաբերության զարգացման համեմատ աճում ու զարգանում է պրոլետարիատը, որ պրոլետարիատը կապիտալիզմի պայմաններում ոչ միայն տուժող, այլև պայքարող դասակարգ է: Բուրժուական հասարակության մեջ բանվոր դասակարգի դրությունը, նրա գոյության պայմանները, նրա կյանքի ամբողջ կացութաձևը նրան թշնամացնում են վարձու ստրկության հասարակարգի հետ, դարձնում նրան արտադրության նոր եղանակի, նոր հասարակական հարաբերությունների ստեղծողը, որոնք բացառում են մարդու շահագործումը մարդու կողմից: Այդ դասակարգը իրեն ազատագրել չի կարող, առանց ոչնչացնելու սոցիալական և ազգային կեղեքման բոլոր ձևերը: Ուստի, նա բոլոր ճնշվածների և շահագործվողների հեղափոխական պայքարի բնական ղեկավարն է: Չունենալով մասնավոր սեփականություն, լինելով կապիտալիստական հասարակության բոլոր դասակարգերից առավել ճնշվածն ու շահագործվողը, պրոլետարիատը իր մեջ խտացնում է իսկայական հեղափոխական եռանդ, ընդունակ է գլխավորելու աշխատավորների ազատագրական պայքարը և կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ այդ պայքարը հասցնելու մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը:

Ի դեմս բանվոր դասակարգի բացահայտելով այն հասարակական ուժը, որն ի վիճակի է ոչնչացնելու կապիտալիզմը և կառուցելու կոմունիստական հասարակարգ, մարքսիզմի հիմնադիրները սոցիալիզմը ուտոպիայից վերածեցին գիտության: Մարքսիզմ-լենինիզմի մեջ գլխավորը բանվոր դասակարգի համաշխարհային պատմական միսիայի մասին ուսմունքն է: Առանց այդ գլխավոր բովանդակության չկա և չի կարող լինել մարքսիզմ-լենինիզմ:

Պատմական փորձը ամբողջովին հաստատում է բանվոր դասակարգի՝ որպես հասարակության հեղափոխական առաջատար ուժի, սոցիալիստական իդեալների կրողի և կոմունիզմի առաջավոր մարտիկի մասին մարքս-լենինյան ուսմունքի ճշմարտացիությունը:

Բուրժուազիայի դեմ բանվոր դասակարգի պայքարն սկսվում է նրա



digitised by A.R.A.R.@

սկզբնավորման պահից և իր հարստացմամբ անցնում զարգացման պատմական
մի շարք էտապներ: Բանվորների մասնակցությունը առաջին հեղափոխական
ճակատամարտերին թեժացրեց իրադարձությունները: 1848 թվականի հեղափո-
խության ժամանակ առաջին անգամ բացեիբաց բախվեցին երկու անհաշտ
ուժեր՝ պրոլետարիատը և բուրժուազիան: 1848 թվականի հունիսին Փարիզի
փողոցներում, նշել է Ֆ. Էնգելսը, «տեղի ունեցավ առաջին մեծ ճակատամարտը
պրոլետարիատի և բուրժուազիայի միջև՝ տիրապետության համար...» (Կ. Մարքս
և Ֆ. Էնգելս—Երկեր, հատ. 22, էջ 532) : Այդ ժամանակից ի վեր սկսվեց բանվոր
դասակարգի մեծ ու վճռական կռիվը ընդդեմ բուրժուազիայի, հանուն սոցիալիզ-
մի հաղթանակի:

Բազում տասնամյակներ միջազգային բանվորական շարժումը անշեղորեն
զարգանում և կոփվում էր դասակարգային ճակատամարտերում, դառնում ավե-
լի ու ավելի գիտակցական ու կազմակերպված, հզոր ներգործություն ունենա-
լով պատմության ընթացքի վրա: Վերընթաց դասակարգի այդ ճանապարհի
փառավոր ուղենիշները եղան Փարիզի կոմունարների հերոսական ապստամ-
բությունը, Ռուսաստանում տեղի ունեցած հեղափոխությունները 1905 և 1917
թվականներին: Բանվոր դասակարգի հեղափոխական եռանդի և ստեղծագոր-
ծական հնարավորությունների խորագույն արտահայտությունը հանդիսացան
Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը և սոցիալիզմի կառուցումը մեր
երկրում: Այդ համաշխարհային պատմական իրադարձությունները, ինչպես
նաև Եվրոպայի ու Ասիայի մի շարք այլ երկրներում սոցիալիստական հեղափո-
խությունների հաղթանակը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյավորումը
և միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման հզոր զարգացումը
բանվոր դասակարգին, որպես հասարակության ամենաառաջադեմ ու հեղա-
փոխական դասակարգի, կանգնեցրին արդի դարաշրջանի կենտրոնում:

Բանվոր դասակարգը, հիրավի, անսպառ հեղափոխական եռանդ ունի: Բայց
նրա պոտենցիալ հնարավորությունները միայն այն ժամանակ կդառնան իրա-
կան ուժ, երբ բանվորները կգիտակցեն իրենց դասակարգային շահերը, կյու-
րացնեն սոցիալիզմի գաղափարները, երբ բանվոր դասակարգը կստեղծի առա-
ջավոր տեսությամբ պինված իր հեղափոխական կուսակցությունը, կկարողանա
իր շուրջը համախմբել քաղաքի և գյուղի աշխատավորության լայն կանգվածնե-
րին և նրանց առաջնորդել դեպի սոցիալիզմ:

Գիտական սոցիալիզմը բանվորական շարժման հետ միացնելը բանվոր դա-
սակարգի ուժի և անպարտելիության աղբյուրն է: Միայն մարտական մարքսիս-
տական կուսակցությունն է ընդունակ կենտրոնացնելու, միավորելու բանվոր-
ների անջատ-անջատ գործողությունները, կազմակերպելու և ղեկավարելու բան-
վոր դասակարգի պայքարը նրա բոլոր հիմնական ուղղություններով՝ տեսական,
քաղաքական և տնտեսական: Ընդգծելով հեղափոխական կուսակցության նշա-
նակությունը, Վ. Ի. Լենինը հայտարարում էր. «Պրոլետարիատը այլ զենք չունի
իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից» (Եր-
կեր, հատ. 7, էջ 535) :

Հեղափոխության հաղթանակի արմատական պայմանը բանվոր դասակար-
գի դաշինքն է աշխատավորության ոչ պրոլետարական կանգվածների, ամե-
նից առաջ գյուղացիության հետ, բանվոր դասակարգի ղեկավար դերի ապահո-
վումը այդ դաշինքում: Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի պարտքն ու պա-
տասխանատու պարտականությունն էր համարում լինել բոլոր աշխատավորնե-
րի ղեկավարը, հեգեմոնը: «Պրոլետարիատը հեղափոխական է միայն այն չա-



փով,— նշում էր Լենինը,— որչափով նա գիտակցում ու կենսագործում է հեգե-
մոնիայի այդ գաղափարը» (Երկեր, հատ. 17, էջ 275) : Մեր կուսակցության
ամբողջ հեղափոխական քաղաքականության, նրա ստրատեգիայի ու տակտի-
կայի հիմքը միշտ կազմել և կազմում է բանվոր դասակարգի հեգեմոնիայի.
նրա ղեկավար դերի, աշխատավոր գյուղացիության, բոլոր առաջադեմ դեմո-
կրատական ուժերի հետ նրա դաշինքի գաղափարը:

Մեր երկրի բանվոր դասակարգը, որին ղեկավարում է լենինյան կուսակ-
ցությունը, ցույց տվեց իր պատմական միսիայի իրագործման փայլուն օրինակ:
Նա ցուցաբերեց հեղափոխական մեծ եռանդ, կարգապահություն, գիտակցակա-
նություն և կազմակերպվածություն, տոկունություն և խիզախություն, բոլոր աշ-
խատավորների օգտին կոհաբերությունների դիմելու պատրաստակամություն,
նրա ղեկավար դերի, աշխատավոր գյուղացիության, առաջադեմ դեմոկրատա-
կան բոլոր ուժերի հետ նրա դաշինքի գաղափարը:

Լենինյան կուսակցությունը վճռականորեն ու հետևողականորեն պաշտ-
պանել է պրոլետարիատի դասակարգային դիրքավորումներն ու դասակարգա-
յին քաղաքականությունը, բանվորական մասսաներին անդուլ կերպով դաս-
տիարակել հեղափոխական ոգով, անհաշտ պայքար է մղել տարբեր օպոր-
տունիստների դեմ, որոնք փորձում էին բանվորական շարժումը մղել դեպի
բուրժուազիայի հետ համաձայնողականության ուղին: Բոլշևիկների կուսակցու-
թյան ղեկավարությամբ բանվոր դասակարգն անցավ հեղափոխական մարտերի
դաժան դպրոց, կուտակեց քաղաքական բազմահարուստ փորձ:

Իր հեղափոխական քաղաքականությամբ, աշխատավոր ժողովրդի շահերի
համար մղած պայքարում ցուցաբերած արիությամբ ու տոկունությամբ մեր երկրի
բանվոր դասակարգը վստահություն ու հեղինակություն նվաճեց քաղաքի և
գյուղի աշխատավորների ամենալայն կանգվածների շրջանում, կարողացավ իր
համար ապահովել հավատարիմ դաշնակիցներ: Երկու հեղափոխությունների
(1905 թվականի և 1917 թվականի Փետրվարյան) փորձով, դասակարգային հա-
մառ մարտերի ընթացքում գյուղացիությունը, արհեստավորները, առաջավոր մը-
տավորականության լայն շրջանները, ճնշված ազգերի աշխատավորները համոզ-
վեցին, որ առանց բանվոր դասակարգի հետ դաշինքի, առանց նրա ղեկավա-
րության իրենք չեն կարող ազատագրվել ճնշման բոլոր ձևերից: Դրա շնորհիվ
բանվոր դասակարգը, Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցության ղեկա-
վարությամբ, հեղափոխական զինվորների և նավաստիների, աշխատավոր գյու-
ղացիության աջակցությամբ, 1917 թվականի հոկտեմբերին հաղթանակ տարավ,
հաստատելով իր դիկտատուրան: Այդ հաղթանակը, հաստատելով պրոլետարիա-
տի պատմական դերի մասին մարքս-լենինյան ուսմունքը, բարձրացրեց ամբողջ
միջազգային բանվոր դասակարգի պատիվն ու արժանապատվությունը:

Սակայն բանվոր դասակարգի պատմական միսիան չի ավարտվում հեղա-
փոխության հաղթանակով և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումով: Նա
չի կարող կես ճանապարհին կանգ առնել: Նրա նպատակը կոմունիզմն է: Որ-
պես ամենաառաջավոր, կազմակերպված և քաղաքականապես կոփված դասա-
կարգ, նա առաջատար, ղեկավար ուժ է թե՛ կապիտալիզմից սոցիալիզմին անց-
նելու և թե կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում:

Ոչ մի ուրիշ դասակարգ, ոչ մի ուրիշ հասարակական ուժ չի կարող իրա-
գործել այդ խնդիրը. «...միայն որոշակի դասակարգը,—գրել է Վ. Ի. Լենինը,—
այն է՝ քաղաքային և առհասարակ ֆաբրիկա-գործարանային, արդյունաբերա-
կան բանվորներն են ի վիճակի ղեկավարելու աշխատավորների և շահագործվող-



digitised by A.R.A.R.@

ների ամբողջ մասսային կապիտալի լծի տապալման համար մղվող պայքարում,
հենց տապալման ընթացքում, հաղթանակի պահպանման և ամրապնդման հա-
մար մղվող պայքարում, նոր, սոցիալիստական հասարակարգի ստեղծման գոր-
ծում, դասակարգերի լիակատար ոչնչացման համար մղվող ամբողջ պայքա-
րում» (Երկեր, հատ. 29, էջ 514):

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման բոլոր էտապներում բանվոր դասա-
կարգը իր առաջատար դերն իրագործում է տարբեր ձևերով: Դրանց թվին են
պատկանում ներքին և արտաքին քաղաքականության ղեկավարման պետա-
կան ձևերը, ժողովրդական տնտեսության կառավարումը, արհմիությունների,
կոոպերացիայի, երիտասարդական միությունների և հասարակական այլ կազ-
մակերպությունների միջոցով ժողովրդի սոցիալական, քաղաքական ու գաղա-
փարական կյանքի վրա բախտորոշ ներգործությունը: Բանվոր դասակարգը հա-
սարակության կյանքի բոլոր կողմերի վրա ղեկավար ներգործություն է ունենում
կոմունիստական կուսակցության միջոցով, որը նրա ստեղծարար դերի առավե-
լառ արտահայտությունն ու մարմնավորումն է:

ՍՍՀՄ բանվոր դասակարգը ցույց է տվել ոգեշնչող օրինակ այն բանի, թե
ինչ պետք է անեն ուրիշ երկրների բանվորները հեղափոխության հաղթանակն
ամրապնդելու, սոցիալիզմն ու կոմունիզմը կառուցելու համար: Իհարկե, շատ
բան է կախված յուրաքանչյուր երկրի պատմական և ազգային կոնկրետ պայ-
մաններից, բայց հիմնական, գլխավոր հարցում ՍՍՀՄ բանվոր դասակարգի
ուղին, ինչպես վկայում է պրակտիկան, ուսանելի է շատ կողմերով:

Սոցիալիստական հեղափոխության զարգացման և սոցիալիզմի կառուցման
բոլոր էտապներում մեր երկրի բանվոր դասակարգը ամենից առաջ քաղաքա-
կան և բարոյական ազդեցություն է գործել հասարակության բոլոր խավերի
վրա, իր օրինակով, անձնվիրությամբ իր հետևից է տարել միլիոնավոր մասսա-
ներին: Քաղաքացիական պատերազմի և խաղաղ սոցիալիստական շինարարու-
թյան տարիներին, Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան շինա-
րարության տարիներին բանվոր դասակարգը գտնվում էր պայքարի ամենա-
պատասխանատու, վճռական տեղամասերում: Իր մտքի հստակությամբ, ոգու
տոկունությամբ, գործի ճշմարտացիության հավատով բանվոր դասակարգը
ամբողջ ժողովրդին ոգեշնչում էր հաղթահարելու դժվարությունները, ստեղծա-
գործելու, սխրանքներ կատարելու, հանդիսանում էր նրա կազմակերպող ուժը:

Կապիտալիստական թշնամական շրջապատման ծանր պայմաններում, երբ
ռազմական արշավանքն սպառնում էր խորտակել երիտասարդ սովետական
հանրապետությունը, բանվոր դասակարգն ստեղծեց հզոր զինված ուժեր սո-
ցիալիստական հայրենիքը պաշտպանելու համար: Այսօր նա բոլոր աշխատա-
վորների հետ միասին բանակն ու նավատորմը ապահովում է աշխարհում ա-
մենակատարյալ մարտական տեխնիկայով, համալրում սպաների և զինվոր-
ների կադրերը, որոնք անսահման նվիրված են հայրենիքին, պատրաստ՝ ետ
մղելու իմպերիալիստական ամեն մի ագրեսիա:

Չնայելով կռիաբերություններին ու կրկանքներին, մեր երկրի բանվոր
դասակարգը, աշխատավորները կենսագործեցին ինդուստրացման լենինյան
քաղաքականությունը, ապահովելով հասարակության արտադրաուժերի զար-
գացման վիթխարի թռիչք: Մոտ անցյալում տնտեսապես հետամնաց երկի-
րը կարճ ժամկետում վերածվեց հզոր ինդուստրիալ տերության, որն ունակ
էր զարգացնելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը ժամանակակից
տնտեսության հիմքի վրա և բավարարելու պաշտպանության կարիքները:



Բանվոր դասակարգը կարևոր դեր խաղաց գյուղատնտեսության կոլեկտի-
վացման լենինյան քաղաքականության իրականացման գործում: Կոլեկտիվաց-
ման հաղթանակը լուծեց սոցիալիստական հեղափոխության՝ իշխանությունը
նվաճելուց հետո ամենադժվարին խնդիրը. այն աշխատավոր գյուղացիության
բազմամիլիոնանոց մասսային տարավ սոցիալիզմի ուղիով, որը մեծ հեղափոխու-
թյուն էր տնտեսական և սոցիալական հարաբերությունների մեջ, գյու-
ղացիության կյանքի ամբողջ կացութաձևում: Հսկայական նշանակություն ունե-
ցավ նաև կուլտուրական հեղափոխությունը, որի շնորհիվ մեր երկիրը դարձավ
առաջավոր կուլտուրայի, լուսավորության, գիտության համաշխարհային կենտ-
րոն:

Սոցիալիստական վերափոխությունների շնորհիվ խոր փոփոխություններ
կատարվեցին երկրի տնտեսական և սոցիալական կյանքում: Արտադրության
միջոցների հազարամյա մասնավոր սեփականությունը, որը միշտ եղել է
մարդու կողմից մարդու շահագործման, դասակարգերի և ազգերի շատ
սուր բախումների աղբյուր, ընդմիշտ վերացվեց: Հաստատվեց հանրա-
յին սոցիալիստական սեփականության անբաժան տիրապետությունը՝ սոցիա-
լիզմի տնտեսական հիմքը: Տնտեսական այդ հիմքի վրա, կապիտալիզմից սո-
ցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, դասակարգային կատաղի պայքարի
ընթացքում վերացվեցին շահագործող դասակարգերը, վճռական քայլ արվեց
անդասակարգ հասարակության ստեղծման ուղղությամբ: Սովետական հասա-
րակության սոցիալական բոլոր խմբերի վիճակը և նրանց փոխհարաբերու-
թյունները էապես փոխվեցին: Գյուղացիությունը և մտավորականությունը իրենց
էությամբ դարձան սոցիալիստական, որդեգրեցին բանվոր դասակարգի նպա-
տակները, նրա աշխարհայացքը: Այդպիսով տեղի ունեցան սոցիալա-
կան բոլոր խավերի մերձեցումն ու համախմբումը բանվոր դասակարգի շուրջը,
ստեղծվեց սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարա-
կան անկապտելի միասնություն, որի հիմնախարիսխը կազմում է բանվոր դա-
սակարգը:

Հետևողականորեն վարելով լենինյան ազգային քաղաքականություն, բան-
վոր դասակարգը լուծեց ազգերի փոխհարաբերությունների խիստ բարդ պրոբ-
լեմը: Նա նոր կյանքի կոչեց, ծաղկման հասցրեց առաջներում ճնշված ժողո-
վուրդներին, որոնք գտնվում էին պատմական զարգացման տարբեր աստիճան-
ների վրա: ՍՍՀՄ նոր, սոցիալիստական ազգերը, բանվոր դասակարգի ղե-
կավարությամբ, մերձեցան իրար, ամրապնդվեց նրանց համագործակցությունը
տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր ոլորտներում, ան-
խախտ դարձավ նրանց բարեկամությունը:

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը ավելի բարձրաց-
րեց բանվոր դասակարգի հասարակական դերը: Նա դարձավ սովետական հա-
սարակության հանրաճանաչ ղեկավարը: Պրոլետարական դիկտատուրայի պե-
տությունը վերաճեց համաժողովրդական սոցիալիստական պետության, որին
ղեկավարում է բանվոր դասակարգը՝ կոմունիստական կուսակցության գլխա-
վորությամբ, որը հետևողականորեն կենսագործում է կոմունիզմի գաղափար-
ները:

Ընթանալով սովետական բանվորների ուղիով, հենվելով սովետական ժո-
ղովրդի եղբայրական աջակցության վրա, մի շարք երկրների բանվոր դասա-
կարգը, աշխատավորները հասան սոցիալիզմի վճռական հաղթանակների: Սո-
ցիալիստական համագործակցության երկրներում խոր վերափոխություններ են



digitised by A.R.A.R.@

կատարվել տնտեսական ու սոցիալական կյանքում, հաջողությամբ կարգա-
նում են կուլտուրան, արվեստը, գիտությունը: Սոցիալիստական երկրների բան-
վոր դասակարգը, որը սերտորեն շաղկապված է պրոլետարական ինտերնա-
ցիոնալիզմով, պայքարի արմատական շահերի ու նպատակների ընդհանրու-
թյամբ, կազմում է ժողովուրդների եղբայրական միասնության և համախմբվա-
ծության ամուր հիմքը:

Սոցիալիզմի և կոմունիզմի հաջողությունները, որոնք բանվոր դասակարգի
ղեկավարությամբ ձեռք են բերվել ՍՍՀՄ-ում և սոցիալիստական համագործակ-
ցության մյուս երկրներում, հարուցում են մեր թշնամիների կատաղի ատե-
լությունն ու սարսափը: Զգալով կոմունիզմի հաղթական առաջընթացը ճակա-
տային, ֆրոնտալ գրոհի միջոցով կասեցնելու իրենց անկարողությունը՝ իմ-
պերիալիստները փորձում են քաղաքական ու գաղափարական բոլոր միջոցնե-
րով ներսից քայքայել սոցիալիստական երկրները, թուլացնել այդ երկրների
միասնությունը և համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածու-
թյունը:

Ընդ որում գլխավոր հարվածները կենտրոնացվում են սոցիալիստական
երկրների բանվոր դասակարգի և նրա կոմունիստական կուսակցությունների
վրա: Սոցիալիզմի թշնամիները փորձում են պսակազերծել մարքսիզմ-լենինիզմի
տեսական սկզբունքները և դրանով իսկ աշխատավորներին վրկել կոմունիս-
տական իդեալներից, նրանք կատաղի գրոհներ են ձեռնարկում բանվոր դա-
սակարգի դեմ ,որը սոցիալիզմի, կոմունիզմի համար մղվող պայքարի առաջա-
տար ուժն է: Մեր դասակարգային հակառակորդների նպատակն է՝ գաղափա-
րապես կազմալուծել բանվոր դասակարգը, քայքայել նրա շարքերը, բանվորնե-
րին գժտեցնել մտավորականության և գյուղացիության հետ և, վերջին հաշվով.
իշխանությունը խլել բանվոր դասակարգի ձեռքից:

Բուրժուական գաղափարախոսների քաղաքական ու գաղափարական դի-
վերսիաները բազմազան են, արդի կապիտալիզմի և սոցիալիզմի էության, կոն-
վերգենցիայի և «կամուրջներ գցելու», «մաքուր դեմոկրատիայի» և «անհատա-
կանության ինքնադրսևորման» ապատության ու նմանօրինակ այլ կեղծ-գիտա-
կան փիլիսոփայական դատողություններից մինչև քաղաքական պրովոկացիա-
ները, ստահոդ լուրերի տարածումը, կեղծ ինֆորմացիան և սոցիալիստական
կարգերի դեմ բացահայտ ելույթներ հրահրելը: Այս ամենի մեջ իմպերիալիստա-
կան դիվերսանտներին եռանդուն կերպով օգնում են ամեն տեսակ ռևիզիո-
նիստներ աջից և «ձախից», նացիոնալիստներ, որոնք կրակում են նույն թիրա-
խի վրա, ինչ որ սոցիալիզմի բացահայտ թշնամիները:

Վ. Ի. Լենինը նշել է, որ բուրժուազիան բանվորների և նրանց կուսակցու-
թյունների դեմ կիրառում է պայքարի երկու հիմնական եղանակ. առաջինը՝
բացահայտ բռնություն, որին նա դիմում է պայքարի հատկապես կրիտիկական
պահերին. երկրորդ եղանակը բանվորների տարանջատումն է, նրանց շարքերի
կազմալուծումը, բանվորների առանձին ներկայացուցիչների կամ խմբերի կա-
շառումը, առավելագույն խորամանկությունն է, խարդախությունը, բանվորնե-
րի մոլորեցումն ու այլասերումը, ամենանողկալի կեղծիքն ու կրպարտությունը
և բանվորների վրա բուրժուազիայի «գաղափարական» ներգործության այլ ձևեր
(տե՛ս Երկեր, հատ. 20, էջ 572, 612): Բուրժուազիայի դասակարգային պայքա-
րի այդ բոլոր եղանակներին բանվոր դասակարգը և նրա կուսակցությունները
պետք է հակադրեն քաղաքական բարձր կգոնությունը, գիտակցականությունը,
համախմբվածությունը, բուրժուազիայի գաղափարական և քաղաքական դիվեր-



սիաների ակտիվ մերկացումը, աշխատավորական մասսաների շրջանում կոմու-
նիստական գաղափարախոսության լայն պրոպագանդան:

Սոցիալիզմի դեմ ուղղված քաղաքական և գաղափարական դիվերսիաների
գլխավոր ուղղություններից մեկի նպատակն է՝ բանվոր դասակարգին վրկել
սոցիալիստական պետության մեջ ունեցած իր ղեկավար դերից, քայքայել պրո-
լետարիատի դիկտատուրան, սոցիալիստական հասարակարգը: Նորից ու նորից
լույս աշխարհ են բերվում այնպիսի խարխուլ փաստարկներ, թե իբր պրոլետա-
րիատի դիկտատուրան մերկ բռնություն է, թե նա բացառում է դեմոկրատիան և
այլն: Երևան են գալիս նաև «նոր» փաստարկներ, որոնց համաձայն բանվոր
դասակարգի պետական ղեկավարությունն իբր սահմանափակում է մնացած
քաղաքացիների շահերն ու իրավունքները: Տարածվում են կանայան աջ և
«ձախ» ռևիզիոնիստների և ռենեգատների օպորտունիստական առույթները,
որոնք քարոզում են խոնարհվել տարերայնությանը:

Այդ բոլոր դատողությունները հեռու են ճշմարտությունից: Պրոլետարիատի
դիկտատուրան, բանվոր դասակարգի ղեկավար դիրքը ոչ ոքի կողմից շնորհ-
ված չեն. դրանք նվաճել են աշխատավորները բուրժուազիայի դեմ մղած դա-
սակարգային կատաղի պայքարով: Մասսաները սեփական փորձով համոզվել
են, որ առանց պրոլետարական դիկտատուրայի, առանց բանվոր դասակարգի
պետական ղեկավարության, անհնար է ազատվել կապիտալիստական ճնշումից,
անհնար է կառուցել սոցիալիզմ: Սոցիալիստական հասարակարգի կառուցումը
հանդիպում է դասակարգային թշնամիների կատաղի դիմադրությանը, ուստի
սոցիալիզմը մշտապես կգում է բանվոր դասակարգի պետական ամուր ղեկա-
վարության կարիքը. ինքնահոսը, սոցիալիստական պետության ամեն մի թու-
լացում անխուսափելիորեն սանձազերծում են տարերային, հակասոցիալիստա-
կան ուժերին:

Պրոլետարիատի դիկտատուրան, ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը, ան-
հրաժեշտ է հեղափոխության հաղթանակն ամրապնդելու և այն առաջ տանելու,
բուրժուազիայի և շահագործող մյուս դասակարգերի դեմ պրոլետարիատի դասա-
կարգային պայքարը մինչև վերջ՝ սոցիալիզմի լիակատար հաղթանակին հասցնե-
լու համար: Այն անհրաժեշտ է ոչ միայն տապալված շահագործողների դիմադրու-
թյունը ճնշելու, այլև նրա համար, որ վերջնականապես վերացվեն շահագործող
բոլոր դասակարգերը և նրանց ծնունդ տվող հողը՝ մասնավոր սեփականությունը:
Հենվելով պետական իշխանության վրա, բանվոր դասակարգը կարող է հաջո-
ղությամբ վարել տնտեսական ու սոցիալական քաղաքականություն՝ ի շահ բո-
լոր աշխատավորների, համախմբել աշխատավոր գյուղացիության, մանր բուր-
ժուազիայի ու աշխատավոր մտավորականության մասսաներին և կազմակեր-
պել սոցիալիզմի նպատակասլաց, պլանաչափ կառուցումը: Սոցիալիստական
պետականության զարգացման գլխավոր ուղղությունը սոցիալիստական դեմո-
կրատիայի անշեղ ծավալումն ու կատարելագործումն են:

Մարքս-լենինյան այս դրույթներն արդեն վաղուց դադարել են միայն տե-
սություն լինելուց, դրանք հաստատվել են ՍՍՀՄ և սոցիալիզմի մյուս երկըր-
ների ընդհանուր փորձով, դարձել շատ ժողովուրդների կողմից նոր հասա-
րակարգի կառուցման ռեալ պրակտիկան:

Իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարական և քաղաքական դի-
վերսիաների նպատակն է խարխլել բանվոր դասակարգի ավանգարդը՝ կո-
մունիստական կուսակցությունները: Արագ տարածվում է այն վերսիան,
թե կոմունիստական կուսակցությունը չպետք է կառավարի, ղեկավարի



digitised by A.R.A.R.@

պետությունը, թե մի կուսակցության, այսպես կոչված, մոնոպոլիզմը, իբր, սահմանափակում է դեմոկրատիան: Նման «տեսությունների» հեղինակներից ոմանք դիմում են բացահայտ կեղծիքի, բանը պատկերելով այնպես, թե իբր Մարքսը և Լենինը բոլոր պարագաներում կողմնակից են եղել բազմակուսակցականության, բայց ահա դոգմատիկները չարամիտ կերպով խեղաթյուրել են նրանց և կանգնել են բազմակուսակցականությունը ժխտելու ուղու վրա: Բայց դա սուտ է: Մարքսիստ-լենինյանները երբեք չեն ժխտել մի քանի կուսակցությունների ԳՈՅՈՒԹՅԱՆ հնարավորությունը իշխանության համար մղվող պայքարի ժամանակաշրջանում և սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում: Բայց, ինչպես համոզիչ հաստատում է պատմական փորձը, սոցիալիզմի պայմաններում ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ պետք է պատկանի մարքս-լենինյան կուսակցությանը:

Վ. Ի. Լենինը, սովետական կոմունիստները, ընդունելով պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում մի քանի կուսակցությունների գոյության հնարավորությունը, հեղափոխությունից անմիջապես հետո, ինչպես հայտնի է, փորձում էին համագործակցություն հաստատել նրանց հետ: Սակայն մենշևիկների և էսեռների կուսակցությունները, գլորվելով հակահեղափոխության բանակը, իրենք իրենց դուրս դրեցին սովետական իշխանության սիստեմից. ՍՍՀՄ-ում մնաց միակ քաղաքական կուսակցությունը՝ կոմունիստների կուսակցությունը, որին միահամուռ պաշտպանում է ամբողջ սովետական ժողովուրդը: Հանգամանքների բերումով միակուսակցական սիստեմ ստեղծվեց նաև մի շարք ուրիշ սոցիալիստական երկրներում: Իսկ սոցիալիստական համագործակցության մի քանի այնպիսի երկրներում, ինչպիսիք են, օրինակ, ԳԴՀ-ն, Լեհաստանը, Բուլղարիան, գոյություն ունեն մի քանի կուսակցություններ, որոնք սոցիալիզմի կառուցման ընթացքում սերտորեն համագործակցում են կոմունիստական ավանգարդի հետ:

Բայց, ընդունելով մի քանի կուսակցությունների գոյության հնարավորությունը, Լենինն ընդգծում էր, որ բանվոր դասակարգի իշխանության ղեկավար ուժն ու կորիզը կարող է լինել միայն կոմունիստների կուսակցությունը: Պատահական չէր, որ նա ուշադրություն էր հրավիրում մեր դասակարգային թշնամիների վարքագծի վրա, որոնք պատրաստ էին սկզբնական շրջանում հաշտվել նույնիսկ սովետների հետ և պահանջում էին «միանալ», դրանցից հեռացնել կոմունիստներին: Ուստի, Լենինը վճռականորեն հայտարարեց, որ «պրոլետարիատի դիկտատուրան հնարավոր է միայն կոմունիստական կուսակցության միջոցով և ոչ այլ կերպ» (Երկեր, հատ. 32, էջ 242):

Սոցիալիստական դեմոկրատիան անարխիա չէ: Նրան հատուկ է միանգամայն ռեալ, տնտեսական, սոցիալական և քաղաքական բովանդակություն: Մի՞թե դեմոկրատիա չէ, երբ յուրաքանչյուր քաղաքացի ունի ծերության կամ հիվանդության դեպքում նյութական ապահովության, աշխատանքի երաշխավորված իրավունք: Մի՞թե դեմոկրատիա չէ, երբ հասարակությունը հսկայական միջոցներ է ծախսում, որպեսզի երիտասարդությանը հնարավորություն տա ստանալու ձրի կրթություն և նույնիսկ նրան ապահովում է թոշակով, իսկ ինստիտուտն ավարտելուց հետո՝ ըստ մասնագիտության աշխատանքով: Ամբողջ քաղաքական սիստեմը՝ իշխանության տեղական մարմիններից մինչև կենտրոնական օրգանները, արտադրության և հասարակական գործերի կառավարման ամբողջ սիստեմը սոցիալիզմի օրոք կառուցված է դեմոկրատական հիմքի վրա: Սոցիալիստական հասարակարգը իր էությամբ այնպիսին է,



որ, հակառակ բոլոր դժվարությունների, նա կարող է շարժվել միայն մեկ՝ սոցիալիստական դեմոկրատիայի ավելի ու ավելի խոր զարգացման ուղիով:

Վերջապես, բուրժուական տեսաբանների մի նշանակալի մասն էլ պնդում է, թե արդի պայմաններում հասարակությանը պետք է ղեկավարի նրա «մտածող մասը», այսինքն՝ մտավորականության մի շատ նեղ խավը: Այս թեզը հիմնավորելու համար վկայակոչվում են գիտատեխնիկական հեղափոխությունը և նույնիսկ այն տնտեսական ռեֆորմները, որ կատարվում են մի շարք սոցիալիստական երկրներում:

Բայց նման հայացքները նոր չեն: Դրանք բուրժուազիայի հին, նողկալի այն նախապաշարմունքի արձագանքն են, որ պնդում է, թե բանվոր դասակարգը, աշխատավորները չեն կարող պետություն կառավարել, թե նրանք կարիք ունեն, որ ղեկավարությունը լինի «էլիտայի» կողմից, այսինքն՝ հասարակության հատուկ «մտածող մասի» կողմից: Այստեղ նպատակը մեկ է՝ բանվոր դասակարգին գժտեցնել մտավորականության հետ, հակադրել միմյանց և դրանով իսկ վիժեցնել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործը:

Գիտատեխնիկական հեղափոխությունը և տնտեսական ռեֆորմը չեն նսեմացնում, այլ բարձրացնում են բանվոր դասակարգի ղեկավար դերը: Չի կարելի մոռանալ, որ սոցիալիստական երկրների բանվոր դասակարգը կգալիորեն մեծացել է թվապես, նա աճել է նաև տեխնիկական, հանրակրթական և կուլտուրական տեսակետից: Եթե վերցնենք, օրինակ, սովետական բանվորներին, ապա նրանց կեսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն: Մի շարք այլ սոցիալիստական երկրների բանվոր դասակարգը արդեն հասել է կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակի և էական ավանդ է մուծում գիտատեխնիկական հեղափոխության մեջ: Բանվորների աշխատանքը իր բնույթով ավելի ու ավելի է մերձենում ինժեներա-տեխնիկական մտավորականության աշխատանքին: Գիտության աշխատողների համագործակցությամբ առաջավոր բանվորներն ակտիվ մասնակցում են գյուտարարությանը, նոր տեխնիկայի ստեղծմանն ու կատարելագործմանը: ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների բանվոր դասակարգը գիտատեխնիկական հեղափոխության մասսայական կրողն ու հզոր շարժիչ ուժն է:

Մարքսիստ-լենինյանները վճռականորեն հանդես են գալիս ընդդեմ բանվոր դասակարգի և նրա կոմունիստական կուսակցության ղեկավար դերը խարխլելու ամեն տեսակ փորձերի, մարքսիզմ-լենինիզմի ռևիզիայի, սոցիալիզմի դեմ կատարվող բոլոր գրոհների:

Մարքսիստ-լենինյանները պայքարում են հանուն մարքսիզմ-լենինիզմի՝ այդ ոչ թե ազգային, այլ ինտերնացիոնալ ուսմունքի անաղարտության: Նրանք, որպես բանվոր դասակարգի և սոցիալիզմի շահերի իսկական արտահայտիչներ, ոչ-ոքի թույլ չեն տա նսեմացնելու մարդկության առաջընթացը գլխավորող այդ դասակարգի նշանակությունն ու դերը:

Բանվոր դասակարգի ղեկավար դերի հիմքում միշտ ընկած են եղել ոչ թե հասարակության մյուս դասակարգերի և խավերի հաշվին ձեռք բերված ինչ-որ բացառիկ իրավունքներ և արտոնություններ, այլ նրա բարոյական ու քաղաքական հեղինակությունը: Ղեկավար ուժ լինել հեղափոխության մեջ և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում՝ դա բանվոր դասակարգի ոչ միայն իրավունքն է, այլև նրա սրբազան պարտքը, որը բխում է հասարակության մեջ այդ դասակարգի բուն դիրքից, նրա վեհ խնդիրներից և հասարակության հեղափոխական վերափոխման նպատակներից:



digitised by A.R.A.R.@

Սոցիալիստական հասարակարգի բոլոր ոլորտներում բանվոր դասակարգի ղեկավար դերը որոշվում է սոցիալիստական արդյունաբերության և արտադրության միջոցների համաժողովրդական սոցիալիստական սեփականության առաջատար դիրքով: Ինչպես որ սոցիալիստական արդյունաբերությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը միավորում է միասնական տնտեսական օրգանիզմի մեջ, այդ արդյունաբերության հետ կապված բանվոր դասակարգն էլ միավորում և ի մի է համախմբում մեր հասարակության բոլոր սոցիալական խավերն ու խմբերը և ղեկավարում նրանց: Բանվոր դասակարգի ղեկավար դերը որոշվում է նրա առավել մեծ կազմակերպվածությամբ և առավել մեծ սոցիալիստական գիտակցականությամբ, նրա հեղափոխական փորձով և այն բարձր հեղինակությամբ, որը նվաճվել է սոցիալիզմի համար մղված դասակարգային պայքարի տասնամյակների ընթացքում: Սովետական Միությունում կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող բանվոր դասակարգը ամենաառաջավոր, կազմակերպված և քաղաքականապես հասուն հասարակական ուժն է, նա վճռական ազդեցություն է գործում սովետական ժողովրդի կյանքի բոլոր՝ արտադրական, տնտեսական, սոցիալական, քաղաքական և հոգևոր կողմերի վրա: Բանվոր դասակարգը իր ղեկավար դերը կավարտի միայն կոմունիստական հասարակարգի կառուցմամբ՝ իր պայքարի վերջնական նպատակին հասնելով:

ՍՍՀՄ և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների բանվոր դասակարգը գտնվում է միջազգային իմպերիալիզմի և համաշխարհային ռեակցիայի բոլոր ուժերի դեմ մղվող դասակարգային պայքարի առաջավոր եզրագծում: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի քաղաքական ազդեցության, նրա տնտեսական և ռազմական հզորության աճը ուժգին ներգործություն է ունենում միջազգային ասպարեզում աշխատանքի և կապիտալի միջև մղվող պայքարի վրա, կաշկանդում է իմպերիալիստների ձեռքերը, ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ է ստեղծում համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման համար: ՍՍՀՄ և մյուս սոցիալիստական երկրների ժողովուրդները զգոն են, նրանք հաստատ ընթանում են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիով, վիժեցնելով իմպերիալիստների նենգ դավերը:

Կապիտալիստական աշխարհում ընդլայնվում է բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը: Իմպերիալիստական բուրժուազիան ձգտում է բոլոր ուժերով պահպանել իր տիրապետությունը, կասեցնել համաշխարհային հեղափոխական պրոցեսը, ընդ որում նա փորձում է գլխավոր հարվածները հասցնել բանվորական և կոմունիստական շարժմանը:

Բուրժուազիայի գաղափարախոսները, աջ սոցիալ-դեմոկրատիայի լիդերները և ամեն տեսակ ռևիզիոնիստները կատաղի գրոհում են բանվոր դասակարգի հեղափոխական դերի՝ մարքս-լենինյան ուսմունքի վրա, ամեն կերպ նսեմացնում են նրա նշանակությունը, ձգտում են նրան զրկել իր ուժերի նկատմամբ ունեցած հավատից: Նրանք հիմնական ջանքերն ուղղում են մի նպատակի՝ ապացուցելու, թե իբր ժամանակակից պայմաններում կապիտալիստական երկրներում շահագործում արդեն գոյություն չունի, թե եկամուտների մեջ կատարվող, այսպես կոչված, հեղափոխությունը յուրաքանչյուր բանվորի համար հնարավորություն է ստեղծում դառնալու կապիտալիստ: Պրոլետարիատի գաղափարական հակառակորդները բոլոր ձևերով բարբաջում են «ապապրոլետարացման» մասին, այն մասին, որ «դասակարգեր» և «դասակարգային պայքար» հասկացությունները վաղուց հնացել են, որ բուրժուազիայի և



պրոլետարիատի հարաբերություններն իբր կառուցվում են ոչ թե դասակարգային պայքարի սկզբունքի, այլ սոցիալական պարտնյորության, համագործակցության հիմքի վրա:

Այս բոլոր ստահոդ տեսությունները հերքվում են կյանքի կողմից: Փաստերը վկայում են, որ կապիտալիստական երկրներում շահագործումը ոչ միայն չի վերացել, այլև ուժեղացել է: Ժամանակակից կապիտալիստական իրականությունը ավելի ու ավելի է հաստատում կապիտալիզմի պայմաններում բանվոր դասակարգի դրության և նրա հեղափոխական հնարավորությունների մարքս-լենինյան վերլուծության ճշտությունը: Խոշոր արդյունաբերության հետ կապված բանվոր դասակարգը չի «ապապրոլետարականանում», նա անընդհատ թվապես աճում է. կապիտալիստական երկրներում կան ավելի քան 350 միլիոն բանվոր. նա որպես հասարակական ուժ զարգանում է այն չափով, ինչ չափով զարգանում է ժամանակակից արդյունաբերությունը: Բոլոր կապիտալիստական երկրներում այսօր էլ ավելի ակնառու է, որ բանվոր դասակարգը գլխավոր արտադրողական ուժն է և, ինչպես ասել է Մարքսը, «կազմում է յուրաքանչյուր ժողովրդի հիմնական կմախքը...» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 16, էջ 196): Այժմ էլ հենց այդ դասակարգն է մնում արդի կապիտալիստական հասարակության բոլոր դասակարգերից ամենաճնշվածն ու շահագործվողը: Եվրոպայի, Ամերիկայի և Ասիայի կապիտալիստական երկրներում գործադուլային լայն շարժումը և բանվորների պայքարի մյուս ձևերը ցույց են տալիս, որ արդի կապիտալիստական աշխարհի հասարակական կյանքը ներթափանցված է ոչ թե «սոցիալական պարտնյորությամբ», այլ բոլոր աշխատավորների ազատագրության համար բանվոր դասակարգի պայքարով: Խորանում է աշխատանքի և կապիտալի միջև ընկած անդունդը, ուժեղանում են պրոլետարիատի և բուրժուազիայի հակասությունները: Ոչինչ և երբեք չի կարող բանվոր դասակարգին հաշտեցնել կապիտալիզմի հետ: Այդ հակամարտությունը կարող է վերջնականապես լուծվել միայն կապիտալի իշխանությունը ոչնչացնելու, բանվոր դասակարգի լիակատար հաղթանակի շնորհիվ:

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին հակադրված է մոնոպոլիստական կապիտալը, որը հենվում է պետական ապարատի վրա: Այդ պայմաններում ռեալ հնարավորություններ են ստեղծվում մոնոպոլիաների տիրապետության դեմ համատեղ պայքարի համար բանվոր դասակարգի շուրջը համախմբելու կապիտալի կողմից շահագործվող բոլոր սոցիալական խմբերին, որոնք կազմում են կապիտալիստական զարգացած երկրների բնակչության 80—90 տոկոսը, այսինքն՝ դրա գերակշռող մեծամասնությունը: Այս պայմաններում ավելի են բարդանում պրոլետարիատի դասակարգային պայքարի հակամոնոպոլիստական բովանդակությունից բխող համադեմոկրատական խնդիրները: Օբյեկտիվ պայմաններ են ստեղծում՝ կազմելու հակամոնոպոլիստական միասնական ճակատ, միավորելու խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության, սոցիալական առաջադիմության բոլոր ջատագովներին:

Բանվոր դասակարգը կապիտալիստական աշխարհի ամենամեծաթիվ և ամենակազմակերպված դասակարգն է, նրա մեծագույն կարողությունը մարքս-լենինյան մարտական կուսակցություններն են, որոնց ինտերնացիոնալ համախմբումը պրոլետարիատի ուժի կարևոր աղբյուրն է: Իր պայքարում կապիտալիստական երկրների պրոլետարիատը հենվում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջողությունների վրա, ունի հուսալի և հզոր դաշնակից ի



digitised by A.R.A.R.@

դեմս Աֆրիկայի, Ասիայի, և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային ազատագրական շարժման:

Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին Վ. Ի. Լենինը գրել է. «...մարդկությունը կանգնել է մի ընտրության առջև կա՛մ կործանվել, կա՛մ իր բախտը հանձնել ամենահեղափոխական դասակարգին՝ ամենաարագ ու ամենաարմատական ձևով արտադրության ավելի բարձր եղանակի անցնելու համար» (Երկեր, հատ. 25, էջ 466): Այժմ կարելի է համարձակ ասել, որ Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակից ի վեր այդ ընտրությունը կատարվել է անդարձ կերպով՝ մոլորակի բոլոր առաջադեմ ուժերին գլխավորում է բանվոր դասակարգը, որի ձեռքին է,—ինչպես նշել է Մարքսը,—մարդկության վերածնունդը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 16, էջ 336):

Միջազգային բանվոր դասակարգը և նրա ծնունդը հանդիսացող սոցիալիզմի համաշխարհային սիստեմը մեր ժամանակի ամենաառաջավոր հեղափոխական ուժն են, որոնք որոշում են արդի դարաշրջանի բնույթը, մարդկության անցումը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ:

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ «КОММУНИСТ» ԱՄՍԱԳԻՐ, 1968 Թ. ՄԱՅԻՍ, № 8*

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ԲՅՈՒՐՈԿՐԱՏԻԶՄԻ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.

*Կապիտալիստական հասարակարգը ֆեոդալականին փոխարինելու եկավ Ազատություն, Հավասարություն և Եղբայրություն լոզունգներով: Դեմոկրատական այդ մեծ գաղափարներն իրենց կողմն էին գրավում աշխատավորական լայն զանգվածներին, որոնք վճռական դեր խաղացին բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների հաղթանակի գործում: Բայց մասսաները համոզվեցան, որ կապիտալիզմը բոլորի համար չէ դեմոկրատիա ապահովում: Ինչպես նախորդ դասակարգային ֆորմացիաներում, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում շարունակում էին իշխել հարուստները:*

*Անցյալի առաջավոր մտածողները գտնում էին, որ քանի դեռ գոյություն ունի մասնավոր սեփականություն և դրանից բխող բաշխման ձև, չի կարող լինել սոցիալական, ինչպես նաև իրավունքների ու ազատությունների հավասարություն: Կապիտալիզմի պաշտպանները, հակառակ ռեալ իրականության, քարոզում էին, որ բուրժուական դեմոկրատիան «մաքուր է»; «վերդասակարգային», «համընդհանուր»: Այդ «տեսությունների» սնանկությունն ըստ ամենայնի բացահայտել են գիտական կոմունիզմի հիմնադիրները: Նրանք ցույց են տվել, որ բուրժուական հասարակարգում դեմոկրատիան իշխող դասակարգի դիկտատուրան է, այն դեմոկրատիա է փոքրամասնության համար: «Եթե չծանակենք ամբողջ բանականությունը և պատմությունը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ապա պարզ է, որ քանի դեռ գոյություն ունեն տարբեր դասակարգեր, չի կարելի խոսել «զուտ դեմոկրատիայի» մասին, այլ կարելի է խոսել միայն դասակարգային դեմոկրատիայի մասին»:*

*Բուրժուազիան չվերացրեց ֆեոդալական հասարակարգի ռազմա-բյուրոկրատական պետական մեքենան: Անմիջական պետական ռազմա-ոստիկանական և վարչական մարմինների հետ մեկտեղ կառավարման ոլորտը ներգրավվեցին բուրժուական քաղաքական կուսակցություններ, եկեղեցական, ոչ-պետական, մասսաներից կտրված և նրանցից վեր կանգնած զանազան կազմակերպություններ: «Այն հատուկ շերտը, որի ձեռքում գտնվում է իշխանությունն արդի հասարակության մեջ,— նշում էր Վ. Ի. Լենինը,— բյուրոկրատիան է» (Երկեր, հատ. 1, էջ 533):*

*Վ. Ի. Լենինը մերկացրեց այն մանրբուրժուական պատրանքը, թե բյու-*



digitised by A.R.A.R.@

բոկրատիան պաշտպանում է ամբողջ ժողովրդի շահերը և ցույց տվեց, որ այդ հասարակության մեջ բյուրոկրատիան ծառայում է միայն բուրժուազիային։ «Այդ բանակը,— գրում էր նա,— շրջապատվում է բուրժուական հարաբերությունների մթնոլորտով, շնչում է միայն նրանով... կապված է ստորճանահարգության, «պետական» ծառայության որոշ արտոնությունների հարաբերություններով, իսկ այդ բանակի վերին շարքերը ակցիաների ու բանկերի միջոցով լիովին ճորտացված են ֆինանսական կապիտալին, որոշ չափով հենց իրենք հանդիսանալով նրա գործակալները, նրա շահերի ու ազդեցության հաղորդիչները» (Երկեր, հ. 25, էջ 473)։

Բուրժուական հասարակության ողջ բյուրոկրատիզմը դրսևորվում է կառավարման սիստեմի մեջ։ «Կապիտալիզմի ժամանակ դեմոկրատիզմը սեղմված է, ճզմված, խուզված, այլանդակված՝ մասսաների վարձու ստրկության, կարիքի ու աղքատության ամբողջ իրադրությամբ» (նույն տեղը, էջ 635)։

Բյուրոկրատիզմն ուժեղանում է հատկապես իմպերիալիզմի դարաշրջանում, երբ բուրժուական պետական ապարատը ռազմականացվում է, ձուլվում մոնոպոլիաների հետ, բացասում դեմոկրատիան։ Միաժամանակ, ստեղծվում է մոնոպոլիստական միավորումներում բարձր պաշտոններ գրավող կառավարիչների, դիրեկտորների և զանազան մասնագետների կառավարող մի այլ խավ։ Պետական ապարատի և մոնոպոլիաների սերտ կապն ստեղծում է կենտրոնացված իշխանություն։ Ամերիկյան պրոգրեսիվ հրապարակախոս Ռ. Միլսի դիպուկ արտահայտությամբ, «զինվորական ավագանին, կորպորացիաների պարագլուխները, պետության պաշտոնական ղեկավարները համախմբվելով կազմում են իշխող էլիտան»։

Ազատ մրցակցությունը տնտեսության մեջ և որոշ դեմոկրատական ինստիտուտների առկայությունը քաղաքական կյանքում բնորոշ էին կապիտալիզմի զարգացման առաջին փուլին։ Իմպերիալիզմի դարաշրջանում մոնոպոլիստական կապիտալն իր ձեռքն է վերցնում տնտեսական ու քաղաքական տիրապետության ղեկը։ Այդ ժամանակաշրջանում սկսվում է բուրժուական պառլամենտարիզմի ճգնաժամը, որը հանգեցնում է կառավարման ռեակցիոն մեթոդների ուժեղացման։

Արդի կապիտալիստական հասարակության կառավարման օղակներում բյուրոկրատիզմի ուժեղացումը դեմոկրատիայի ճգնաժամի արտահայտություններից է։ Ընտրական սիստեմում դա դրսևորվում է նրանով, որ ավելի ու ավելի են սահմանափակվում մասսաների ընտրական իրավունքները։ Բուրժուական ընտրական օրենքները թեև ձևականորեն իրավունք են նախատեսում, բայց դրանք նենգափոխում են բազմաթիվ «ուղղումներով»։ Այդպիսի «ուղղումներից» են կապիտալիստական երկրներում լայնորեն տարածված ցենզերը (գույքային, ռասայական, կրթական, նստակեցության և այլն)։ Վերջին տարիներին ավելացել են նոր սահմանափակումներ։ Ընտրական օկրուգները կազմվում են այնպես, որ բանվորներով և աշխատավոր խավերով բնակեցված վայրերից ավելի քիչ դեպուտատական տեղեր տրվեն, քան այն բնակավայրերից, ուր ապրում են տիրող դասակարգերը։ Մի շարք կապիտալիստական երկրներում ընտրություններն անուղղակի են, այսինքն՝ դեպուտատներին ո՛չ թե ընտրողներն են ընտրում, այլ նրանց ներկայացուցիչները։

Ընտրությունների բյուրոկրատական կազմակերպման օրինակ է ԱՄՆ-ի ընտրական սիստեմը։ Բավական է նշել, որ այնտեղ միասնական ընտրական օրենքներ չկան, և ընտրությունները տրոհվում են մի շարք փուլե-



րի։ 1900 թվականներից ԱՄՆ-ում կիրառվում են, այսպես կոչված, նախնական «փակ» և «բաց» ընտրություններ։ «Փակ» ընտրություններին թեկնածուների առաջադրմանը մասնակցում են միայն «կուսակցական ընտրողները», որոնք քվեարկում են իրենց կուսակցության թեկնածուների ցուցակի օգտին։ Ընդ որում, սկզբնական ընտրություններին մասնակցելու համար ընտրողը պետք է հաստատի իր կուսակցական պատկանելությունը, երդում տա, որ ինքն իրեն համարում է տվյալ կուսակցության անդամ և վերջին ընտրություններում քվեարկել է նրա օգտին, մտադիր է իր կուսակցությունը պաշտպանել նաև հաջորդ անգամ։ Միայն դրանից հետո է նա իրավունք ստանում մասնակցելու տվյալ կուսակցության թեկնածուների առաջադրմանը։ Սկզբնական «բաց» ընտրություններ գոյություն ունեն տասներկու նահանգներում։ Այս դեպքում ընտրողից չի պահանջվում հաստատել կուսակցական պատկանելությունը, բայց նա իրավունք ունի քվեարկելու միայն մեկ կուսակցությունից առաջադրված թեկնածուի օգտին։

Բացի նախնական ընտրություններից, ԱՄՆ-ի տասնմեկ նահանգներում գոյություն ունի նախնական կրկնվող ընտրությունների սիստեմ։ Դա կիրառվում է այն ժամանակ, երբ առաջադրված թեկնածուն ընտրություններից հետո ձայների մեծամասնություն չի հավաքում։ Ընդհանրապես նախնական ընտրությունները չեն ազդում պրեզիդենտի և վիցե-պրեզիդենտի թեկնածությունների առաջադրման վրա։ Այդ թեկնածությունները նախատեսվում են քաղաքական կուսակցությունների համագումարներում։ Պրեզիդենտական նախնական ընտրությունների էությունն այն է, որ կուսակցական համագումարների համար ընտրողներ առաջադրելիս, ընտրողներն իրենց վերաբերմունքն են ցույց տալիս պրեզիդենտի այս կամ այն հավանական թեկնածուի օգտին։ Ըստ որում, պրեզիդենտական նախնական ընտրությունների արդյունքներն ընտրված պատգամավորներին չեն պարտադրում համագումարներում քվեարկելու նահանգներում հաղթողների օգտին։ Դրանով անտեսվում է ընտրողների կամքը, և փաստորեն հարցը լուծում են մոնոպոլիստական կապիտալի մագնատները։

Դա ակներև է ԱՄՆ-ի մի շարք նահանգներում այս տարի անցկացված նախնական ընտրություններից։ Մինչև նախնական ընտրությունները յուրաքանչյուր կուսակցություն ունենում է իր թեկնածուն։ Բայց այդ ամենը դեմոկրատիա խաղալուց այն կողմ չի անցնում, քանի որ, վերջին հաշվով, ընտրողներին կառավարող դասակարգի երկու կուսակցություններից առաջադրվում են միայն երկու թեկնածու։ Ով էլ առաջադրվի՝ Լ. Ջոնսոնը, Յու. Մակարտին, Գ. Հեմֆրին, Ռ. Նիքսոնը, թե Ռոկֆելլերը, միևնույն է, բոլորը խոշոր կապիտալիստներ են և պաշտպանում են մոնոպոլիաների շահերը։

Բուրժուական դեմոկրատիայի սնանկության արտահայտությունն է Միացյալ Նահանգներում տիրող քաղաքական մթնոլորտը, երբ տեռորի միջոցով կառավարման ասպարեզից դուրս են մղվում օլիգարխիայի համար ոչ ցանկալի գործիչները (հիշենք պրեզիդենտ Ջոն Քեննեդիի, Մարտին Լյութեր Քինգի և պրեզիդենտության թեկնածուի հավակնորդ սենատոր Ռոբերտ Քեննեդիի սպանությունը)։ «Օլիգարխիան,—գրել է Կ. Մարքսը,—իրեն հավերժացնում է ոչ թե նրանով, որ իշխանությունը մշտապես պահպանում է միևնույն ձեռքում, այլ նրանով, որ նա ժամանակ առ ժամանակ իշխանությունը բաց է թողնում մի ձեռքից, որպեսզի տեղն ու տեղը բռնի մյուս ձեռքով» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 2, էջ 372)։



digitised by A.R.A.R.@

Ֆինանսական կապիտալի մագնատների և նրանց ներկայացուցիչների
տիրապետությունը ԱՄՆ-ի տնտեսական և քաղաքական կյանքում ապահով-
վում է նաև երկրի բարձրագույն օրենսդրական օրգանի՝ կոնգրեսի կազմով:
ԱՄՆ-ի կոնգրեսի կազմում չկա ո՛չ միայն առաջադեմ կուսակցությունների
կամ աշխատավորների կազմակերպության որևէ ֆրակցիա, այլև որևէ բան-
վոր կամ շարքային ֆերմեր: ԳՖՀ-ում, որտեղ բանվոր դասակարգը բնակչու-
թյան կեսից ավելին է, 1965 թվականի բունդեստագի ընտրություններում
նրանց ներկայացուցիչներն ընդամենը յոթ տոկոս կազմեցին: Հակառակ ռեալ
իրականության, կապիտալիզմի պաշտպանները շարունակում են փառաբանել
բուրժուական պառլամենտը՝ այն համարում հասարակության դեմոկրատա-
կան կառավարման տիպար: Մերկացնելով բուրժուական գաղափարախոսների
նման փորձերը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Դիտեցեք պառլամենտական երկրնե-
րից որը կուզեք՝ Ամերիկայից մինչև Շվեյցարիա, Ֆրանսիայից մինչև Անգլիա,
Նորվեգիա և այլն. իսկական «պետական» աշխատանքը կատարում են կուլիս-
ների ետևում և կատարում են դեպարտամենտները, գրասենյակները, շտաբ-
ները: Պառլամենտներում միայն շաղակրատում են «հասարակ ժողովրդին»
խաբելու հատուկ նպատակով» (Երկեր, հ. 25, էջ 547):

Բուրժուական պառլամենտարիզմի լենինյան բնորոշումը լիովին հաս-
տատվեց իմպերիալիզմի հետագա զարգացմամբ: Այդ է վկայում արդի իմ-
պերիալիստական պետությունների օրենսդրական և գործադիր իշխանություն-
ների փոխհարաբերությունը: Ներկայումս այնտեղ տեղի են ունենում օրենս-
դիր օրգանի՝ պառլամենտի դերի նեղացման և, ընդհակառակը, գործադիր
իշխանության ամրացման պրոցես: Պառլամենտը հետզհետե զրկվում է կառա-
վարության գործունեությանը վերահսկելու իրավունքից: Վերջերս Անգլիայում
լույս տեսած «Պրեմիեր մինիստրի իշխանությունը» խորագիրը կրող գրքում
նրա հեղինակ Հեմֆրի Բերկլին գրում է. «...վատ են մայր-պառլամենտների
գործերը»: Նա գտնում է, որ «եթե մի կողմ թողնենք առասպելները, պառլա-
մենտական ինստիտուտներն ինքնին անբավարար են մեր ազատությունների
երաշխիքների համար»: Իսկ կառավարությունը «չափից ավելի է օգտվում
պառլամենտից՝ բռնակալության գործիքից»: Անգլիայի արտաքին գործերի
նախկին մինիստր Բրաունը համայնքների պալատում խոստովանել է, թե այն-
պիսի վտանգ է ստեղծվել, որ իշխանությունը կարող է դուրս գալ «պառլա-
մենտական վերահսկողության շրջանակներից»:

Փոփոխություններ են տեղի ունենում նաև գործադիր իշխանության մեջ,
որտեղ վճռական դերը ընտրովի անձից անցնում է չինովնիկական-բյուրո-
կրատական ապարատին: Երբ չինովնիկությունը ջոկվում է և անփոփոխ է,
բուրժուական պետական մեքենան ավելի ու ավելի է անկախ դառնում որևէ
ընտրությունից և ընտրովի անձից ու կապվում մոնոպոլիաների հետ:

Գործադիր իշխանությունն ուժեղացնելու քաղաքականությունն արդա-
րացնելու համար բուրժուական գաղափարախոսները դիմում են տարբեր
պատրվակների, մասնավորապես քաղաքականությունն ուժեղացնելու ինչ-որ
արդարացման, նշելով, թե հատուկ և տնտեսական բարդ օրենսդրության
հարցերի լուծման համար որոշակի ունակություններ են պահանջվում: Այդ
պատճառաբանությունն անհիմն է, որովհետև ամենքին հասկանալի է, որ որ-
քան դեմոկրատական են օրենքների քննարկումն ու ընդունումը, այնքան
հնարավոր է զերծ մնալ բյուրոկրատական արատներից:

Բուրժուական դեմոկրատիայի սահմանափակման և բյուրոկրատիզմի



ուժեղացման պրոցեսը դրսևորվում է նաև ոչ-պետական կազմակերպությունների գործունեությունն ընդլայնելու միջոցով: ԱՄՆ-ի արդյունաբերողների ազգային ասոցիացիան և նմանօրինակ միավորումները մյուս կապիտալիստական երկրներում իրագործում են փաստական իշխանությունը և իրենց կամքը թելադրում նաև արտաքին քաղաքականության բնագավառում: Նրանց են դաշնակցում ռեակցիոն, ռասիստական այնպիսի կազմակերպություններ, ինչպիսիք են ԱՄՆ-ում՝ «Կու-կլուկս-կլանը», «Ամերիկյան լեգիոնը», «Ջոն Բերչի ընկերությունը», ԳՖՀ-ում՝ «Նախկին էսէսականներ», «Պողպատե սաղավարտ» միությունները և այլն: Մոնոպոլիստների ֆինանսական աջակցությամբ գործող այդ կազմակերպություններն ըստ էության ձուլվել են իմպերիալիստական բուրժուազիայի հիմնական քաղաքական կուսակցություններին և պետական բյուրոկրատական ապարատին:

Ժամանակակից կապիտալիստական աշխարհում ի հայտ են գալիս բուրժուական դեմոկրատիայի ճգնաժամի գծերը քաղաքական կյանքի բյուրոկրատացմամբ ու կառավարական ապարատի անընդհատ աճմամբ. կառավարման ապարատը վերջին 20—30 տարիների ընթացքում ավելացել է երկու անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ չորս: ԱՄՆ-ի ֆեդերալ ապարատը, որ 1900 թվականին ուներ 200 հազար չինովնիկ, 1960 թվականին հասավ 2500 հազարի, իսկ այժմ նրանց թիվը հասնում է երեք միլիոնի: Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, ԳՖՀ-ում կառավարման ապարատը կազմված է մեկական միլիոն չինովնիկներից: Անգլիայում, չնայած գաղութների կրճատմանը, գաղութների մինիստրության ապարատը վերջին 20 տարում աճել է մոտ հինգ անգամ:

Ռազմա-բյուրոկրատական ապարատի արագ աճը հաստատում է լենինյան այն դրույթը, որ իմպերիալիզմի դարաշրջանին բնորոշ է «պետական մեքենայի» արտասովոր ուժեղացում, «նրա չինովնիկական ու զինվորական ապարատի չտեսնված աճ,որ կապակցված է պրոլետարիատի դեմ ուղղված ռեպրեսիաների ուժեղացման հետ ինչպես միապետական, այնպես և ամենաազատ, հանրապետական երկրներում» (Երկեր, հ. 25, էջ 530):

Կապիտալիզմի գաղափարախոսները տարբեր կերպ են բացատրում նրա ներկա քաղաքական սիստեմը: Ոմանք բացեիբաց հանդես են գալիս ձևական դեմոկրատական ինստիտուտների դեմ, փորձում ապացուցել, որ պառլամենտարիզմն սպառել է իրեն և անհնար է կառավարման դեմոկրատական ձևը: Այդպիսով, նրանք ձգտում են տեսականորեն հիմնավորել բյուրոկրատիզմը: Այդ ուղղությունն առավելապես տարածված է ամերիկյան սոցիոլոգիայում: Նրա ներկայացուցիչները (Ռ. Մերտոն, Ռ. Բենդիքս, Ֆ. Սելզինկ, Ա. Գոլդներ, Պ. Բլաուն, Ս. Լիպսետ և ուրիշներ) բյուրոկրատիզմի ջատագովներն են: Փորձելով հիմնավորել իրենց դատողությունները, նրանք ասում են, թե հնարավոր է տարբերել բյուրոկրատիայի «սովորական» և «տեխնիկական» ըմբռնումները: Ընդ որում, նրանք պնդում են, թե, իբր, հանդես են գալիս սովորական (բացասական) բյուրոկրատիայի դեմ և կողմնակից են «տեխնիկական (դրական) բյուրոկրատիային», վերջինս համարելով «կազմակերպական միջոց», որն իբր ապահովում է մեծ ու բարդ կազմակերպությունների կայունությունը, գործունեության արդյունավետությունը:

Բյուրոկրատիայի գլխավոր «առավելությունը» նրանք համարում են մասնագիտացումը, որը, նրանց կարծիքով, առավել «տեխնիկական արդյունք» է տալիս: Բացի այդ, նրանք գտնում են, որ բյուրոկրատիան հիմնված է կատե-



digitised by A.R.A.R.@

գործի կանոնների, սկզբունքների, կարգապահության ու հիերարխիայի վրա։
Այդ կանոնների ու սկզբունքների կիրառումը ադմինիստրատորներին հնարա-
վորություն է ընձեռում ընդհանուր բանաձևերի հիման վրա լուծելու բազմա-
պիսի հարցեր։ Նրանք բյուրոկրատիզմի դրական գիծ են համարում նաև, այս-
պես կոչված, «անդեմությունը»։ Այսինքն՝ ժամանակակից ինստիտուտները
ղեկավարելու համար անհրաժեշտ է օբյեկտիվ լինել, հեռու անձնական զգաց-
ման ազդեցությունից։

Բյուրոկրատիայի նման մեկնաբանությունը ծառայում է տիրապետող
դասակարգի՝ բուրժուազիայի շահերին։ Ինչպես նկատում է Ռ. Միլսը, բյու-
րոկրատիան «մեծացնում է սեփականատերերի իշխանության արդյունավե-
տությունը և արտադրական կարողությունը»։ Վանելով «անձնական զգա-
ցումներն» ու «իռացիոնալ տարրերը», բյուրոկրատիան օրենսդրական մար-
մինները դարձնում է անբովանդակ միավոր, արմատավորում անպատաս-
խանատվությունն ու կամայականությունը։

Բուրժուական գաղափարախոսները չեն դադարում հորջորջել, թե բյուրո-
կրատիայի դրսևորմանը նպաստում են աշխատանքի հետագա բաժանումը,
ժամանակակից կազմակերպությունների մեծ չափերը, նրանց ֆունկցիաների
բարդությունը և այլն։ Ելնելով դրանից, նրանք խոսում են «բյուրոկրատների
հեղափոխության», «ադմինիստրատիվ հեղափոխության», «ադմինիստրատիվ
պետության» մասին և այլն։ Բուրժուական գաղափարախոսների այդ մեքենա-
յությունները նոր չեն։ Ցանկանալով աշխատավոր մասսաների ուշադրությու-
նը շեղել սոցիալական լուրջ պրոբլեմներից, արդի կապիտալիստական հա-
սարակության մեջ տեղի ունեցող ամեն մի աննշան փոփոխություն նրանք
ներկայացնում են որպես հեղափոխություն։ Ամերիկյան սոցիոլոգ Ռ. Բենդիք-
սը նկատում է, որ ժամանակակից տեխնիկայի մակարդակը դժվարացնում է
կառավարության տապալումը, հեղափոխության իրականացումը։ Բուրժուա-
կան գաղափարախոսները ճգնում են ապացուցել, թե այժմ, իբր, տեղի է ունե-
նում սոցիալական հեղափոխություն կատարելու դեմոկրատական իրավունքի,
նույնիսկ դրա գաղափարների մահացում։ Այդ «տեսությունների» գլխավոր
նպատակն է՝ հիմնավորել իշխանության կենտրոնացումը, արդարացնել բյու-
րոկրատիզմի ուժեղացումը և դեմոկրատիայի սահմանափակումը կապիտալի
աշխարհում։

Նույն նպատակին է ծառայում նեոֆաշիզմի գաղափարախոսությունը,
որը բուրժուական տրադիցիոն դեմոկրատիան անվանում է «սանձազերծված
լիբերալ դեմոկրատիա» և քննադատում այն։ Ընդ որում, նրանք քողարկվում
են «ժողովրդի» շահերի և սահմանադրական պաշտպանության կոչերով։
Նեոֆաշիստական գրչակները քննադատում են հատկապես պառլամենտը, որն
այս կամ այն չափով խանգարում է նրանց լիդերներին՝ իշխանությունը վերց-
նելու իրենց ձեռքը։ Զարաշահելով հասարակության կառավարմանը մաս-
նակցելու աշխատավորների ձգտումները, նեոֆաշիստները շատ են խոսում
պառլամենտարիստների «տկարության», «կաբինետայնության» և «ինտելի-
գենտության», կուսակցությունների «պառլամենտական խաղի», «պառլամեն-
տական էգոիզմի» մասին։

Նեոֆաշիզմը բուրժուական պառլամենտարիզմը քննադատում է ո՛չ թե
դեմոկրատիան ընդլայնելու, այլ այն վերացնելու համար։ Պառլամենտարիզմի
հանդեպ նեոֆաշիզմի գաղափարախոսության ռեակցիոն դիրքորոշումը
գրսևորվում է «պառլամենտական բյուրոկրատիզմի» նկատմամբ դեմագոգիկ



թեզիսում։ Այնտեղ ասված է, թե պառլամենտը չի կարող արդյունավետ վե-
րահսկողություն սահմանել կառավարության վրա, «խլում է մինիստրների
ժամանակը, խանգարում նրանց աշխատել», ուստի, դրա կարիքը չկա։ Միա-
ժամանակ, նրանք հանդես են գալիս ընդդեմ «լիբերալ բյուրոկրատիզմի»,
որը սահմանափակում է էկոնոմիկայի բնագավառում անհատական նախա-
ձեռնությունը, պատասխանատվությունը։ Դա տեղի է ունենում, երբ պետա-
կան-մոնոպոլիստական կապիտալիզմը սահմանափակում է ո՛չ միայն աշ-
խատավոր մասսաների, այլև միջին ու մանր բուրժուազիայի նախաձեռնու-
թյունը։ Ջգտելով հաստատել առաջնորդների անձնական դիկտատուրա, նեո-
ֆաշիստական գաղափարախոսները պահանջում են բարձրացնել անձնական
քաղաքական պատասխանատվությունը։ Այդ նույն նպատակով նրանք քննա-
դատում են պառլամենտական ակտերի միջոցով կատարվող իրավական կար-
գավորումը կամ «ավելորդ իրավական ռեգլամենտացիան», որը, նրանց կար-
ծիքով, ստեղծում է, այսպես կոչված, «կոլեգիալ անպատասխանատվություն»,
որն ուժեղ անձնավորության վճռական և պատասխանատու գործողություն-
ների սահմանափակման «բյուրոկրատական իրավական» ձև է։

Նեոֆաշիստներն առանձին ջանասիրությամբ քննադատում են կոմու-
նիստների, սոցիալիստական երկրների, ազգային-ազատագրական շարժման
և այլ առաջադիմական հոսանքների նկատմամբ բուրժուա-դեմոկրատական
քաղաքականության օպորտունիզմը։

Ռեակցիոն, դեմագոգիկ դիրքերից քննադատելով բուրժուական դեմոկրա-
տիան, նեոֆաշիզմի գաղափարախոսները քարոզում են «սահմանափակ» դե-
մոկրատիա, որը պետք է հաստատի «դեմոկրատական» առաջնորդի, ուժեղ
«օրգանական միասնության» մասին կարելի է խոսել, երբ այդ գաղափարա-
խոսները պնդում են, թե «ուժեղ իշխանության» նկատմամբ ժողովրդի «հա-
մաձայնությունը» պահանջվում է միայն ձևականորեն, «տեսականորեն»։

Բուրժուական դեմոկրատիայի նեոֆաշիստական քննադատության և սահ-
մանափակ դեմոկրատիայի պրոպագանդայի նպատակն է՝ տեսականորեն նա-
խապատրաստել անցումը կառավարման ինքնակալական և ֆաշիստական
սիստեմների, որոնց ռեակցիոն բյուրոկրատական էությունը հանրահայտ է։
Այս տեսակետը չի կիսում բուրժուական գաղափարախոսության մյուս ուղղու-
թյունը, որն ամեն կերպ նվազեցնում է ռազմաբյուրոկրատական մեքենայի
ուժեղացման և ժամանակակից բուրժուական հասարակության կառավարման
սիստեմի ֆաշիզացման տենդենցների վտանգավորությունը։ Այդ պրոցեսում
նրանք տեսնում են սոսկ դեմոկրատիայի որոշ մոդիֆիկացում, որն, իբր, չի
փոխվում։ Դեմոկրատիայի էությունը, հիրավի, չի փոխվում, որովհետև այն
մնում է բուրժուական։ Արդի իմպերիալիստական պետություններին բնորոշ
են ռեակցիայի ընդլայնումը, գործադիր օրգանների ապարատի միլիտարիզա-
ցիան, աշխատավորների իրավունքների ու ազատությունների սահմանափա-
կումը։ Բայց դա չի նշանակում, թե տվյալ պրոցեսը տեղի է ունենում անարգել։
Դեմոկրատական իրավունքների վերացման և բյուրոկրատիզմի ընդլայն-
ման դեմ ավելի ու ավելի վճռական են հանդես գալիս ժողովրդական մասսա-
ները, որոնց գլխավորում է բանվոր դասակարգը։

Այդ են վկայում վերջին տարիներին կապիտալիստական երկրներում տե-
ղի ունեցած գործադուլային շարժման աճի համոզիչ թվերը։ Բավական է նշել,



digitised by A.R.A.R.@

որ միայն վերջին տասնամյակում գործազուրկների թիվը կրկնակի ավելացել է և հասել տարեկան 55—57 միլիոնի:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում ասված է, որ «բանվոր դասակարգը ավելի ու ավելի համառորեն է առաջադրում անմիջական քաղաքական պահանջներ, հանդես գալով ընդդեմ մոնոպոլիստների իշխանության, իմպերիալիստական կառավարությունների ագրեսիվ և ռեակցիոն կուրսի, հանուն դեմոկրատիայի ու պրոգրեսի»:

Աշխատավորների լայն ազատագրական շարժումը, իսկական ժողովրդական իշխանություն հաստատելու համար մղվող պայքարը կազմում են ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Ճապոնիայի, ԳՖՀ-ի, Իսպանիայի և մյուս կապիտալիստական երկրների ներքաղաքական կյանքի բնորոշ գծերը: Փաստերը ցույց են տալիս, որ ապարդյուն են բուրժուական գաղափարախոսների փորձերը՝ արդի բուրժուական պետությունը բնութագրելու որպես «ընդհանուրի բարեկեցությունն ապահովող» օրգան, իսկ պետական մոնոպոլիստական կապիտալիզմը՝ համարյա սոցիալիզմ: Որքան կապիտալիզմի սպասավորները ջանան գունազարդել այդ հասարակարգը, անհերքելի է այն, որ կապիտալիստական պետությունը մնում է իշխող դասակարգի ռազմա-բյուրոկրատական օրգանը, ծառայում մոնոպոլիստներին, պաշտպանում նրանց շահերը:

Կապիտալի աշխարհում չի կարող խոսք լինել դեմոկրատիայի և անձի ազատության մասին, քանի որ հասարակության անդամների մեծամասնությունը զրկված է սեփականությունից, անշեղ աճում է խրոնիկական գործազրկությունը, սաստկանում ռասայական ու ազգային ճնշումը, հարձակումներ են կատարվում աշխատավորների հասարակական կազմակերպությունների վրա:

Ժողովրդական մասսաներն սկսում են հասկանալ, որ չի կարելի բուրժուական դեմոկրատիայի «ծաղկման» մասին հեքիաթը վերագրել ռազմա-բյուրոկրատական պետական մեքենայի ուժեղացմանն ու կառավարման բյուրոկրատական մեթոդներին: Ուստի, բյուրոկրատիայի դեմ անհրաժեշտ պայքարը կապիտալիզմի սոցիալ-քաղաքական սիստեմի դեմ պրոլետարիատի, աշխատավոր մասսաների առաջնահերթ խնդիրն է: Աշխատավոր մասսաները ձգտում են դեն նետել բյուրոկրատիան և հաստատել իսկական դեմոկրատիա: Իմպերիալիզմի դեմ մղված պայքարի հաջողությունը պայմանավորված է առաջադեմ ուժերի միասնությամբ: Գիտական այս հետևությունը կոմունիստական և բանվորական կուսակցությունների ծրագրային դրույթներից է:

Դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում հեղափոխական ուժերի միասնությունը ամրապնդելու անհրաժեշտությունն ամբողջ ուժով ընդգծեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը: «Կենտկոմի պլենումը,— ասված է որոշման մեջ,— գտնում է, որ արդի միջազգային իրադրությունը հրամայաբար պահանջում է սոցիալիզմի, դեմոկրատիայի և ազգային ազատագրության բոլոր ուժերի ակտիվ և միասնական գործողություններ»: Կապիտալիստական երկրների բանվորները, ընչազուրկները միայն այդ պայմանով կարող են ապահովել իրենց սոցիալական ազատագրումը:

Պատմական պրակտիկան անհերքելի ապացուցել է, որ միայն սոցիալիզմն է մարդուն ազատում շահագործումից, մարդկանց համար ստեղծում բարեկեցիկ պայմաններ, բացահայտում նրանց տաղանդն ու ձիրքը:

# ՀԻՆ ԵՐԳԵՐ, ՆՈՐ ՓԱՍՏԵՐ

ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ Վ. Կ.

Բուրժուական կարգերը ջատագովող տեսությունները, չնայած իրենց ակնհայտ սնանկությանը, դեռևս կենսունակ են: Նրանց նպատակն է՝ ոչ թե անաչառ հետազոտությունը, այլ կապիտալին օգտակար լինելը: Որքան քիչ են նրանք համապատասխանում իրականությանը, որքան ավելի են մոլորեցնում ժողովրդին, բուրժուազիան այնքան հաճույքով է աջակցում իր վարձու գրչակներին, որոնց շարքերում ուրույն տեղ են գրավում, այսպես կոչված, «ժողովրդական կապիտալիզմի» տեսության պաշտպանները:

Դեռ անցյալ դարում եղած «եկամուտների հեղափոխության» տեսությունը, որը քարոզում էր գռեհիկ քաղաքատնտեսությունը, «ժողովրդական կապիտալիզմի» ելակետային դրույթն է: XIX դարի կեսերին ամերիկյան բուրժուական տնտեսագետ Հենրի Չարլզ Քերին իր «Անցյալը, ներկան և ապագան» աշխատության մեջ գրում է. «Բանվորի արտադրանքն աճում է, իսկ այն բաժինը, որը պատկանում է կապիտալիստին, նվազում»: Մի ուրիշ աշխատության մեջ («Հասարակագիտության սկզբունքները») Քերին գրում է. «Բանվորի բաժինը աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զուգընթաց աճում է, իսկ կապիտալիստինը՝ թեպետ բացարձակապես մեծանում է, շարունակում է նվազել. այս ամենը կանխորոշում է հասարակությունը կազմող զանազան մասերի հավասարեցման մշտական տենդենցը»: «Այսպիսին է աշխատանքի արդյունքների բաշխումը կառավարող մեծ օրենքը»:

«Ժողովրդական կապիտալիզմի» մասին մյուս վարկածը, «կապիտալի դեմոկրատացման» գաղափարը, ծագել է դեռևս XIX դարի վերջերին: Մերկացնելով «կապիտալի դեմոկրատացման» տեսությունը, Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ «...բաժնետիրական ընկերություններն իրապես ծառայում են այն նպատակին, որպեսզի դյուրահավատ և ընչասակավ մարդկանց սեփականազրկեն հօգուտ խոշոր կապիտալիստների և սպեկուլյանտների» (Երկեր, հ. 4, էջ 247):

Բեռնշտեյնները, Հերցերը, Չեռնովները, Բուլգակովները և ուրիշներ հավատացած են, թե, իբր, խնայողական դրամարկղների մանր ավանդատուները դառնում են երկաթուղիների սեփականատերեր, հողի գրավաթերթերի տերեր: Ասում են, թե իբր, իրականում նույնիսկ այնպիսի զուտ կապիտալիստական ու խոշոր ձեռնարկությունները, ինչպիսիք երկաթուղիներն ու բանկերն են, ավելի ու ավելի են ապակենտրոնացվում, մանրացվում, անցնում են մանր սեփականատերերի ձեռքը՝ նրանց կողմից բաժնետոմսեր, փոխառության տոմսեր, գրավաթերթեր գնելու միջոցով և այլն, իրականում աճում է ունևորների թիվը, սեփականատերերի թիվը,— իսկ այս սահմանափակ մարքսիստները



digitised by A.R.A.R.@

տարվում են համակենտրոնացման հնացած տեսությամբ և աղքատացման տեսությամբ (տե՛ս Երկեր հ. 6, էջ 106):

Չնայած «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը վաղեմի պատմություն ունի, բայց բուրժուական քաղաքատնտեսությունն այն համարում է նոր երևույթ, հետապնդելով ակնհայտ շահադիտական նպատակներ:

«Ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը նոր փորձ է հնամաշ գաղափարների, բայց նոր փաստերի օգնությամբ գովաբանելու կապիտալիզմը: Պրոֆեսոր Ջ. Մոնսենը «Ժամանակակից ամերիկյան կապիտալիզմը» գրքում եզրակացնում է, թե «ներկայումս բառիս բուն իմաստով կապիտալիզմ գոյություն չունի»: «Կապիտալիզմ» բառից խուսափելու, կապիտալիզմի չքանալը ապացուցելու միտումը բացատրվում է, ամենից առաջ, այն ներքին հակասություններով, որոնք ոչ միայն չեն չքանում, այլ, ընդհակառակը, սրվում են կապիտալիստական աշխարհում:

Ֆրանսիական հայտնի բուրժուական սոցիոլոգ Ռայմոն Արոնը գրում է. «Հարյուր տարի առաջ հակակապիտալիզմը խայտառակություն կհամարվեր: Այսօր ավելի խայտառակ վիճակի մեջ կընկնի նա, ով իրեն հակակապիտալիստ չի համարի»:

««Սոցիալիզմ» թե՞ «կապիտալիզմ». միջազգային անըմբռնողություն» հոդվածում, որը լույս է տեսել 1966 թվականի հունվարին, ամերիկյան պրոֆեսոր Ռալֆ Ուայտն առանց երկմտանքի հայտարարել է. «Հետազոտության տվյալները վկայում են, որ նույնիսկ Արևմտյան Եվրոպայում միջին քաղաքացին «կապիտալիզմ» բառի հետ գլխավորապես բացասական պատկերացումներ է առնչում և, ամբողջությամբ վերցրած, այդ բառը նրան մի փոքր անվայել արտահայտություն է թվում: Իսկ նրա համաքաղաքացիների մեծ մասի համար, առանձնապես Ֆրանսիայում և Իտալիայում, «կապիտալիզմը» շատ արգահատելի բառ է: Ուստի, հակակապիտալիստորեն տրամադրված այդ միլիոնավոր մարդկանց համար Ամերիկայի մասին՝ որպես ծայրաստիճան կապիտալիստական երկրի, տարածված կարծիքը նրա հասցեին ուղղված մեղադրանք է, թերևս ամենագլխավոր մեղադրանքը»:

Կապիտալիզմի կեղեքիչ էության մերկացման գործում մեծ նշանակություն ունեն սոցիալիստական երկրների, առաջին հերթին, մեր հայրենիքի վիթխարի հաջողությունները: Վաշինգտոնի պաշտոնական հրատարակություններից մեկում ասված է. «Կասկածից վեր է, որ անցյալում հետամնաց երկրի տնտեսական արագ զարգացման բնագավառում սովետների ձեռք բերած հաջողությունները... մեծ տպավորություն են գործել ամբողջ աշխարհում, առանձնապես զարգացող երկրներում, բայց նաև նշանակալի չափով հենց բուն առաջավոր, արդյունաբերական տեսակետից զարգացած երկրներում, հատկապես՝ տնտեսական դեպրեսիայի ժամանակաշրջանում»:

Սակայն բուրժուազիայի գաղափարախոսները, խեղաթյուրելով իրական փաստերը, նոր առասպելներ են հորինում «կապիտալի դեմոկրատացման» և «եկամուտների ասպարեզում կատարված հեղափոխության» մասին: Սատերդեյ իվնինգ պոստ» ամերիկյան հանդեսի ամենավերջին համարներից մեկում զետեղված «Ո՞վ է իշխում Ամերիկայում» հոդվածում ասված է. «Ամերիկացիների մեծ մասը գտնում է, որ իրենք են իշխում Ամերիկայում, դա է մեզ բոլորիս կապիտալիստ դարձնում»: «Կապիտալի դեմոկրատացման» օգտին վկայակոչվող միակ և գլխավոր փաստարկը զարգացած կապիտալիստական երկրներում բաժնետերերի թիվն է: ԱՄՆ-ում անհատական բաժնետերերի թիվը



1952 թվականի 6,5 միլիոնից 1965 թվականին հասել է 20,1 միլիոնի: ԳՖՀ-ում, ֆեդերալ վիճակագրական գերատեսչության տվյալներով՝ 1955 թվականին կար 0,5 միլիոն բաժնետեր, որոնցից «ժողովրդական բաժնետոմսերի» 100 հազար բաժնետեր, իսկ 1961 թվականին նրանց թիվն անցավ 2 միլիոնից, «ժողովրդական բաժնետերերը» ավելացան 15 անգամ: Մոտավորապես նույն վիճակն է մյուս զարգացած կապիտալիստական երկրներում: Հարցը նրանում է, որ բաժնետերերի բացարձակ թիվը, յուրաքանչյուրի բաժնից անկախ, քիչ բան է ասում: Այդ մասին հաճախ խոսում են իրենք՝ բուրժուական քաղաքական գործիչները և տեսաբանները: «Միայն արժեթղթերի տերերի թիվը դեռևս բանալի չէ նրանց անձնական սեփականության չափերը, կամ ընկերության գործերի ղեկավարման վրա ազդելու նրանց հնարավորությունները բացահայտելու համար»,— ասել է Ֆ. Դ. Ռուզվելտը:

1965 թվականին ԱՄՆ-ում բաժնետերերը կազմում էին բնակչության 10 տոկոսը, բայց բնակչության միայն 1 տոկոսն ուներ բոլոր բաժնետոմսերի 76 տոկոսը: Ամերիկյան բուրժուական գիտնական Ռ. Այբենշտեյնի խոստովանությամբ, 1963 թվականին ԱՄՆ-ի հարկատուների 0,1 տոկոսը իր ձեռքում ուներ անհատական բոլոր բաժնետոմսերի 19,5, իսկ հարկատուների՝ 1 տոկոսը, այսինքն՝ տարեկան 25 հազար դոլարից ավելի եկամուտ ունեցողները իրենց ձեռքում կենտրոնացրել էին անհատական բաժնետոմսերի 48 տոկոսը: Աշխատավորների հիմնական զանգվածը իր ձեռքում ուներ բաժնետոմսերի աննշան մասը: Ըստ պաշտոնական տվյալների, 1962 թ. ԱՄՆ-ի ոչ-որակյալ բանվորների միայն 3 և կիսաորակյալ բանվորների 5 տոկոսն էր բաժնետեր:

Արևմտագերմանացի տնտեսագետ Կ. Խիրխեի հաշվումներով, մինչև 1961 թվականը թողարկված 1,7 միլիոն «ժողովրդական բաժնետոմսերի» ընդհանուր արժեքը կազմում էր երկրում շրջանառության մեջ գտնվող բոլոր բաժնետոմսերի կուրսային արժեքի միայն 1 տոկոսը: Մինչդեռ, խոշորագույն ձեռնարկությունների սեփականատերերը, որոնք բոլոր բաժնետիրական ընկերությունների միայն 2,7 տոկոսն են կազմում, իրենց ձեռքում են կենտրոնացրել արևմտագերմանական բաժնետիրական կապիտալի 53 տոկոսը:

Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր Ռ. Իլզը ճիշտ է նկատում, որ մանր բաժնետիրոջ համար արժեթղթերը «սեփականության խորհրդանիշ են, բայց ոչ դրանց խորհրդանշած իրերի իրական սեփականություն»:

Աշխատավորների մի մասի մոտ եղած բաժնետոմսերի չնչին գումարը, առաջին հերթին, արդյունք է կապիտալիստական երկրներում եղած եկամուտների ցածր մակարդակի: Այս մասին է վկայում աշխատավորների բյուջեի մշտական և մեծ դեֆիցիտը, որը հնարավորություն չի ընձեռում ծայրը ծայրին հասցնելու, կանխիկ վճարով անհրաժեշտ ապրանքներ գնելու: Այդ բանը խոստովանել են արևմտագերմանական մի խումբ բանվորներ. «Եթե չես ուզում կյանքիդ կեսն առանց բնակարանի, լվացքի մեքենայի և մյուս անհրաժեշտ իրերի ապրել,— հայտարարել են նրանք,— ապա պետք է ամեն ինչ գնես ապառիկ, որովհետև մինչև փող հավաքես՝ կյանքդ կանցնի: Իսկ փող հավաքել հնարավոր է միայն, եթե քեզ ամեն ինչից զրկում ես»:

1965 թվականին, կարդում ենք ամերիկյան մամուլում, սպառողական վարկի գծով ամերիկացիների պարտքը 87,9 միլիարդ դոլար էր (1964 թվականի համեմատությամբ 12 տոկոսով ավելի), իսկ բնակարանային հիպոթեկային վարկի գծով՝ 202,2 միլիարդ, ընդամենը՝ 290,1 միլիարդ դոլար, 1966



digitised by A.R.A.R.@

թվականին ամերիկացի յուրաքանչյուր տղամարդու, կնոջ և երեխայի ընկնում
էր 6840 դոլար վարկային պարտք։ Ապահովագրական և խնայողական ասո-
ցիացիաների ազգային լիգան զգուշացնում է. «Վարկով չափից դուրս հրա-
պուրվելը համազգային վտանգ է դարձել։ Մարդիկ, անկախ իրենց եկամտի
չափի, այն տհաճ զգացմունքն ունեն, թե իրենք փողի գերի են դարձել»։
Սպառողներն ստիպված են պարտքերը մարելու համար մուծել հարկերի վճա-
րումից հետո մնացած իրենց եկամուտների 14 տոկոսից ավելին։

Սպառողական վարկը մոնոպոլիաներին հնարավորություն է ընձեռում ոչ
միայն ավելացնել ապրանքների վաճառքը, այլև ստանալ լրացուցիչ պատ-
կառելի շահույթ։ Ապրանքներն ապառիկ վաճառելով, կապիտալիստական
ֆիրմաները գներն ավելի բարձր են նշանակում, քան կանխիկ վաճառքի
դեպքում։ «Ֆորչուն» հանդեսի տվյալներով, ապառիկի դեպքում գնորդը հե-
ռուստացույցի համար վճարում է նրա գնից 34 տոկոս ավելի, սառնարանի
համար՝ 24, փոշեծծիչի համար՝ 22 տոկոս և այլն։

Վարկից օգտվելու համար գնորդից որպես տոկոս գանձվում է նաև
լրացուցիչ գումար։ Նոր ավտոմեքենայի համար՝ տարեկան 6—7 տոկոս, օգտա-
ծածված մեքենայի համար՝ 9—12, կենցաղային էլեկտրասարքերի համար՝
7—10 տոկոս և այլն։ Այսպիսով, ապագա սեփականատերը վճարում է բարձր
գին և վաշխառուական տոկոսներ։

«Միջին ամերիկացին,— գրում է ԳՖՀ-ի «Վելտ» բուրժուական թերթը,—
իրեր ձեռք բերելիս մի քանի տարով պարտքի տակ է ընկնում և, շահամոլու-
թյունից դրդված ուժասպառ լինում այն ձիու նման, որը քառատրոփ վազում
է իր քթի առջև կախված խրձի ետևից, չհասկանալով, որ իրականում իրեն
պարզապես ստիպում են ավելի արագ վազել»։

Ֆինն գրող Մարտի Լառնին մեծ արտահայտչականությամբ է նկարա-
գրում շարքային ամերիկացի Ջեկ Հարիսոնի ձախորդությունները, որը, հա-
վատալով ռեկլամին, վարկով ձեռք է բերում անհրաժեշտ ու ոչ-անհրաժեշտ
շատ իրեր, բայց, կորցնելով աշխատանքը, զրկվում է ամեն ինչից և ստիպ-
ված իրեն խեղդում է գազով՝ հարևանի խոհանոցում, որովհետև իր բնա-
կարանի գազը անջատված էր վարձը չվճարելու համար։ Հեռավոր ազգական-
ները նրան թաղում են վարկով, կանգնեցնելով շիրմաքար հետևյալ մակա-
գրությամբ. «Ջեկ Հարիսոն։ Մեռավ երիտասարդ և բախտավոր։ Թողեց ան-
մոռանալի հիշատակ՝ մի կույտ չվճարված հաշիվներ»։

Հարիսոնի նման աշխատավորը գուցե և կարողանում է զրկանքների
գնով ձեռք բերել մեկ-երկու բաժնետոմս, բայց մի՞թե դա իրավունք է
վերապահում փարիսեցիաբար պնդելու, թե «պրոլետարը որպես հասկացու-
թյուն առհասարակ անհետ չքացել է»։

Հետաքրքրական է համեմատել այն եկամուտները, որ ստանում են խո-
շոր ձեռնարկությունների բոլոր տերերը՝ մանր բաժնետերերը և ֆինանսական
կապիտալի մեծաքսակները։ Միչիգանի համալսարանի հետազոտական կենտ-
րոնի տվյալներով, 5 հազար դոլարից պակաս եկամուտ ունեցող ընտանիք-
ների 96 տոկոսը առհասարակ բաժնետոմս չունի, այդ կատեգորիայի ընտա-
նիքների 4 տոկոսն ունի միջին հաշվով 1—5 հազար դոլարի բաժնետոմս։ Այդ
բաժնետոմսերի շահութաբաժինները 25—125 դոլարից չեն անցնում, այ-
սինքն՝ կազմում են այդ ընտանիքի եկամտի 0,5—2,5 տոկոսը։ Մյուս ծայրում
գտնվում են 50 հազար դոլարից ավելի եկամուտ ունեցող 150 հազար
բաժնետեր, որոնց համար շահութաբաժինները, բաժնետոմսերի սպեկու-



լյացիայից ստացած շահույթի հետ միասին, կազմում են նրանց ընդհանուր
եկամտի 40 տոկոսից ավելին։ Այդ փոքր խմբի անդամներից յուրաքան-
չյուրն ստանում է 150—170 անգամ ավելի շահութաբաժին, քան 5 հազար
դոլարից պակաս եկամուտ ունեցող բաժնետերը։

Միանգամայն բնական է, որ «ժողովրդական կապիտալիստը» անմիջա-
կան մասնակցություն չունի բաժնետիրական ընկերության կառավարմանը։
Ամերիկայի բուրժուական տնտեսագետներից մեկն անկեղծ խոստովանում է.
«Շարքային բաժնետերը միշտ մեկուսացած է եղել խոշոր կորպորացիայի
գործերի արդյունավետ կառավարումից», «ժամանակակից մեծ ընկերության
ընտրական արարողությունն առավել խնամքով մշակված աչքակապություն-
ներից մեկն է»։

Աշխատավոր մարդու համար խսկական չարիք է բուժագնի արագ բարձ-
րացումը։ Եթե 1960 թվականին Նյու-Յորքի մասնավոր հիվանդանոցում հի-
վանդի տասնօրյա բուժումը 580 դոլար էր, ապա 1967 թվականին այն
հասնում էր 900 դոլարի։ Բրուկինգսի ինստիտուտի մասնագետները եկել են
այն եզրակացության, որ հեռու չէ այն օրը, երբ հիվանդանոցում անցկացրած
մեկ օրը կարժենա 100 դոլար։ Հիվանդանոցում ծննդաբերության սակագինը
700—800 դոլար է, կույր աղիքի վիրահատությանը՝ 600—700, ատամնաբույ-
ժի այցելությանը՝ 10 դոլար, երեխայի ակնալվացմանը՝ 92 դոլար և այլն։

Պրեզիդենտ Ջոնսոնը կոնգրեսին հղած «Երկրի դրության մասին» ուղեր-
ձում ստիպված էր խոստովանել, որ «բուժսպասարկման և հիվանդանոցնե-
րի բուժագինը բարձր է և շարունակում է աճել»։

Բարձր է և շարունակում է բարձրանալ նաև ուսման վճարը։ Ամերիկյան
հանդեսը բերում է մի դիագրամ, որից երևում է, թե ԱՄՆ-ի մասնավոր կո-
լեջների ուսման վճարը 1957 թ.՝ 1820 դոլար էր, 1967 թ.՝ 2570 դոլար։

Թանկ կյանքը կրճատում է ընտանիքի բյուջեն, ստիպում հրաժարվել
մյուս կենսական պահանջների բավարարումից, և աճող սերնդի նշանակալի
մասը չի կարողանում իրեն թույլ տալ այնպիսի «շռայլություն», ինչպիսին
կրթությունն է։ Այդ է վկայում «Կրթությունը ԱՄՆ-ում» պաշտոնական փաս-
տաթուղթը, որտեղ ասված է. Այժմ արտակարգ ընդունակ ուսանողներ ֆի-
նանսական նկատառումներով բուհեր ընդունվել կամ կրթությունը շարու-
նակել չեն կարող։ Վիճակն ավելի բարվոք չէ կապիտալիստական մյուս
երկրներում։ Տարրական դպրոցում երեխայի ուսուցման համար միջին ըն-
տանիքի ծախսերը Ճապոնիայում (լուսավորության մինիստրության տվյալ-
ներով), կազմում են տարեկան 13 հազար իեն, միջնակարգ դպրոցում
(6—9-րդ դասարաններ)՝ 17 հազար և բարձրագույն միջնակարգ դպրո-
ցում (10—12-րդ դասարաններ)՝ 41 հազար իեն։ Մասնավոր ինստիտուտնե-
րում կամ համալսարաններում ուսման վարձը տարեկան 250 հազար իենից
ավելի է, պետական բուհերում՝ 190 հազար։ Այսպիսով, բարձրագույն կր-
թություն ստանալու համար հարկավոր է ծախսել մոտ 1,5 միլիոն իեն։

Այս փաստերը վկայում են, որ կապիտալիստական երկրների աշխա-
տավորների ռեալ աշխատավարձը հնարավորություն չի ընձեռում գնելու մեծ
քանակությամբ բաժնետոմսեր։

Քննադատության չի դիմանում «եկամուտների մեջ կատարված հեղա-
փոխության» մասին հաճախ հոլովվող պնդումը, որը, հավաստիացնում է,
թե ստեղծվում է գույքային հավասարություն, չքանում աղքատությունը, մը-
նում է հարստությունը։ Ամերիկյան պրեզիդենտի նախկին տնտեսական խոր-



digitised by A.R.A.R.@

հըրդական Ա. Բեռնսը ուղղակի հայտարարել է, որ«ԱՄՆ-ի ազգային եկամուտի բաշխման ասպարեզում վերջին քսան տարվա ընթացքում տեղի ունեցած շրջադարձը թեպետ իրականացել է խաղաղ ճանապարհով և աստիճանաբար, պատմության մեջ հոյակապ սոցիալական հեղափոխություն է նշանավորում»։

Իսկական իրավիճակը, նոր տվյալները հերքո՞ւմ են արդյոք մարքսիստական թեզը՝ կապիտալիստական հասարակության մեջ բևեռացման անխուսափելիությունը, թե՞, ընդհակառակը։ Այս հարցին բուրժուական ջատագովական տեսությունները խուսափում են պատասխանել։

Դիմենք փաստերին։

ԱՄՆ-ում 1965 թվականի համար աշխատանքի դեպարտամենտի կազմած տիպային բյուջեի համաձայն, միջին բանվորը, որն ունի կին և երկու դպրոցահասակ երեխա, «համեստ ապրուստի» համար շաբաթական պետք է անպայման ունենա 123, իսկ տարեկան 6418 դոլար։ Այնինչ արդյունաբերական բանվորների միջին վաստակը հասել է շաբաթական 105 դոլարի, այսինքն՝ բյուջեից ցածր է 15 տոկոսով։ Այսպիսի ռեալ իրավիճակն է դրդում, որ բուրժուական աշխարհում ժամանակ առ ժամանակ արվեն անկեղծ խոստովանություններ։ «Մի ամբողջ սերունդ է կյանքից հեռացել այն պահից ի վեր, երբ Ֆրանկլին Դելանո Ռուզվելտը «նոր կուրս» հռչակեց,— կարդում ենք «Սատերդեյ իվնինգ պոստ» հանդեսում,— այնինչ հարուստների և աղքատների միջև ընկած անդունդը ավելի խոր է, քան 1930 թվականին։ Մեծահարուստ մարդկանց մեկ տոկոսը տիրում է ազգային հարստության մեծ մասին։ Մոտավորապես 30 միլիոն ամերիկացիներ շարունակում են ապրել խավարի ճիրաններում, որը պաշտոնապես անվանվում է «աղքատության եզր»։ Պրեզիդենտ Ջոնսոնը 1967 թվականի նոյեմբերի 30-ին ստիպված խոստովանել է. «Քսան միլիոն ամերիկացիներ խղճուկ գոյություն են քարշ տալիս քաղաքների հետնախորշերում...»։

ԱՄՆ-ում 1960—1966 թթ. կորպորացիաների շահույթները (հարկերից դուրս) աճել են 80 տոկոսով, իսկ բաժնետերերի շահութամասերը՝ 56։ Մշակող արդյունաբերության բանվորների միջին անվանական աշխատավարձն աճել է 25 տոկոսից պակաս, իսկ ռեալ աշխատավարձը՝ միայն 13 տոկոսով։

Անգլիայի կենտրոնական վիճակագրական վարչության հրատարակած «Ազգային եկամուտները և ծախսերը 1966 թվականին» հաշվետվությունը ցույց է տալիս, որ 1964 թվականին եկամուտներ ունեցած 27,5 միլիոն մարդուց մոտ 20-ը տարեկան ստացել են հազար ֆունտ ստեռլինգից պակաս, ընդ որում, 12 միլիոնը՝ նույնիսկ 600 ֆունտից պակաս։ «Հավասար հնարավորությունների հասարակության» սոցիալական սանդուղքի մյուս ծայրում քառասուն հազար «հաջողակներ» ստանում են տարեկան 10 հազար ֆունտ ստեռլինգից ավելի եկամուտ։ 1965 թ. վերջերին լույս տեսած Աղքատները և ընչազուրկները գրքի հեղինակները (անգլիացի պրոֆեսորներ Աբել-Սմիթը և Թաունսենդը) հաշվել են, որ Անգլիայում 7,5 միլիոն մարդ կարիքավոր է կամ աղքատ։ Դա երկրի բնակչության 14,2 տոկոսն է։

Ըստ պաշտոնական տվյալների, ԳՖՀ-ի բանվորի կամ ծառայողի 4 հոգուց բաղկացած ընտանիքի բյուջեն 1962 թվականին պետք է հասներ ամսական 792 մարկի, սակայն այդպիսի ընտանիքների 62 տոկոսի եկամուտն այդ մակարդակից ցածր էր։ Արևմտյան Գերմանիայում 11.663 միլիոնատեր ունեն 37,7 միլիարդ մարկ գումարի գույք և կուտակումներ, այնինչ 20



միլիոն բանվոր ու ծառայող՝ միայն 4,5 միլիարդ։

ԳՖՀ-ի բնակչության 20 տոկոսին ընկնում է ազգային հարստության 90 տոկոսը, իսկ մնացած 80 տոկոսին՝ միայն 10-ը։ Ֆրանսիայում 1965 թ. բանվորների մոտավորապես 66 տոկոսն ստանում էր ապրուստի մինիմումից (մեկ մարդու համար ամսական 521,3 ֆրանկից) պակաս աշխատավարձ։

Չնայած այս ամենին, բուրժուազիային սպասարկու տեսաբանները, աղավաղելով փաստերը, ապարդյուն ջանում են ծածկել կապիտալիզմի մերկությունը։ «Ռեալ փաստերը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIII համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— հօդս են ցնդեցնում, այսպես կոչված՝ «ժողովրդական կապիտալիզմի», «համընդհանուր բարօրության պետության» մասին խաբեբայական առասպելները, որ տարածում են բուրժուական գաղափարախոսները»։

Մի բուռ մարդկանց ուռճացած հարստությունը, որ կիտվել է աշխատավորների անգութ շահագործմամբ, ցայտուն դրսևորվում է մեծահարուստների շռայլ ապրելակերպի մեջ։ Հասարակական արժեքները շռայլելն ու վատնելը, պորտաբույծ կյանքը վկայում են այդ դասակարգի նեխման հակումները։ Այսպես, երբ շների կոսմետիկական կաբինետի սեփականատեր էն Սեյմորը ամուսնանում էր սըր էքտոն Ջիլքեստերի հետ, կազմակերպեց երկու ձոխ ճաշկերույթ։ Այդ մասին երկար ժամանակ խոսում էին Լոնդոնում։ Մի ճաշկերույթը հարսանիք հրավիրվածների համար էր, մյուսը՝ շների։ Խրախճանքի չորքոտանի մասնակիցներն ստացան տապակած միս, հավի ոսկոր և մեկական բաժակ շամպայն։ Շների ճաշկերույթը, մեկ շնչի հաշվով, ավելի թանկ նստեց, քան հարսանեկան հանդեսի յուրաքանչյուր մասնակցինը։

Վերջերս Պերուի հեռուստատեսությունը հաղորդեց, որ Լիմայում բացվել է «Շների ամուսնության ինստիտուտ»։ Միաժամանակ թերթում հայտարարություն զետեղվեց, որով նույն ինստիտուտի հիմնադիրները նշում էին, թե իրենց նպատակն է բարելավել «շների ռասայական զտարյունությունը», որ ապագայում ինստիտուտում «ազնվացեղ շների ամուսնությունները կձևակերպվեն ճիշտ այնպես, ինչպես մարդկանցը. ամուսնության արձանագրությունը կստորագրվի երկու վկաների ներկայությամբ»։ Ստեղծվեց նաև շների «անտեսանելի շղթայի ակումբ» («շղթան չպետք է վիրավորի մեր չորքոտանի բարեկամի արժանապատվությունը»), և սկսվեց «ազնվացեղ շների շքեղ գերեզմանատան» շինարարությունը։

Հարուստները չեն զլանում փողեր ծախսել նաև ուրիշ կենդանիների համար։ Դոկտոր Վիլյամ Գրիերն իր ամբողջ կարողությունը՝ 416 հազար դոլար, կտակեց չորս կատուների։ Կատուների մահից հետո ամբողջ ժառանգությունը պետք է անցնի Ջորջ Վաշինգտոնի համալսարանի տնօրինությանը։ Սակայն, կատուների քաջառողջությունը խանգարում է դրան։ Կատուների համար Լոս-Անջելոսում նոր ծննդատուն է բացվել։ Չորքոտանի կլիենտներին (իհարկե, փողը վճարելուց հետո) սպասում են առանձին խցիկներ կոնդիցիոն օդով, փափուկ անկողին, հեռուստացույց և հոգատար սպասարկում։

Տեխասցի բարոն Մերչիսոնի դուստրերից մեկը՝ Լյուպի Մերչիսոնը, ինչպես պատմում է «Լուկ» հանդեսը, «Երբեք չի գնում միայն մեկ զույգ կոշիկ. առնվազն՝ վեց զույգ։ Երբ Լյուպին մեկնում է իր հեռավոր կալվածքները, նա ընտրում է հոր երեք ինքնաթիռներից մեկը և վայրէջք կատարում իր սեփական դաշտում։ Բազմազանություն՝ ահա այն հաճույքներից մեկը, որ



digitised by A.R.A.R.@

Մերչիսոններին տալիս է նրանց հարստությունը։ Եթե Լյուպին ցանկանում է փոխել իր միջավայրը, նա կարող է Դալասից ինքնաթիռով մեկնել իրենց սեփական կղզին, որը գտնվում է Տեմպիկի (Մեքսիկա) մոտակայքում։ Դահուկներով զբոսնելու համար նա կարող է մեկնել Շվեյցարիա կամ Կալիֆոռնիայի նահանգի Սկվո-Վելի, որտեղ ձմեռային օլիմպիական խաղերին ներկա լինելու համար սեփական տուն ունի։ Նա կարող է ԱՄՆ-ի քսան նահանգներում, Կանադայում կամ Պերուում այցելել այն ձեռնարկությունները, ուր ներդրված են ընտանիքի կապիտալները»։

Արևմտագերմանական մամուլը հաղորդել է իր հերթական սենսացիան։ Բարոն Տիսենը մտադիր է չորրորդ անգամ ամուսնանալ։ Իր երկրորդ կնոջ հետ տասը ամիս ապրելուց հետո Տիսենը նրան վճարել է ավելի քան չորս միլիոնի կարողություն (երկու հարյուր հիսուն հազար կանխիկ դրամով, 54 կգ զուտ ոսկի և մեկ վիլլա Ֆրանսիայում)։ Կնոջն են մնացել նաև հարսանեկան նվերները, ոսկե լծակներով երկու սպորտային ավտոմեքենա, սեփական ինքնաթիռ, մարմարե դղյակ՝ Կարիբյան ծովի կղզիներից մեկում, երկու ընձառյուծ, սև հովազ, մեկ տասնյակ շներ, երկու խոսող թութակ... Երրորդ կնոջից բաժանվելը Տիսենին ավելի էժան է նստել—մեկ միլիոն դոլարից փոքր-ինչ ավելի։

«...24-ամյա Հենրի Տիսենը՝ կոնցեռնի ժառանգորդը, իր սիրուհիներից մեկին նվիրել է ալմաստե մատանի՝ 20 հազար ֆունտ ստեռլինգ արժողությամբ, չորս մարգարիտներով զարդարված մանյակ՝ 10 հազար ֆունտ արժողությամբ, 2 ավտոմոբիլ՝ ոսկեգիր մակագրություններով և ոսկե բանալիներով, աշխարհի բոլոր օդային ուղիների համար մշտական տոմս, մեկ կղզի Կարիբյան ծովում և մի սև հովազ»։

Ցունաբարա ճապոնական շքեղ առողջարանում դրված է ոսկուց պատրաստված մի լողարան։ «Դեղին սատանայի» երկու հարյուր հազար երկրպագուներ անցած երեք տարում վայելել են այն՝ ամեն անգամ վճարելով 5 հազար իեն։

Այս փաստերը կրկին հաստատում են, որ բուրժուազիայի փաստաբանների բարբաջանքները ռեալ հող չունեն։ Կապիտալիզմը, Մարքսից հետո, իհարկե, փոխվել է, բայց ոչ այն ուղղությամբ, ինչ ցանկանում են ապացուցել նրա պաշտպանները, այլ հակասությունների, առաջին հերթին, արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի հակասության ուժեղացման ուղղությամբ։ Այդ բանը խոստովանում են բուրժուական աշխարհի որոշ ողջամիտ գործիչներ։ Վաշինգտոնում մի քանի տարի մնալուց հետո հայտնի ժուռնալիստ Տիլո Կոխը Մյունխեն «Ռեյու» պարբերականում գրել է. «Ցավոք սրտի, ամենավերջին վիճակագրական տվյալները ևս մատնացույց չեն անում այնպիսի երևույթներ, որոնք հաստատեին համազգային հարստության ավելի արդարացի բաշխումը»։ Մորիս Դյուվերժեն, «Մոնդ» թերթում արձանագրելով, որ կապիտալիստական երկրներում հասարակական անհավասարությունը շատ մեծ է, իսկ ՍՍՀՄ-ում ռեալ եկամուտների սանդուղքն ավելի քիչ աստիճաններ ունի, եզրակացնում է՝ «Արևմուտքում դասակարգային անհավասարությունը չի վերացել»։

Համամիտ լինելով այդ տեսակետին, հարկ է ավելացնել, որ դասակարգային անհավասարությունը Արևմուտքում չի վերացել և չի վերանա, քանի դեռ այնտեղ գերիշխում է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։

# ԱԶԳԱՅԻՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՎԵՍՏՈՒՄ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.

Ժողովուրդների կուլտուրական կյանքում ազգային ինքնագիտակցության հարցը տեսական ու պրակտիկ հետաքրքրություն է ներկայացնում։ Վերջին տասնամյակում սոցիալական այս կարևոր պրոբլեմի շուրջ ստեղծվել է ծանրակշիռ գրականություն։ Մամուլում ու բանավեճերում դրսևորվում են ներհակություններ ազգայինի և միջազգայինի փոխհարաբերության, ազգայինի ժամանակակից հատկանիշների բնութագրման հարցերի ոլորտում։ Տարակարծության հիմնական առարկան արվեստն է, որում ազգային ատաղձն էական տեղ է գրավում։

Արվեստի ստեղծագործության ազգային ակունքների և նրա բազմապիսի դրսևորումների նկատմամբ եղած հետաքրքրությունը բացատրվում է ո՛չ միայն նրանով, որ աշխարհի բազում ժողովուրդներ զարթոնք են ապրում, այլ այն հանգամանքով, որ մշակութային կյանքում կենսական նշանակություն ունեն այժմ միջազգային ճանաչում գտած արժեքների արմատավորումն ու յուրացումը, նրանց ազդեցությունն ու փոխհարաբերությունն ազգային ավանդույթների ժառանգության ասպեկտով։ Այս առումով տեղին է նշել, որ դեռևս չի հաղթահարված բուրժուա-կոսմոպոլիտական այն մտայնությունը, երբ ազգայինի դրոշմը որակվում է որպես հետադիմության ու պահպանողականության արտահայտություն, նորը բացառելու միտում։

Հայտնի է, որ գեղարվեստական ավանդները խոշոր դեր են խաղում, մերթ կանխորոշում նորարարական մղումների դրսևորման եղանակը, ավանդական գույներով ու երանգներով հարստացնում եղած հնարքները, ուժեղացնում գեղարվեստական կերպարի ներգործությունը։ Ժամանակակից արվեստը օրինական ժառանգն է մարդկության երբևէ կերտած գեղարվեստական արժեքների։ Դրա պատմությունն աներկբայորեն վկայում է, որ բոլոր ժամանակներում իսկական արվեստը նորարարական է եղել և ավանդական։ Դժվար է գտնել իսկական արվեստի գեթ մի նմուշ, որը կապված չլինի հարազատ միջավայրին, չարձագանքի սեփական ժողովրդի հոգեկան ապրումներին։ Եթե ինքնատիպության բացակայությունը մահ է արվեստագետի համար, ապա ապազգային արվեստագետ գոյություն չունի։ Իրականության գեղարվեստական ընկալումն ու ճանաչումը զերծ չեն ազգային մերանից։ Գեղարվեստի որքա՜ն մեծություններ համամարդկային ճանաչման են հասել, կամրջելով ազգայինը միջազգայինի հետ։ Համամարդկային թեմաներն ան-



digitised by A.R.A.R.@

արյան խրտվիլակների կվերածվեին, եթե կապված չլինեին այս կամ այն ժողովրդի կյանքին, չմարմնավորեին որոշակի ազգային կերպարներ և հոգեբանական տիպեր։ Ի դեպ, տակավին Հեգելն է նկատել, որ Շեքսպիրը կարողացավ ամենաայլազան սյուժեների վրա դրոշմել անգլիական ազգային նկարագիրը, թեև միաժամանակ կարողացավ իսպանական դրամատուրգներից առավել խոր և հիմնական, էական գծերով պահպանել օտար ժողովուրդների, օրինակ, հռոմեացիների, պատմական նկարագիրը (տե՛ս Гегель, Соч. т. XII, 1938, стр. 282)։

Արվեստագետի ինքնատիպությունն անբացատրելի, խորհրդավոր երևույթ չէ։ Այն ճանաչելի է, խարսխված մի շարք պատմական ու սոցիալ-հոգեբանական գործոնների վրա, որոնց համակցությունն ազգի նկարագիրն է։ Անգամ այլազգի թեմաներով ստեղծված գործերում հեշտ է նշմարել արվեստագետի ազգային խառնվածքը։ Դա հասկանալի է, քանի որ արվեստագետը դիմում է այնպիսի թեմաների, որոնք հարազատ են, առաջին հերթին՝ իր ժողովրդին։ Օրինակ, ազատության թեման տվյալ ժամանակահատվածում հոգեհուզիչ է այն ժողովրդի համար, որը պայքարի է ելել՝ թոթափելու գաղութատիրության լուծը։

Ազգային հատկանիշը բովանդակում է համամարդկային գծերի այնպիսի երանգներ, որոնք պատմականորեն հատուկ են տվյալ ազգին։ Օտարության, հայրենի օջախից հեռանալու, աշխարհի տարբեր երկրներում հանգրվան գտնելու զգացումը շատ ժողովուրդներ խոր հուզականությամբ չեն ընկալում, որովհետև անմիջապես իրենց մաշկի վրա չեն զգացել օտար միջավայրի անբարյացակամ մթնոլորտը, ուրիշի հողում սեփական մշակույթը պահպանելու և զարգացնելու նվիրական ձգտումը։ Շատ չեն այն ազգերը, որոնց բառապաշարում կա սփյուռք հասկացությունը։ Մեր օրերում առանձին արվեստագետներ ժամանակակից երևալու համար խորշում են ավանդական կերպարների համեմատություններից, խախտում տաղաչափության սկզբունքները, հրաժարվում մեղեդուց, սահմանափակում արտահայտչամիջոցների ներկապնակը։

Ազդեցությունից ու փոխազդեցությունից դուրս արվեստ գոյություն չունի։ Բոլոր արվեստագետները ժամանակին աշակերտել են հեղինակավոր վարպետների, որոշ ժամանակ ընդօրինակել նրանց գրելաձևը։ Սա անխուսափելի երևույթ է և բնորոշ բոլոր ժամանակներին։ Ազդեցությունը մեկուսի գործողություն չէ, այն պայմանավորվում է որոշակի օբյեկտիվ գործոններով, որոնց անտեսելն անհնար է։ Ինչպես ամեն սերունդ շարունակում է նախորդների թողած գործը, այնպես էլ արվեստագետը ելնում է ստեղծված արժեքներից, գտնում իր տեղն ու ձայնը արվեստի աշխարհում։ Ազգայինը ևս քարացած արժեք չէ. այն նույնպես զարգանում է, կերպարանափոխվում, հարստանում։ Զտարյուն և թորված ազգային արվեստի հատկանիշներ չկան։ Դրանք բոլորն այս կամ այն չափով բովանդակում են համամարդկային արժեքներ։

Ազգայինը հիմնականում մարմնավորվում է հասարակական երևույթների յուրօրինակ դրսևորումներում, իրականությունն ընկալելու առանձնահատկություններում։ Խորանալով բուն ազգայինի ստեղծման ու ձևավորման նախապատմության մեջ, կտեսնենք, որ դա համամարդկային արժեքների դրսևորման յուրահատուկ ձևերից մեկն է։ Հետաքրքրությունն անցյալի արվեստի



հանդեպ, որոշակի սյուժեների, արտահայտչամիջոցների օգտագործումը նպատակային և արդյունավետ են դառնում միայն այն դեպքում, երբ հին ձևերում հնարավոր է լինում զետեղել նոր բովանդակություն։ Առնո Բաբաջանյանի դաշնամուրային «Վեց պատկերը» աչքի է ընկնում արտահայտչաձևերի արտակարգ բազմազանությամբ, կոմպոզիցիոն կուռ կառուցվածքով։ Այս նորարարական գործում ազգային երաժշտական ավանդույթները պատշաճ տեղ են գրավում։ Սակայն, չի կարելի պայմանական ազգային երանգներն ընդունել և հրամցնել իբրև երաժշտության ազգային էություն, եթե արտահայտչամիջոցները, երաժշտական գաղափարները համամարդկային չեն։

Ստեղծագործությունը, որքան էլ կոլորիտային թվա, չի ապրի, եթե նրա ինքնատիպությունը կարծեցյալ է, ավանդույթներն ուռճացված։ Երվանդ Քոչարի «Սասունցի Դավիթը» մեր դարի լավագույն քանդակներից է։ Տաղանդավոր արվեստագետն ստեղծել է ժամանակակից ազգային կերպար, ամփոփելով նրա մեջ մեր օրերի քանդակագործության համաշխարհային նվաճումները։ Արձանի վեհությունը, նրա ներքին դինամիկան, հուզականությունը զուգակցվում են ուժի և հզորության, արիության, հերոսության և ինքնազոհության, պայքարի ու հաղթանակի մղումներին։

Սովորաբար ազգայինի բնույթը վերլուծելիս որոշ հետազոտողներ հիմնականում վկայակոչում են անցյալի արժեքները և չափանիշ ընդունում նախորդ սերունդների կոթողները։ Բայց դա հաճախ ճիշտ չէ։ Երևանը երբեք այնքան ազգային չի եղել, որքան սովետական կարգերի օրոք։ Եվ բնական է, որ այժմ մեր ճարտարապետները մտահոգված են կառույցներին հաղորդել ժամանակակից ազգային բնույթ։ Պետք է ասել, որ դա նրանց հաջողվում է։ Պ. Սևակի «Անլռելի զանգակատունը», Գ. Խանջյանի քնարական նկարազարդումներով հանդերձ, ազգայինի ու համամարդկայինի սերտաճման մի հոյակապ նմուշ է։

Ազգայինը զարգացող պրոցես է, որում առաջ են գալիս նոր կերպարներ, գեղագիտական ընդհանրացումներ, միջավայրը գեղեցկացնող խոր գույներ։ Ժամանակակից ազգային կերպարը բովանդակում է միջազգային, համամարդկային արժեքներ։ Մեր հինավուրց լեռնաշխարհի տնտեսական ու մշակույթի շառավիղներն անցնում են հողագնդի բոլոր միջօրեականներով։ Գտնվելով սոցիալիստական ազգերի սերտ համագործակցության մեջ, հայ ժողովուրդը մեծապես ընդլայնել է իր գործունեության ոլորտներն ու մտահորիզոնը, աշխարհի հետ մայրենի լեզվով խոսելու հնարավորությունները։

Ազգային վերածնունդ ապրող ժողովրդի արվեստը կոչված է մարմնավորելու այն նորը, որն ստեղծվել է սոցիալիստական հանրակարգի շնորհիվ և, առաջին հերթին, կերտելու ազատագրված ու վերածնված հայ մարդու ամբողջական կերպարը։ Սովետահայ մարդու հոգեբանական խառնվածքն այսօր հարստացել է նոր գծերով։ Նրա ներաշխարհում ծնվել են կենսահաստատ զգացումներ, ստեղծագործելու, խիզախելու նոր տենչեր։ Սովետահայ մարդը մեծ տերության ներկայացուցիչն է, օժտված աշխարհազգացողության լայն մասշտաբներով, իր մեջ զուգակցելով ազգայինը և միջազգայինը, հանրապետականը և միութենականը։ Այս բոլորի ստեղծագործական յուրացումը նպաստում է ազգայինի, ժամանակակից գեղարվեստական կերպարի ստեղծմանը։



digitised by A.R.A.R.@

***

Ազգայինը ձևական պիտակ չէ և ոչ հասարակական միջավայրից կտրված անիմանալի, ինքնամփոփ երևույթ։ Ազգայինը, առաջին հերթին, սոցիալ-էթնիկական հանրության ապրելակերպի նկարագիրն է, հասարակական ընդհանուր օրինաչափությունների յուրօրինակ արտահայտությունը։

Հասարակական գիտակցության ոչ մի ձևում ազգայինն այնքան վառ ու տպավորիչ հանդես չի գալիս, որքան արվեստում։ Աշխարհագրությունից անիմաց մարդը արվեստի միջոցով ծանոթանում է ազգերի ու ժողովուրդների հետ։ Ճիշտ է նկատել Սիլվա Կապուտիկյանը «Քարավանները դեռ քայլում են» ուշագրավ գրքում, որ առաջին անգամ լինելով Փարիզում, օտարություն չի զգացել, ընդհակառակը, ուրախացել է, երբ քայլել է գրքերից ծանոթ փողոցներով, դիտել ճարտարապետական կոթողները։

Բուրժուական սոցիոլոգները հասարակական երևույթներն ուսումնասիրելիս բազմիցս անդրադարձել են ազգի հոգեբանության ու բնավորության էության պարզաբանմանը։ Ազգը, նրանց պատկերացմամբ, հավերժ, վերպատմական երևույթ է, որն իբր բնորոշվում է «ազգային ոգու» անփոփոխ հատկություններով։ Կտրելով ազգը ռեալ իրականությունից, բուրժուական սոցիոլոգները սոցիալական հանրության էական ձևին վերագրում են միստիկական, գերբնական գծեր։ Բուրժուական գրականության մեջ հոլովվող «ազգային ոգի», «ազգային բնավորություն» հասկացությունները հեռու են գիտությունից ու ռեալ իրականությունից։

Ազգային յուրահատկության, ազգային բնավորության պրոբլեմատիկան ուսումնասիրող գրականության մեջ մինչև օրս լրիվ չի հաղթահարված վերացականությունը, չի տրված այդ կատեգորիաների բովանդակության զարգացման դիալեկտիկան։ Նկարիչների անհատական ցուցահանդեսներին նվիրված առանձին գրախոսականներում, բանավոր ելույթներում ազգային յուրահատկության հարցն արծարծելիս հանդիպում ենք պարզունակ ու սնամեջ մեկնաբանությունների, երբ ազգային առանձնահատկությունը դիտվում է լոկ աշխարհագրական միջավայրի, կենցաղային մանրամասների անմիջական արտացոլման մեջ։

Մարքս-լենինյան իմացության տեսությունից հայտնի է, որ հասարակական պատմական առանձնահատկությունները, աշխարհագրական միջավայրը նախ արտացոլվում են ազգի հոգեկան կերտվածքում, իսկ այնտեղից դրսևորվում արվեստում։ Արվեստագետը պատկերում է բնությունը, կյանքը ոչ թե ընդհանրապես, այլ այն ասպեկտով, ինչ հուզում է ժողովրդին, հասարակությանը՝ ժամանակի կոնկրետ հատվածում։ Արվեստի ստեղծագործության մեջ իրականությունը միջնորդավորված է արտացոլվում։ Արվեստում կյանքի մասին խոսվում է ոչ թե առհասարակ, այլ կոնկրետ։ Շնորհիվ արվեստի ստեղծագործությունների անմիջական ընկալման, մենք ճանաչում ենք ո՛չ միայն յուրաքանչյուր տվյալ ժողովրդի ապրելակերպը, պատմությունը, այլև էսթետիկորեն ընկալում նրա ներաշխարհը, հոգեկան կերտվածքը, տեմպերամենտը։ Դասական արվեստի ստեղծագործություններով ընթերցողը, ունկնդիրը, հանդիսատեսը հաղորդակից են դառնում տվյալ ժողովրդի կյանքին, կենցաղին, ազգային հոգեկան խառնվածքին։

Ազգային յուրահատկությունները պայմանավորվում են տվյալ ժողովրդի սոցիալ-պատմական, տնտեսական ու բնական գործոններով։ Ազգի հասա-



րակական գոյաձևը և բնական-նյութական պայմանները որոշակի ներգործություն են ունենում արվեստի վրա։ Ինչպիսի գեղարվեստական ստեղծագործություն էլ վերցնենք, կնկատենք որոշակի հատկանիշներ, որոնք հատուկ են տվյալ ազգին և տարբերվում են մյուս ժողովուրդների հատկանիշներից թեև սա չի բացառում տարբեր ազգերի մի շարք հատկանիշների նմանությունը զարգացման որևէ էտապում։ Կարելի՞ է արդյոք ռուսական մեղմ, սրտահույզ ու շոյող, բազմաձայն երգը շփոթել արևելյան մեղեդու հետ։ Չէ՛ որ դրանք տարբերվում են ոչ միայն մեղեդայնությամբ, այլև կատարմամբ։ Երաժշտությունը, շնորհիվ մարդկային ներաշխարհի, զգացումների և ապրումների արտահայտման ինքնատիպ հնարավորությունների, կարողանում է գեղարվեստական իրականության վերածել ժողովրդի հոգեկան խառնվածքի երանգները, բնորոշ գծերը։ Ազգի երաժշտական մտածողության առանձնահատկությունները մեղեդային կարգում դրսևորվում են ամբողջովին և ընդգծված ձևով։ Մեղեդու մեջ ի հայտ է գալիս երաժշտության ազգային յուրահատկությունը։ Ազգային յուրօրինակությունը գեղարվեստում արտահայտում ու արտացոլում է ազգային բնորոշը, որը հատուկ է տվյալ ժողովրդին։

Արվեստագետն ընկալում է ազգային առանձնահատկությունը ո՛չ միայն անմիջական, ապրելով ազգային հանրության որոշակի պայմաններում, այլև ավելի բարդ, միջնորդավորված եղանակով, ուրիշ ժողովրդի հոգևոր մշակույթը յուրացնելիս։ Գլինկան, Չայկովսկին, Սպենդիարյանը իրենց մի շարք ստեղծագործություններում օգտագործելով այլազգի մոտիվներ, հարստացրել են սեփական ժողովրդի գեղարվեստը նոր երանգներով ու տարրերով։ Այս և նման ուրիշ օրինակներ ցույց են տալիս, որ արվեստի ազգային բընույթի համար հիմք են ծառայում ո՛չ միայն աշխարհագրական միջավայրը, կենցաղը, ժողովրդի նիստուկացը։ Հասարակական-պատմական, ինչպես նաև աշխարհագրական միջավայրն սկզբում արտացոլվում է ազգի հոգեկան կերտվածքի մեջ, այնուհետև արվեստի առանձնահատկություններում։ Շրջապատող բնությունը արվեստագետը պատկերում է ոչ թե որպես «օբյեկտիվ ռեալություն», ոչ թե վերարտադրում է «առհասարակ», այլ այն, ինչ սիրելի ու մոտ է դարձել ժողովրդին։

Ազգային հատկանիշից զուրկ ստեղծագործությունը զուրկ է և՛ ինքնատիպությունից, և՛ էսթետիկական ներգործությունից։ Տեղ-տեղ բարձրաձայն արտահայտվում են, թե իբր ազգային հատկանիշներն արգելակում են համամարդկային մշակույթի ձևավորմանը և պահպանողականության նախապայմանն են արվեստում։ Բուրժուական ֆորմալիստական արվեստագիտության ներկայացուցիչներից Գ. Վյոլֆլինը ազգային ձևը դիտում էր ոչ թե որպես պատմական կատեգորիա՝ սերտորեն կապված ազգային զարգացման, նրանում տեղի ունեցող փոփոխությունների հետ, այլ ինչ-որ ունիվերսալ կաղապար, ինչ-որ ազգային ոգի, հեռու արտաքին ու ներքին ազդեցություններից։ Վյոլֆլինի կարծիքով, ազգային զգացմունքի ձևը «համահարթող» գործոն է, ամփոփված ինքն իր մեջ, և ոչ մշակույթի անկապտելի էությունը։ Ըստ նրա, գեղարվեստական-գեղագիտական սկզբունքը ավտոնոմ է, ձևի ազգային զգացումը՝ ստատիկ, անփոփոխ, բոլոր ժամանակներում օժտված նույն հատկանիշներով։ Վյոլֆլինի համոզմամբ ազգային ձև հասկացությունը ներառնում է ոչ թե պատմական և այլ բնույթի բազում գործոններ, այլ բխում է ինչ-որ հատուկ աշխարհզգացումից, որն առավելապես ծագել է բնական պայման-



digitised by A.R.A.R.@

ներից (Г. Вельфлин—Искусство Италии и Германии эпохи Ренессанса)։ Բենեդետո Կրոչեն «Էսթետիկան, որպես արտահայտման գիտություն և որպես ընդհանուր լեզվաբանություն» գրքում նշում էր. «...ամեն բովանդակություն տարբերվում է մյուսներից, քանի որ կյանքում ոչինչ չի կրկնվում, իսկ այդպիսի բովանդակությունների մշտական փոփոխմանը համընկնում են իրար չհամընկնող արտահայտչական ուրիշ բազմաձևեր, տպավորությունների էսթետիկական սինթեզներ (Б. Кроче—Эстетика как наука о выражении и как общая лингвистика, стр. 77, М., 1920 г.)։ Այն, ինչ սկզբում գեղագիտական ձևում մշակման է ենթարկվել, հետագայում կարելի է մշակել տրամաբանորեն, բայց այն, ինչ ստացել է իր գեղագիտական ձևը, չի կարելի նույնացնել մեկ ուրիշ գեղագիտական ձևի։ Այստեղից նա գալիս է հետևյալ եզրակացության, որ գեղագիտական ձևերը գոյություն ունեն լոկ այն լեզվով, որ լեզվով նրանք ստեղծված են։ Կրոչեի կարծիքով գեղարվեստական գրականության ստեղծագործություններն անթարգմանելի են և անհասկանալի այլազգի ժողովուրդների համար, ինքնազնահատող արժեքներ են և չեն հարաբերակցվում ուրիշ ազգային կուլտուրաների ձևերին (նույն տեղը)։

Գիտությունից ու տրամաբանությունից հեռու այս դատողություններում չկա ճշմարտության և ոչ մի նշույլ։ Կրոչեն մոռանում է, որ արվեստն արտացոլում է ժողովրդի ազգային բնավորությունը ոչ թե ժամանակից ու տարածությունից դուրս, այլ հասարակության զարգացման կոնկրետ ժամանակահատվածում։ Չնայած իր հարաբերական կայունությանը, ազգային բնավորությունը ենթակա է փոփոխման, որն, առաջին հերթին, տեղի է ունենում հասարակության նյութական կյանքում։ Ահա թե ինչու, մի կողմից՝ հարկավոր է հաշվի առնել հոգեկան կերտվածքի յուրահատուկ գծերի հաջորդականությունը տվյալ ժողովրդի կյանքում, մշակույթում, արվեստում և, մյուս կողմից՝ տեսնել նորը, որն առաջանում է ազգային բնավորության, ազգի հասարակական կեցության մեջ կատարված փոփոխությունների շնորհիվ։

Հայտնի է, որ բոլոր ազգերի աշխատավորության արմատական շահերը և նպատակները հանուն սոցիալական առաջադիմության՝ շահագործողների դեմ մղվող պայքարում ընդհանուր են և ունեն ինտերնացիոնալ բնույթ։ Սակայն, ինտերնացիոնալիստականը տարբեր ժողովուրդների մոտ դրսևորվում է յուրովի։ Դեռևս XIX դարում ազգայինի և համամարդկայինի, նրանց փոխհարաբերակցության ու սահմանների հարցը մեծ կարևորություն ստացավ։ Ճնշող ազգերի ջատագովները համամարդկային կուլտուրայի դրոշի տակ ժխտում էին ազգայինն ու ժողովրդականը, դրանք համարելով խոչընդոտներ ժողովուրդների միասնության և «ներդաշնակ ձուլման» ուղիներում։ Քննադատ Վ. Մայկովը Ա. Կոլցովի ստեղծագործությանը նվիրված հոդվածում հակադրում էր ազգայինը և համամարդկայինը։ Նա համոզված էր, թե ազգային մոմենտը գրականության մեջ, հավատարմությունն ազգային տրադիցիաներին, պատմությանը, ինքնագիտակցությանը, նեղացնում են գրողի մտահորիզոնը։

Մայկովի հայացքները սուր քննադատեց Բելինսկին։ Նա ասում էր. «Ազգային որոշակիությունը, ազգային ինքնատիպությունը միակ ուղին են դեպի համամարդկայինը։ Համամարդկայինը գոյություն ունի ազգայինի միջոցով և նրա շնորհիվ է ձեռք բերում այդ համընդհանուր ճանաչումը։ Մեծ բանաստեղծի համար չկա ավելի մեծ պատիվ, քան լինել վերին աստիճանի ազգային, որովհետև այլապես նա այդպիսին չէր լինի։ Առանց ազգության



մարդկությունը կլիներ մեռած տրամաբանական աբստրակտ, մի խոսքով առանց բովանդակության, հնչյուն՝ առանց նշանակության» (Полн. собр. соч.. том. 10, 1956, стр. 32)։

Ընդհանրապես և բոլոր դեպքերում արվեստի ստեղծագործությունը ծնվում է պատմական կոնկրետ պայմաններում։ Իր դերով լինելով ճանաչողության և իրականության վերափոխման միջոց, արվեստն արտացոլում է ժողովրդի խոհերն ու ձգտումները, հոգևոր աշխարհը, կենսապայմանները։ արթնացնում արդարության ու գեղեցկի զգացում։ Ժողովրդի կյանքի էական կողմերի արտացոլումից դուրս արվեստ գոյություն չունի։ Տիպականն արվեստում չի կարող ապազգային լինել։ Գեղարվեստական ճշմարտացիությունը, որպես անհրաժեշտ պայման՝ ենթադրում է ազգային բնավորության արտացոլում՝ նրա սոցիալական կյանքի տիպական իրավիճակում, կենցաղում և այլուր։ Բավական է համեմատել սովետական գրողներ Մ. Շոլոխովի «Հերկած խոպան», Ն. Զարյանի «Հացավան», Լ. Քիաչելու «Գվադի Բիգվա», Ա. Սաքսեի «Դեպի լեռը» ստեղծագործությունները, որտեղ պատկերված են գյուղի կոլեկտիվացման պրոցեսը և գյուղացիների գիտակցության, հոգեբանության, զգացումների վերափոխումը նոր կյանքի ազդեցությամբ՝ Դոնում, Հայաստանում, Վրաստանում և Լատվիայում։

Ի հակադրություն բուրժուական արվեստագիտության ու գեղագիտության, որտեղ իշխում է արվեստի ազգային առանձնահատկությունների բացարձակացման տենդենցը, մարքս-լենինյան էսթետիկան ուսումնասիրում է ազգայինի և ինտերնացիոնալիստականի փոխհարաբերության դիալեկտիկան։

Առանձին հեղինակներ ազգայինի և ինտերնացիոնալիստականի հարաբերակցությունն արվեստում նմանեցնում են բովանդակության ու ձևի կատեգորիաների փոխհարաբերության հետ (փիլիսոփայության մեջ)։ Ընդհանուրի—առանձնահատուկի—մասնակիի կատեգորիաները, անշուշտ, օգնում են բացահայտելու լուսաբանվող պրոբլեմի որոշ կողմեր։ Միևնույն ժամանակ մեթոդոլոգիապես սխալ կլիներ ուսումնասիրությունը սահմանափակել արվեստի ոլորտում տվյալ կատեգորիաների տարածմամբ։ Ազգայինը և ինտերնացիոնալիստականը վերացական ընդհանրություն չեն, այլ պատմական կոնկրետ սոցիալ-դասակարգային երևույթներ։ Բոլոր ազգերի համար ինտերնացիոնալիստականի տակ միայն ընդհանուրը հասկանալ, նշանակում է՝ աչքերը փակել սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և բուրժուական կոսմոպոլիտիզմի միջև գոյություն ունեցող արմատական հակադրության հանդեպ։ Ազգայինը նույնպես վերացական չէ և այն չի կարելի քննել մշակույթի դասակարգային բնույթի հարցից դուրս։ Արվեստում ազգայինի և միջազգայինի պրոբլեմը հետազոտողի համար քիչ է իմանալ սեփական ժողովրդի ստեղծագործական պրակտիկան, գեղարվեստական ազգային ավանդները։ Նա պետք է զինված լինի և՛ ազգայինի, և՛ միջազգայինի նկրտումների զարգացման իմացությամբ։

Մարդկանց նյութական կյանքի պայմանների ընդհանրությունը չի բացառում անհատական բնավորությունների ձևավորումը, որոնք կրում են դասակարգերի և ազգերի սոցիալ-հոգեբանական կնիքը։

Հոգեկան կերտվածքի ո՞ր գծերն են դառնում համազգային տվյալ ազգի բոլոր դասակարգերի համար։ Այդ հարցին ժամանակակից գիտությունը տալիս է միայն ընդհանուր պատասխան։ Նյութական կյանքի նույնանման պարագաները՝ բնական միջավայրը, ժողովրդի պատմությունը, միջազգային դրու-



digitised by A.R.A.R.@

թյունը ծնում են ամբողջ ազգի համար հոգեկան կերտվածքի ընդհանուր գծեր, սոցիալական երևույթներին տալով այս կամ այն երանգը։ Այստեղ դասակարգային հոգեբանությունը թելադրող գործոն է, որը, ներազդելով գեղարվեստական պրոցեսների վրա, հարստացնում է այն ինտերնացիոնալիստական հատկանիշներով։ Սոցիալական հոգեբանության մեջ չի կարելի անջատել դասակարգային և ազգային գծերը, բայց և չի կարելի նույնացնել դրանք։ Չկա մաքուր, «ազգային տիպ», ինչպես չկա վերացական, ապազգային դասակարգային բնավորություն։ Դրանք գոյություն ունեն դիալեկտիկական որոշ միասնության մեջ։ Սոցիալական այս բարդ երևույթը զարմանալի ուժով բացահայտված է ռուս դասական գրականության կերպարներում, որտեղ դասակարգային և ազգային հոգեբանության հատկանիշները տրված են միասնության մեջ։ Օնեգինը, Պեչորինը, Չիչիկովը, Բազարովը, Օբլոմովը, Ռախմետովը, առաջին հերթին, լինելով դասակարգային տիպեր, միաժամանակ ազգային բնավորություններ են։ Նույնը կարելի է ասել Սունդուկյանի, Պարոնյանի ու Շիրվանզադեի ստեղծած կերպարների մասին։

Ազգային հոգեկան կերտվածքն աչքի է ընկնում որոշակի կայունությամբ։ Ժողովուրդների՝ հազարամյակներ տևած մեկուսի կյանքը, բնական, սոցիալական, պատմական տարբեր պայմանները, ազգային դարավոր լուծը, խտրությունն ու անվստահությունը միջնորմներ են հարուցել և ամրապնդել ազգային-հոգեկան կերտվածքի առանձնահատկությունները, որոնք փոխանցվել են սերնդից սերունդ։ Այդ կայունությունն ուժեղացել է նաև շնորհիվ հոգեկան հանրության ամրապնդման՝ կենցաղում, սովորույթներում, լեզվի, արվեստի մեջ։ Դա միջոց է դարձել ազգային անկախության ու համախմբման համար։

Չնայած ազգային հոգեբանությունն օժտված է հարաբերական ինքնուրույնությամբ, այն ենթակա է փոփոխման և նրա զարգացումն ընթանում է հնի ու նորի պայքարի միջով։ Շրջապատող միջավայրը ակտիվ ներգործում է ազգի հոգեկան կերտվածքի վրա, նրա վրա ներգործում են ո՛չ միայն ավանդները, այլև նորը, ժամանակակիցը։ Ինտերնացիոնալ հարաբերություններն ու կապերը տարբեր ժողովուրդների ինտելեկտուալ համամարդկային հատկանիշների զարգացման ու բյուրեղացման մշտական ազդակներ են՝ մանավանդ սոցիալիստական իրավակարգում։ Ահա թե ինչու սոցիալիստական հասարակարգի պայմաններում ազգի հոգեբանությունն աստիճանաբար միատարր է դառնում։ Պրոլետարիատի դասակարգային կազմակերպվածությունը, համախմբվածությունը, նպատակասլացությունը մեր երկրում վերածվում են համաժողովրդական գծերի։ Առաջին անգամ մարդկության պատմության մեջ առաջավոր դասակարգի հոգեկան կերտվածքի հատկանիշներն ստանում են գերակշռող համազգային բնույթ, չփոխարկվելով միայն յուրահատուկ ազգայինի։ Նրանց ներհատուկ է ինտերնացիոնալիստականը։ Սովետական Միության բոլոր ժողովուրդներին բնորոշ են կոլեկտիվիզմը, համերաշխությունը և ուրիշ շատ բարձր հատկանիշներ, որոնք միաձուլվելով՝ ձևավորում են սովետական բնավորությունը։ Այս հասկացությունն արդեն կյանք է մտել, արտացոլելով հոգեկան կերտվածքում առաջացած նորը, որն ընդհանուր է ՍՍՀՄ բոլոր ազգերին։ Սոցիալիստական ազգերի հոգևոր կերտվածքի ոլորտում տեղի է ունենում երկու նշանակալից պրոցես՝ հոգեկան նոր գծերի յուրացում, դասակարգային առաջադիմական ավանդների արմատավորում։ Երկու տենդենցն էլ հանգեցնում են ազգերի ծաղկման ու մերձեցման։

Արվեստը հասարակական գիտակցության այն ձևն է, որտեղ գաղափա-



րական և հոգեբանական ասպեկտներն ավելի ակնհայտ են հարաբերակցվում։ Անհնար է ժամանակակից արվեստի որևէ իսկական ստեղծագործություն առանց մարդկանց հոգեբանության մեջ տեղի ունեցող օբյեկտիվ պրոցեսների։ Խոսելով արվեստի մասին ընդհանրապես, մենք ենթադրում ենք գեղագիտական հատկանիշները, գեղարվեստական ընդհանրացման ուժը, գաղափարական պաթոսը, վերանում կոնկրետ ստեղծագործությունների անհատական, կերպարային կարգից։ Գեղարվեստական ստեղծագործության առանցքն են՝ ինդիվիդուալ առանձնահատկությունները, տիպական կերպարների անկրկնելի գծերը, որոնք արտահայտում են սոցիալական պրոցեսների էությունը։ Խոհերը, մտքերը, գաղափարական եզրահանգումները, որոնք ի վերջո հանգեցնում են ստեղծագործության գեղարվեստական տրամաբանությանը, կազմում են կմախքը։ Սակայն լոկ կմախքը։

Արվեստի ստեղծագործության մեջ ազգային և ինտերնացիոնալ գծերը վերլուծելիս անհրաժեշտ է կոնկրետ և բազմակողմանի քննել ստեղծագործության կենդանի հյուսվածքը և ի հայտ բերել դրանց հարակցությունը՝ բովանդակության ու ձևի մեջ։ Կյանքի փաստերը, իրադարձությունները, պրոցեսները՝ մարմնավորված գեղարվեստական կերպարներում, կազմում են արվեստի ստեղծագործության առարկայական կողմը։ Արվեստագետի ընդհանրացրած, կյանքից վերցրած նյութը ընթերցողի, ունկնդրի, հանդիսատեսի հոգում հարուցում է որոշակի զգացումներ, կյանքի երևույթների նկատմամբ՝ էմոցիոնալ գնահատական, հստակ մտքեր ու խոհեր, գաղափարական եզրակացություններ։ Վերջինս բովանդակության վճռական կողմն է։

Գեղարվեստական ստեղծագործության բովանդակությունն աչքի է զարնում իր բարդ կառուցվածքով, որը վերցրած է անմիջական կյանքի նյութից, էմոցիոնալ կարգից և իրերի ու դեպքերի գաղափարական ուղղությունից։ Հասկանալի է, որ բաղկացուցիչ մասերը անխզելի միասնություն են կազմում գեղարվեստական ստեղծագործության կենդանի հյուսվածքում։ Բովանդակության ամենաինտերնացիոնալ կողմը ստեղծագործության գաղափարական պաթոսն է, նպատակային իմաստը, որը որոշակի սոցիալ-դասակարգային և պատմական կոնկրետ գաղափարախոսության արտահայտություն է։ Ռեալիստական արվեստից առաջացած խոհերում ավելի պարզ են արտացոլվում սոցիալական պրոցեսների, մարդկային փոխհարաբերությունների էությունը, մարդու և բնության, հասարակական միջավայրի բնույթը։

Ստեղծագործության բովանդակությունը վերլուծելիս անհնար է ուշադրություն չդարձնել հերոսների էմոցիոնալ խառնվածքի վրա, որտեղ դրսևորվում են նրանց ազգային կերտվածքն ու բնավորությունը, զգացումների ու ապրումների այն օբյեկտիվ կարգը, որն արթնացնում է ընթերցողների, հանդիսատեսների, ունկնդիրների ստեղծատենչությունը։ Այս հանգամանքը պայմանավորված է ո՛չ միայն ստեղծագործության հերոսների կերպարների բնույթով, այլ, գլխավորապես, պատկերվողի հանդեպ արվեստագետի տածած էմոցիոնալ վերաբերմունքով, այսինքն՝ ի վերջո, նրա սեփական հոգեկան խառնվածքով, նրա ազգային բնավորությամբ։

Այս հանգամանքը թույլ է տալիս մեզ ասելու, որ ազգային երկ կարելի է ստեղծել միայն ազգային կյանքի նյութի վրա, իսկ ազգային արվեստագետը չի կարող դուրս գալ այդ նյութի շրջանակներից։ Դրա վառ ապացույցը Զաբենցի «Ամբոխները խելագարված», «Լենինն ու Ալին» երկերն են։ Օտար իրականությունը պատկերող արվեստագետը, օրգանապես կապված մնալով հայ-



digitised by A.R.A.R.@

րենիքին, իր ժողովրդի տեսանկյունից է դիտում այլազգի կյանքը։ Տեսական մեծ հետաքրքրություն է ներկայացնում բեմադրությունների, առանձին դերասանների կողմից այլազգի պիեսներում խաղացած դերերի վերծանումը։ Այստեղ պարզ ի հայտ են գալիս երկու գիծ՝ խաղալ «յուրովի», որը փոխելով երկի ողջ առաղձը, որպես կանոն, հանգեցնում է մակերեսային լուծումների, խեղաթյուրում հեղինակի մտահղացումը։ Կամ բեմադրել այնպես, որ պահպանվի պիեսի գաղափարական-գեղագիտական շաղախը, միաժամանակ տալով նրան սեփական ազգայինը այն չափով, որչափով այն անհրաժեշտ է դրամատուրգի մտահղացումը հանդիսատեսին հրամցնելու համար։

Դրամատուրգիական երկի էմոցիոնալ կարգը կարելի է անվանել ազգային, եթե ստեղծագործության մեջ դրսևորվող զգացումներն ու ապրումները համահնչուն են ժողովրդի ազգային հոգեկան կերտվածքին։ Դրա համար ազգային ստեղծագործությունից բխող զգացումները մյուս հանգամանքների հավասարության դեպքում, ազգային հանդիսատեսի մոտ ավելի մեծ ու խոր են։ Համառոտակի անդրադառնալով այլազգի ստեղծագործության ընկալման հարցին, կարելի է ընդգծել այդ բազմանշանակ պրոբլեմի մի կողմը՝ որքան ժողովուրդներն իրար լավ են ճանաչում, այնքան խոր են հասկանում միմյանց արվեստը։ Այդ պրոցեսն իր հերթին դյուրացնում է ազգային արվեստների փոխհարստացումը։

Բոլոր ազգերի արվեստագետները ծանոթացնում են աշխարհին իրենց ժողովուրդների կյանքին, ապրումներին, խոհերին, համաշխարհային ասպարեզ են հանում իրականության էսթետիկական յուրացման սեփական փորձը։ Չէ՛ որ սոցիալական պրոցեսների բուն էությունն ինտերնացիոնալիստական է, հատուկ բոլոր ժողովուրդներին։ Արվեստը կոչված լինելով արձագանքելու սոցիալական, համամարդկային պահանջմունքներին, որոնում և գտնում է արտահայտչական նորանոր միջոցներ, ձևեր ու եղանակներ։

Պատմական զարգացման պրոցեսում ծնվում են արվեստի նոր տեսակներ, ժանրեր, ձևավորվում նրանց սպեցիֆիկ օրինաչափությունները։ Դիֆերենցումի հետ միաժամանակ տեղի է ունենում արվեստների միացում։ Ի հայտ են գալիս իրականության էսթետիկական յուրացման նոր տեսակներ, որոնք ժամանակակից կինեմատոգրաֆի պես սինթեզում և յուրովի վերափոխում են դրամատուրգիայի ու թատրոնի, կերպարվեստի, գրաֆիկայի, երաժշտության, պարարվեստի գեղարվեստական միջոցներն ու եղանակները, որոնք միջազգային ճանաչում են ստանում։ Իրականության վերստեղծման գեղարվեստական միջոցների ու գրելաձևերի զինանոցը (խոսքի նեղ ու լայն առումով) հարստանում է (անցյալում և ներկայում) կոլեկտիվ ջանքերով։ Գեղարվեստական ձևը լոկ ազգային չէ։ Հասարակական գիտակցության մյուս ձևերի նման արվեստն արտացոլում է իրականությունը։ Ամեն մի արտացոլում ենթարկվում է օբյեկտիվ օրինաչափությունների, որոնք, վերջին հաշվով, պայմանավորվում են նյութական աշխարհով։ Դրա համար, ասենք, գեղանկարիչը պետք է հաշվի նստի օպտիկայի, կոլորիստիկայի օրենքների, թատրոնը և ճարտարապետությունը՝ տարածական-ժամանակային հարաբերությունների, երաժշտությունը՝ ակուստիկայի պահանջների հետ։ Իսկ այդ բոլորն իրենց բնույթով միջազգային են։

Այստեղ ակներև է, որ «ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական արվեստ» ֆորմուլը եզակի միջոց չէ կոնկրետ գեղարվեստական ստեղծագործությունը վերլուծելու համար։ Այս սահմանումն առաջ է քաշվել այնպիսի պայմաններում, երբ կուսակցությունը խնդիր էր դրել՝ վերացնել սովետական ժողովուրդների միջև գոյություն ունեցող փաստացի անհավասարությունը և իրագործում էր կուլտուրական հեղափոխության սուր պայքարն ընդդեմ բուրժուական, նացիոնալիստական գաղափարախոսության տարբեր դրսևորումների։ Այն հնչեց որպես մարտակոչ՝ սովետական բոլոր հանրապետություններում հաստատելու և ամրապնդելու կուլտուրական շինարարության պրոցեսների գաղափարական ու հեղափոխական ընդհանրությունը։ Հասկանալի է, որ սահմանման մեջ չի դրսևորվում կուլտուրայի ողջ բովանդակությունը, այնտեղ սևեռված է այն ընդհանուրը, գլխավորը, արմատականը, որը հատուկ է նրա բոլոր տարրերին ու պրոցեսներին—գաղափարական էությանը։

Այդպիսով ընդգծում էին սովետական ազգային կուլտուրաների զարգացման ուղղությունն ու նպատակը— պայքար սոցիալիզմի համար։ Այս ֆորմուլան կենսունակ է նաև մեր օրերում. այն ընդունելություն է գտել սոցիալիստական համագործակցության երկրներում։ Ուստի, սխալ են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական սահմանումը ամբողջովին ժխտողները։ Բայց դա չի նշանակում այդ դրույթի դոգմատիկ կիրառում, բացարձակացում և պրոբլեմի տարբեր ասպեկտների չփոթում։ Այս պրոբլեմի շուրջ ծավալված դիսկուսիան օգնեց պարզաբանելու սովետական արվեստում ինտերնացիոնալիստականի և ազգայինի կենդանի դիալեկտիկան, բացահայտելու նրա տարբեր կողմերը։ Դիսկուսիան նպաստեց ստեղծագործաբար կիրառելու կուսակցական ծրագրային դրույթն արվեստի տեսության մեջ։

Այժմ (ի տարբերություն նրանց, ովքեր շարունակում են պնդել, թե արվեստի ստեղծագործություններում չկա և չի կարող լինել ազգային բովանդակություն), գիտական-ստեղծագործական շրջաններում լայն ընդունելություն է գտել այն թեզը, որ արվեստի ստեղծագործության բովանդակության ու ձևի մեջ կան թե՛ ինտերնացիոնալիստական և թե ազգային տարրեր։ Միջազգայինը չի նշանակում հակազգային։ Լենինը, խոսելով մեծապետական ազգերի պրոլետարիատի ինտերնացիոնալիստական միսիայի մասին, ցույց է տալիս, որ միջազգային բուրժուազիայի տապալումը «...հսկայական չափերով կարագացնի բոլոր և ամեն տեսակ ազգային միջնապատերի անկումը, դրանով չփոքրացնելով, այլ միլիոնավոր անգամ մեծացնելով մարդկության «դիֆերենցումը» հոգեկան կյանքի և գաղափարական հոսանքների, ձգտումների, երանգների հարստության և բազմազանության իմաստով» (Երկեր, հ. 21, էջ 344—345)։

Գիտության խնդիրն է՝ հետազոտել ազգայինի ու միջազգայինի փոխհարաբերությունը, զարգացման տենդենցները։



digitised by A.R.A.R.@

# ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴՐԻ ԼՈՒԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ՄԵՂՐՅԱՆ Գ. Բ.

*Քաղաքային և գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակի տարբերությունների հաղթահարումը կոմունիզմի կառուցման ներկա էտապի կարևորագույն խնդիրներից է։ Այդ խնդրի լուծման համար նախադրյալներ ստեղծվեցին դեռևս սովետական իշխանության առաջին, առանձնապես հնգամյակների տարիներին, երբ երկրում վերացվեցին կապիտալիստական արտադրահարաբերությունները, հաջողությամբ իրագործվեցին գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը և կուլտուրական հեղափոխությունը։ Դրանք այն արմատական տեղաշարժերն էին, որոնք մեծապես նպաստեցին գյուղացիության ինչպես նյութական, այնպես էլ կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը։*

*Սովետական գյուղի կուլտուր-տեխնիկական հարաճուն վերելքը հիմնված է ո՛չ միայն նրա սոցիալիստական արտադրահարաբերությունների, այլև արտադրական բազայի մեքենայացման ու ինտենսիվացման վրա։ Գյուղատնտեսական արտադրության տարբեր ճյուղերի արագ մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը հանդիսացան այն հաստատուն սյուները, որոնց հենված, բարգավաճում ու զարգանում է մեր նոր գյուղը։ Աշխատատար պրոցեսների հետևողական մեքենայացումը ո՛չ միայն կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը, այլև կկրճատի անհրաժեշտ աշխատաժամանակը և, այդպիսով, կխթանի կուլտուրական կյանքի ծաղկումը։ Թե որքան է փոխվել Հայաստանի գյուղի արտադրատեխնիկական բազան սովետական կարգերի օրոք, կարելի է տեսնել հանրապետության վիճակագրական վարչության անցյալ տարի հրատարակած* Экономика и культура Армении к 50-летию великого Октября *հարուստ ժողովածուն թերթելիս։*

*Չնայած այդ բնագավառում ձեռք բերված ակնառու հաջողություններին, գյուղական բնակչությունն իր կուլտուր-տեխնիկական մակարդակով դեռևս ետ է մնում քաղաքային բնակչությունից։ Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը համապատասխան միջոցառումներ են իրագործում քաղաքային և գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակների տարբերությունների վերացման համար, որը սերտորեն առնչվում է կոմունիզմի կառուցման հետ։*

*Քաղաքային և գյուղական բնակչության կուլտուրական մակարդակի միջև եղած տարբերությունների հաղթահարումը երկարատև պրոցես է։ Չպետք է մոռանալ, որ մարդկանց կուլտուրական պահանջմունքների ծագումն ու զարգացումն անխզելիորեն կապված են նրանց նյութական պայմանների հետ։ Նյութական կյանքի որոշակի աստիճանն ստեղծում է կուլտուրական պահանջմունքների համապատասխան մակարդակ։ Ուստի և այդ տարբերությունների հաղթահարման նախապայմանը գյուղական բնակչության նյութական մակարդակի բարձրացումն է, դրա մերձեցումն ու հավասարեցումը քաղաքին։*



*Այժմ արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման տեմպերի տարբերությունների հաղթահարմանը զուգընթաց ակնբախ են դառնում գյուղական բնակչության ռեալ եկամուտների աճի ավելի արագ տեմպերը, որը կարևոր նշանակություն ունի քաղաքային և գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակի մերձեցման համար։ Ահա դրա արգասիքը. հանրապետության գյուղական բնակչությունը 1965 թվականին 3 անգամ ավելի շատ կուլտապրանքներ է ձեռք բերել, քան 1955 թվականին։ Դա նրա գնողունակության արագ աճի արտահայտությունն է։*

*Գյուղատնտեսական արտադրության վերելքի շնորհիվ կոլտնտեսությունները հնարավորություն ստացան ավելացնելու կուլտուրական կարիքներին հատկացվող գումարները։ Նրանք դպրոցների, գրադարանների, ակումբների, մանկամսուրների, մանկապարտեզների և հասարակական այլ օբյեկտների կառուցման, գույքի և սարքավորումների ձեռքբերման համար վերջին տարիներս զգալի միջոցներ են ներդրել։ Միայն 1959—1965 թվականների ընթացքում կոլտնտեսությունների նախաձեռնությամբ և նրանց միջոցներով կառուցվել ու շահագործման են հանձնվել 83 դպրոց՝ 19,1 հազար աշակերտական տեղով։ 1965 թվականին հանրապետության կոլտնտեսությունները կուլտուր-լուսավորական կարիքների համար ծախսել են 671 հազար ռուբլի։*

*Քաղաքային և գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակի տարբերությունների հաղթահարման կարևորագույն նախադրյալներից է կուլտուր-լուսավորական հիմնարկների առավել համաչափ տեղաբաշխումը։ Կոմունիստական շինարարության ներկա էտապում այդպիսի հիմնարկների աշխատանքի մասսայական որոշ ձևեր գյուղում ավելի արագ են զարգանում և դրա արտահայտությունը, ամենից առաջ, գյուղական բնակչության հանրակրթական մակարդակի բարձրացումն է։*

*Գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում մեծ դեր են խաղում հանրակրթական դպրոցներն ու ուսումնարանները։ Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանի բնակչության մոտ 90 տոկոսն անգրագետ էր։ Այժմ Հայաստանը համատարած գրագիտության երկիր է, որտեղ գործող 1305 հանրակրթական դպրոցներում (առանց բանվորական և գյուղերիտ դպրոցների) սովորում են մոտ 560 հազար աշակերտ։*

*Զգալի հաջողություններ են ձեռք բերվել քաղաքային և գյուղական բնակչության հանրակրթական մակարդակների տարբերությունների հաղթահարման բնագավառում։ Այսպես, եթե 1958—59 ուս. տարում հանրապետության քաղաքներում ու քաղաքատիպ ավաններում յուրաքանչյուր 1000 բնակչին ընկնում էին 147 աշակերտ, ապա 1965/66 ուսումնական տարում՝ 218. նույն ժամանակաշրջանում գյուղական վայրերում, համապատասխանաբար, կազմում էր՝ 171 և 237։ Ինչպես տեսնում ենք, վերջին յոթ տարիների ընթացքում գյուղի հանրակրթական դպրոցների աշակերտների թվի ավելացման տեմպերը մոտեցել են քաղաքի տեմպերին։*

*1959 թվականին միջնակարգ կրթություն ունեցողների թիվը (ներառյալ*



digitised by A.R.A.R.@

թերի բարձրագույնը) հանրապետության քաղաքներում ու քաղաքատիպ ավաններում, 1939 թվականի համեմատությամբ, ավելացել է 1,9, բարձրագույն կրթություն ունեցողներինը՝ 2,9, գյուղական վայրերում, համապատասխանաբար՝ 5,8 և 9 անգամ։

Վերջին տարիներին դպրոցական գործի զարգացումը գյուղում արտահայտվում է ո՛չ միայն աշակերտների թվի ավելացմամբ, այլև ուսուցիչների թվական ու որակական աճով։ Այսպես, 1956/57 ուսումնական տարում հանրապետության գյուղական հանրակրթական դպրոցներում (առանց գյուղերիտ դպրոցների) աշխատում էին 11548 ուսուցիչ, իսկ այժմ՝ 14313։ 1956/57 ուսումնական տարում բարձրագույն կրթություն ունեցողները կազմում էին բոլոր ուսուցիչների 41, իսկ այժմ՝ 45,1 տոկոսը։ Դա ցույց է տալիս, որ գյուղական ուսուցիչների ընդհանուր թվում ավելանում են բարձրագույն կրթություն ունեցողները։

Դպրոցական շինարարությունն ավելի լայն թափ կստանա ընթացիկ հնգամյակում։ Նախատեսվում է 1970 թվականի վերջին հանրակրթական դպրոցներում սովորողների թիվն ավելացնել 20 տոկոսով։ Ժողովրդական կրթության հետագա զարգացման նպատակով զգալի չափով կընդլայնվի նրա նյութական բազան։ Կկառուցվեն և շահագործման կհանձնվեն դպրոցներ՝ 142 հազար աշակերտական տեղով։

Այժմ հանրապետության քաղաքներում միջնակարգ դպրոցների թիվը հասնում է 272-ի, իսկ գյուղական վայրերում՝ 289-ի (առանց բանվորի և գյուղերիտ դպրոցների)։ Նոր հնգամյակում ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում, անցում է կատարվելու ընդհանուր միջնակարգ կրթության, որի շնորհիվ բանվորներն ու կոլտնտեսականներն իրենց կրթությամբ կհավասարվեն ո՛չ միայն ծառայողներին, այլև միջին որակի մասնագետներին։ Այդ խնդրի իրականացումը պատմական, սոցիալական մեծ նշանակություն ունի, որին դեռևս չի հասել կապիտալիստական ոչ մի երկիր։

Մեր գյուղական բնակչության կուլտուրայի զարգացման մեջ կարևոր դեր են խաղում գրադարանները, որոնց թիվը տարեցտարի աճում է։ Այդ է ցույց տալիս ստորև բերված աղյուսակը։

Հայկական ՍՍՀ մասսայական գրադարանների թվի և դրանց գրքային ֆոնդի աճը

| | 1940 թ. | 1950 թ. | 1960 թ. | 1966 թ. |
|---|---|---|---|---|
| Մասսայական բոլոր գրադարանների թիվը | 908 | 1467 | 1142 | 1180 |
| Դրանցից՝ | | | | |
| Քաղաքում . . . . . . . . | 124 | 235 | 266 | 308 |
| Գյուղում . . . . . . . . | 784 | 1232 | 876 | 872 |
| Քաղաքում գտնվող մասսայական գրադարանների գրքային ֆոնդը (հազար օրինակ) . . . . . . . | 421 | 931 | 3644 | 5073 |
| Գյուղում գտնվող մասսայական գրադարանների գրքային ֆոնդը (հազար օրինակ) . . . . . . . | 290 | 1308 | 3660 | 3931 |



Այսպիսով, գյուղական մասսայական գրադարանների գրքային ֆոնդն ավելի արագ է աճում (1966 թ., 1940 թ. համեմատությամբ, 13 անգամ, քաղաքայինը՝ 12 անգամ)։ Միաժամանակ ավելանում է նաև ընթերցողների և կարդացված գրքերի թիվը։ Եթե 1958 թվականին հանրապետության կուլտուրայի մինիստրության սիստեմի գյուղական գրադարաններն ունեին 114 հազար ընթերցող, ապա 1965 թվականին նրանց թիվը հասնում էր 210 հազարի։ Այդ նույն ժամանակաշրջանում կարդացված գրքերի քանակն ավելացել է 2,2 անգամ։ Մասսայական գրադարանների գրքային ֆոնդի աճի հետ մեկտեղ ավելանում է նաև գյուղական բնակչության անձնական գրադարանների գրքերի թիվը, որը նույնպես նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման արգասիք է։ Բնակչության հոգևոր կուլտուրայի հետագա զարգացման համար նախատեսվում է ներկա հնգամյակի վերջին տարում հանրապետության մասսայական գրադարանների թիվը, 1965 թ. համեմատությամբ, ավելացնել 139-ով։

Գյուղական բնակչության կոմունիստական դաստիարակության, կուլտուրական մակարդակի բարձրացման գործում կարևոր դեր են խաղում ակումբներն ու կուլտուրայի տները։ 1966 թվականի վերջերին հանրապետության կուլտուրայի մինիստրության սիստեմում գործում էին 874 ակումբ ու կուլտուրայի տուն։ Կուլտուրայի այդ օջախներում կազմակերպվում են զեկուցումներ, զրույցներ, սովետական իշխանության տարիներին ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների նվաճումներն արտացոլող ցուցահանդեսներ։

Գյուղում կուլտուր-դաստիարակչական աշխատանքների բարելավման համար անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողների ընտրությանը, դրանք կոմպլեկտավորել համապատասխան մասնագիտական կրթություն ունեցողներով։ Ինչպես ամենուրեք, այստեղ աշխատողը ևս պետք է սիրի իր գործը, կարողանա կազմակերպել հետաքրքրական միջոցառումներ, օգնել աշխատավորներին՝ գտնելու իրենց հուզող հարցերի պատասխանները, նպաստել նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, կուլտուրական և գիտական մտահորիզոնի ընդլայնմանը։

Գյուղական բնակչության կուլտուրական մակարդակի բարձրացման համար առանձնահատուկ նշանակություն ունեն գյուղի կինոֆիկացումն ու ռադիոֆիկացումը, հեռուստատեսությունը, որոնց միջոցով բնակչությունը հաղորդակից է դառնում երկրի տնտեսական ու քաղաքական կյանքին, ծանոթանում կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի ասպարեզում ձեռք բերված հաջողություններին։

Սովետական իշխանության տարիներին խոշոր հաջողություններ կան ինչպես քաղաքի, այնպես էլ գյուղի կինոֆիկացման բնագավառում։ 1940—66 թվականների ընթացքում կինոթատրոնների թիվը 168-ից հասել է 658-ի։ Ամեն տարի շահագործման են հանձնվում նորերը։ Միայն ընթացիկ հնգամյակի առաջին տարում գյուղական կինոցանցն ստացել է 111 նոր սարքավորում։ Կինոթատրոնների թիվն արագ է աճում, հատկապես, գյուղական վայրերում։

Չնայած հանրապետության կինոցանցը տարեցտարի ընդարձակվում է, սակայն դեռևս փոքր է կինոթատրոնների թիվը։ Այսպես, եթե Միության մեջ գյուղական յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում են 10 կինոսարքավո-



digitised by A.R.A.R.@

րում, ապա մեր հանրապետությունում՝ 4,8։ Այդ բացը վերացնելու համար նախատեսվում է ընթացիկ հնգամյակում կինոթատրոնների թիվն ավելացնել 200-ով։ Այս բնագավառում մեր անելիքները մեծ են։

Ինչպես գիտենք, ռադիոֆիկացվել են մեր հանրապետության շրջանները։ Գյուղական վայրերում ռադիոտրանսլյացիոն կետերի թիվը 1966 թ. հասավ 57 հազարի. յուրաքանչյուր 10 բնակչին այդ թվականին ընկնում էր մոտ 0,57 ռադիոտրանսլյացիոն կետ—գրեթե այնքան, որքան քաղաքային 10 բնակչին։ Եթե 1956 թվականին հանրապետության գյուղական վայրերում չկար ոչ մի հեռուստացույց, ապա 1967 թվականի վերջին դրանց թիվը հասնում է 27 հազարի։ Այդ նույն թվականին հանրապետության գյուղական վայրերում կային 120 հազար ռադիոընդունիչ։ Արտաշատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աբովյանի, Շահումյանի, Վեդու և այլ շրջանների շատ կոլտնտեսականներ ունեն և՛ հեռուստացույց, և՛ ռադիոընդունիչ։ Այս ևս գյուղական բնակչության կուլտուրական մակարդակի բարձրացման արտահայտությունն է։

Գյուղական բնակչության կուլտուրական վերելքի գործում կարևոր դեր են խաղում գրքերը, թերթերն ու հանդեսները, բազմատիրաժ թերթերը, դասախոսություններն ու զեկուցումները. դրանք նպաստում են գյուղի աշխատավորի ստեղծագործական նախաձեռնությանը, կուլտուրայի զարգացմանը, նրա քաղաքական ակտիվության բարձրացմանը։

Վերջին տարիներս հանրապետությունում լայնորեն տարածվել են մասսաներին գիտության ու արվեստին իրազեկ դարձնելու այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք են՝ ժողովրդական համալսարանները, ինքնագործ թատրոններն ու գեղարվեստական խմբակները։

Առաջ ժողովրդական համալսարաններ էին ստեղծվում միայն քաղաքներում. այժմ այդպիսիք ստեղծվում են նաև գյուղերում։ Այսպես, Հայաստանում 1965/66 ուսումնական տարում գործող 167 ժողովրդական համալսարանից (որոնց ունկնդիրների թիվը հասնում էր ավելի քան 25 հազարի) 110-ը (մոտ 10 հազար ունկնդիրներով) գտնվում էին գյուղական վայրերում։ Ժողովրդական համալսարանները դարձել են գիտության, գրականության ու արվեստի պրոպագանդման հիանալի օջախներ։

1966 թվականին կուլտուրայի մինիստրության սիստեմի գյուղական ակումբներին կից գործում էին 554 դրամատիկական, 114 երաժշտական, 277 պարի խմբակ և 170 երգչախումբ։

Գյուղական բնակչության ընդհանուր և մասնագիտական կրթության վերելքի, ինչպես և կուլտուրայի տարբեր ձևերի զարգացման հետ մեկտեղ անընդհատ բարձրանում է գյուղի աշխատավորների արտադրական որակավորումը։ Հանրապետությունում կոլտնտեսային կարգի հաղթանակից հետո գյուղը զինվեց տեխնիկապես և ապահովվեց այնպիսի նոր մասնագետներով, ինչպիսիք են՝ կոմբայնավարները, տրակտորիստները և այլն, որոնց թիվը առ 1-ը ապրիլի 1966 թ. հասնում էր 14,8 հազարի։

Վերը նշված բնագավառներում ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ քաղաքային և գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակների միջև դեռևս կան էական տարբերություններ։ Գյուղի աշխատավորների արտադրական որակավորման մակարդակն զգալիորեն ցածր է, քան արդյունաբերական բանվորներինը։ Այդ պայմանավորված է նրանով, որ գյուղատնտեսական աշխատանքի տեխնիկական զինվածությունը չի հասել արդյունաբերականին։ Այսպես, 1965 թվականին հանրապետության արդյու-



նաբերության մեջ ամեն մի բանվորին ընկնում էին խոշոր գումար կազմող արտադրական ֆոնդեր, 14,7 ձիաուժ էներգետիկ կարողություն, 13566 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ գյուղատնտեսության յուրաքանչյուր աշխատողին, համապատասխանաբար՝ 1,8, 5,5 և 848։ Եվ, եթե արդյունաբերության մեջ ձեռնարկությունների բոլոր դիրեկտորները, ինժեներները, վարպետները, տեխնիկներն ունեն բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն, ապա 1967 թվականի հոկտեմբերի 1-ի դրությամբ կոլտնտեսությունների նախագահների միայն 61 և սովխոզների դիրեկտորների 93 տոկոսն ունեին բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։ 1967 թվականի ապրիլի 1-ի դրությամբ կոլտնտեսություններում որպես նախագահ, նախագահի տեղակալ, ագրոնոմ, անասնաբույժ, անասնաբույծ, ինժեներ ու տեխնիկ, արտադրական բրիգադների բրիգադավար և անասնապահական ֆերմաների վարիչ աշխատում էին 4823 մարդ, որոնցից միայն 2367-ն ունեին բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։

Տարեցտարի աճում է միջին և բարձր որակավորում ունեցող կադրերի թիվը (հատկապես մեխանիզատորներինը)։ Մեխանիզատորների տեսակարար կշռի մեծացումը գյուղատնտեսական արտադրության մեքենայացման պրոցեսի արտահայտությունն է։ Նրանց տեխնիկական մակարդակն ավելի ու ավելի է մոտենում արդյունաբերական բանվորների տեխնիկական մակարդակին։ Այս ևս մի քայլ է քաղաքային ու գյուղական բնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակների տարբերության հաղթահարման ճանապարհին։

Գյուղատնտեսական արտադրության էլեկտրիֆիկացման, քիմիացման, կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ գյուղն այժմ ունի էլեկտրամոնտյոր, էլեկտրամեխանիկ, կթվոր մեխանիկ, կթող ագրեգատների կարգավորիչ։ Կոլտնտեսականը, սովխոզի բանվորը դառնում են որևէ բնագավառի մասնագետ։ Նրանք բանում են մեքենաներով, որի շնորհիվ փոխվում է նրանց աշխատանքի բնույթը. սա, իր հերթին, բարձրացնում է գյուղի աշխատավորի կուլտուր-տեխնիկական մակարդակը։

Չնայած հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում մեծացել է որակյալ մասնագետների թիվը, այնուամենայնիվ, գյուղատնտեսության ապահովվածությունը մասնագետներով մոտ 3 անգամ ցածր է արդյունաբերությունից։ Այսպես, 1966 թվականի նոյեմբերի 15-ի դրությամբ սովխոզներում յուրաքանչյուր հազար աշխատողին ընկնում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 39, իսկ կոլտնտեսություններում՝ 21 մասնագետ։

Կոլտնտեսություններում, սովխոզներում և գյուղատնտեսական օժանդակ պետական տնտեսություններում 1961 թվականին աշխատում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 3546 գյուղատնտես, անասնաբույծ և անասնաբույժ, իսկ 1965 թվականի վերջին՝ 4480։ Անհանդուրժելի է, որ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում, առևտրի ցանցում և պետական օրգաններում մոտ 2 անգամ ավելի շատ գյուղատնտեսական մասնագետներ են աշխատում, քան կոլտնտեսություններում։

Հանրապետության մի շարք շրջաններում (Ամասիա, Ախուրյան, Ղափան, Սիսիան և այլն) զգացվում է ինչպես գյուղատնտեսության մասնագետների, այնպես էլ բժիշկների, ուսուցիչների պահանջ։

Այժմ մեր բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն հզոր



digitised by A.R.A.R.@

գյուղատնտեսական տեխնիկա, ինչպես և էլեկտրաշարժիչներ, էլեկտրա-
սարքավորումներ, որոնց միջոցով մեքենայացվում են արտադրության
ճյուղերը: Պարզ է, որ այդ տեխնիկան ճիշտ օգտագործելու և վերանո-
րոգելու, ինչպես և գյուղատնտեսական մթերքների արտադրության անշեղ
աճն ապահովելու համար պահանջվում են մեծ թվով ինժեներներ, մեխանիկ-
ներ ու տեխնիկներ: Գյուղում քիչ են տնտեսագետները:
Կոլտնտեսություններում ու սովխոզներում ինժեներա-տնտեսագիտական
աշխատողների պակասի հիմնական պատճառն այն է, որ տարիներ շարունակ
թերագնահատվել են գյուղատնտեսության, հատկապես կոլտնտեսային ար-
տադրության էկոնոմիկայի հարցերը: Հանրապետության բարձրագույն և միջ-
նակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները քիչ ինժեներ-
ներ, տեխնիկներ ու տնտեսագետներ են տալիս գյուղատնտեսությանը: Նրանց
զգալի մասն ուսումնական հաստատություններն ավարտելուց հետո կոլտնտե-
սությունների, սովխոզների, տեղական կուսակցական ու սովետական որոշ ղե-
կավարների անհոգության, ինչպես և գյուղում կուլտուր-կենցաղային անհրա-
ժեշտ պայմանների բացակայության պատճառով, աշխատանքի է տեղավոր-
վում քաղաքի տարբեր հիմնարկություններում, ձեռնարկություններում ու
կազմակերպություններում:
ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը, կուսակցության
XXIII համագումարը խնդիր են դրել կարճ ժամանակամիջոցում հաղթահա-
րել գյուղատնտեսության ետ մնալը, բարձրացնել գյուղատնտեսական աշխա-
տանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և ապա-
հովել գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը: Դրան կարելի է
հասնել գյուղատնտեսության տարբեր ճյուղերում մասնագետների ռացիոնալ
տեղաբաշխման, գյուղական վայրերում նրանց համար կուլտուր-տեխնիկա-
կան նորմալ պայմանների ստեղծման, գյուղատնտեսական արտադրության
մեջ տնտեսագիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրման
միջոցով: Այս ամենը խոշոր չափով կնպաստի քաղաքի և գյուղի աշխատա-
վորների կուլտուր-տեխնիկական մակարդակների տարբերությունների վե-
րացմանը, կօգնի այդ մեծ գործի լուծման ճանապարհին ծագած դժվարու-
թյունների հաղթահարմանը:



## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՐԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ

Տասնմեկ տարի առաջ Քանաքեռի բարձունքում կառուցված էլեկտրա-
լամպերի գործարանն այսօր դարձել է հանրապետության ու Սովետական Միու-
թյան խոշորագույն և առաջավոր ձեռնարկություններից մեկը, որի արտա-
դրանքն իր որակով չի զիջում արտասահմանյան ամենազարգացած երկրների
արտադրանքին:
Գործարանն անցյալ տարի տվեց 21 միլիոն ռուբլու արտադրանք, իսկ
1970 թվականին կտա 30 միլիոն ռուբլու: Գործարանի կոլեկտիվը փաստորեն
մեծ հաջողություններ է ձեռք բերել արտադրանքի թողարկման ու որակի
բարելավման, ինչպես նաև պլանային մյուս առաջադրանքների կատարման
ու գերակատարման ասպարեզում: Այդ հաջողությունների կարևոր գործոն-
ներից մեկը բանվոր-ծառայողների շրջանում տարվող քաղաքական-դաստիա-
րակչական աշխատանքի խելացի կազմակերպումն է:
1967 թ. սեպտեմբերին գործարանն անցավ հնգօրյա աշխատանքային շա-
բաթի: Այդ կապակցությամբ կազմակերպական բազմաթիվ հարցեր քննարկ-
վեցին կուսկոմիտեի նիստերում, արտադրամասային կուսժողովներում, ղե-
կավար աշխատողների ու մասնագետների խորհրդակցություններում: Կազ-
մակերպվեցին նաև զեկուցումներ ու զրույցներ, որոնց ընթացքում մարդիկ
խելացի առաջարկություններ արեցին՝ նոր միջոցառումը կազմակերպված
իրականացնելու համար:
Նախապատրաստական աշխատանքներն իզուր չանցան: Լամպագործները
կազմ ու պատրաստ անցան հնգօրյա աշխատանքային շաբաթին, հաջողու-
թյամբ կատարելով արտադրական առաջադրանքները: Գործարանի բանվոր-
ների և բանվորուհիների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական
աշխատանքը վերակառուցվեց նոր պահանջներին համապատասխան, դարձավ
ավելի նպատակասլաց ու ներգործուն: 155 ագիտատոր և քաղինֆորմատոր
այժմ բանվորների շրջանում մասսայականացնում են կուսակցության ու կա-
ռավարության որոշումները, պատմում ՍՍՀՄ ներքին և միջազգային դրության
մասին: Նրանք կոլեկտիվի ստեղծագործական ուժերը մոբիլիզացնում են ար-
տադրական պլանների կատարման ու գերակատարման համար:
Ագիտատորներին և քաղինֆորմատորներին օգնում է գործարանի կուս-





digitised by A.R.A.R.@

կոմի գաղափարական հանձնաժողովը, որն ունի քաղուսուցման, դասախոսական պրոպագանդայի, ագիտացիոն և կուլտուր-մասսայական աշխատանքների սեկցիաներ: Գաղափարական հանձնաժողովի նախաձեռնությամբ պարբերաբար հրավիրվում են ագիտատորների խորհրդակցություններ, ուր նրանք կատարում են աշխատանքի փորձի փոխանակում, լսում և քննարկում առանձին ագիտատորների զրույցներն այս կամ այն կոնկրետ թեմաների շուրջ: Այսպես, քննարկվել են լավագույն ագիտատորներ Լ. Գրիգորյանի (ապակու արտադրամասի բովախառնուրդի տեղամասի պետ), Ս. Մեծոյանի (հատուկ լամպերի արտադրամասի բրիգադավար), Ա. Անդրեասյանի (լյումինեսցենտային արտադրամասի վարպետ), Ա. Դալլաքյանի (նորմալ լուսավորման հավաքման արտադրամասի տեխնոլոգ) և մյուսների զրույցները, որոնք ուսանելի շատ բան են տվել խորհրդակցությունների մասնակիցներին:

Ձեռնարկությունում օգտագործվում են քաղաքական-մասսայական աշխատանքի բազմաթիվ ձևեր: Զրույցներ կազմակերպելիս հաշվի են առնվում աշխատողների ցանկությունները: Նրանք հաճույքով են մասնակցում հարց ու պատասխանի երեկոներին, ուր հանդես են գալիս ղեկավար աշխատողներ, աչքի ընկնող մասնագետներ: Այսպես, օրինակ, քաղաքացիների գրանցման կարգի և հակահասարակական տարրերի դեմ մղվող պայքարի ուժեղացմանը նվիրված հարց ու պատասխանի երեկոյին, լամպագործների հարցերին պատասխանում էին 26 կոմիսարների շրջսովետի գործկոմի նախագահ Ն. Ջաքարյանը, շրջդատախազ Ռ. Առուստամյանը, միլիցիայի շրջանային բաժանմունքի պետ Պ. Սողոյանը: Վերջին ամիսների ընթացքում կազմակերպվել են նաև երեկոներ:Խնայիր ժամանակդ, Կոմունիզմ կառուցողի բարոյական կերպարը, Աշխատանքը գեղեցկացնում է մարդուն թեմաներով: Գործարանի աշխատողները ժողովուրդների բարեկամությանը նվիրված երեկոներին ջերմ հանդիպումներ են ունեցել Երևան ժամանած բելոռուսական, ուկրաինական, բուլղարական, հունգարական և այլ պատվիրակությունների, ենթաշեֆ զորամասի ռազմիկների հետ:

Գործարանի կուսկազմակերպությունը հատկապես մեծ ուշադրություն է նվիրում երիտասարդ բանվորների կոմունիստական դաստիարակությանը: Այդ նպատակով հանդիպումներ են կազմակերպվում հեղափոխության, աշխատանքի, քաղաքացիական և Հայրենական պատերազմների վետերանների, գիտության և կուլտուրայի նշանավոր մարդկանց ու արտադրության առաջավորների հետ: Անցած մեկ տարում լամպագործներին այցելել են ակադեմիկոսներ Վ. Համբարձումյանը, Գ. Դավթյանը, Ս. Կարապետյանը, կոմպոզիտորներ՝ Էդ. Միրզոյանը, Ալ. Հարությունյանը, գրողներ՝ Ս. Խանզադյանը, Ս. Կապուտիկյանը, Վ. Նորենցը և շատ ուրիշներ:

Երիտասարդության գաղափարական դաստիարակությանը մեծապես նպաստում են նրանց հաճախակի հանդիպումները Երևանի տարբեր բուհերի հումանիտար առարկաների ամբիոնների պրոֆեսորների ու դասախոսների հետ: 1967 թվականին գործարանում տեխնիկումներ և ինստիտուտներ ընդունվել ցանկացողների համար կազմակերպվեցին նախապատրաստական դասընթացներ: Այժմ գործարանի 550 բանվոր-ծառայողներ առանց արտադրությունից կտրվելու սովորում են տարբեր ուսումնական հաստատություններում: Կուսկոմիտեն վերջերս զբաղվեց սովորող բանվոր-երիտասարդության ուսման առաջադիմության հարցով: Քննարկումը ցույց տվեց, որ նրանց առա-



ջադիմությունն անհամեմատ բարձրացել է: Շաբաթական երկու հանգստյան օրը բանվորներին հնարավորություն է տալիս ավելի մեծ ուշադրություն նվիրելու իրենց ուսմանը:

Այս տարի 400 երիտասարդ բանվորներ նույնպես ցանկություն են հայտնել առանց արտադրությունից կտրվելու ուսումը շարունակել բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում ու գրեթե նույնքան՝ երեկոյան բաներիտ դպրոցներում: Գործարանում ժամանակին կազմակերպվել են նախապատրաստական դասընթացներ:

Գործարանի կոմերիտական կազմակերպությունը մտահոգված է նաև արտադրության մեջ կոմերիտականների և բոլոր երիտասարդների առաջատար դերի ապահովմամբ: ԼԿԵՄ կոմիտեին կից ստեղծվել է տնտեսական անալիզի բյուրո, որն ուսումնասիրում է արտադրամասերում տեղ գտած թերությունների պատճառները, օգնում դրանց ժամանակին վերացմանը: ԼԿԵՄ կազմակերպությունը անհատական աշխատանք է տանում արտադրական նորմաները թերակատարող երիտասարդ բանվորների հետ, օգնում նրանց արտադրական ակտիվության բարձրացմանը:

Ձեռնարկությունում կազմակերպված է կոմերիտական-երիտասարդական 10 բրիգադա, ուր ընդգրկված են 140 երիտասարդ: ԼԿԵՄ կոմիտեում հաճախակի լսվում է երիտասարդ բանվորների ինֆորմացիան աշխատանքի արտադրողականության բարձրացման, նյութերի ու կիսաֆաբրիկատների տնտեսման վերաբերյալ, ամփոփում այդ գործում ձեռք բերված դրական փորձը, մասսայականացնում այն:

Կուսակցական կազմակերպությունը նոր պայմաններում ավելի մեծ նշանակություն է տալիս քաղաքական-դաստիարակչական աշխատանքին ձեռնարկության ղեկավարների մասնակցությանը: Գործարանի դիրեկտոր Ռ. Ամիրյանը դասախոսական խմբի անդամ է և քաղաքական զեկուցումներով հաճախակի հանդես է գալիս կոլեկտիվի առաջ: Դիրեկտորի բոլոր տեղակալները, բաժինների և արտադրամասերի պետերը, գրեթե բոլոր վարպետները նույնպես ներգրավված են պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքում: Գործարանի կուսակցական կոմիտեն սիստեմատիկաբար հետաքրքրվում է, թե նրանք ինչպես են զբաղվում կոլեկտիվի անդամների քաղաքական դաստիարակությամբ:

Բանվորների ու բանվորուհիների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի, նրանց կուլտուրական հանգստի կազմակերպման գործում ակտիվ դեր են խաղում ոչ միայն կուսկոմի գաղափարական աշխատանքի, ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովները, այլև նորարարության և գյուտարարության բյուրոն, նորապսակների ակումբը, երեխաների ուսման հարցով զբաղվող հանձնաժողովը: Կանանց համար ստեղծված են ասեղնագործության, կարուձևի, խոհարարության, տնարարության խմբակներ, որոնցում ընդգրկված են 275 աշխատավորուհի:

Շաբաթական երկու հանգստյան օրվա շնորհիվ բանվոր ծառայողներն ավելի շատ ժամանակ ունեն թերթեր, ամսագրեր և գրքեր կարդալու, իրենց գիտելիքները հարստացնելու և կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար: Ընթացիկ տարում թերթերի և ամսագրերի բաժանորդների թիվն ավելացել է 30 տոկոսով: Գործարանի աշխատողներն ստանում են 650 օրինակ «Правда», 3000 օրինակ «Սովետական Հայաստան», մոտ 2000 օրինակ «Ավանգարդ» և այլն: Այստեղ չկա մեկը, որ թերթ կամ ամսագիր չստանա:



digitised by A.R.A.R.@

Բանվոր-ծառայողների գիտատեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով կուսկոմի նախաձեռնությամբ գործարանում կազմակերպվել է ժողովրդական համալսարան՝ 5 ֆակուլտետով (էներգետիկայի, մետաղամշակման, ապակու սիլիկատների, լուսատեխնիկական և առողջապահության), վարպետների երկամյա դպրոց, իսկ արտադրամասերում՝ առաջավոր փորձի տարածման 6 դպրոց։ Ապակու և հավաքման խոշոր արտադրամասերում միաժամանակ գործում են լեկտորիումները։ Ուսուցման այս օղակներում ընդգրկված են ավելի քան 1.100 բանվոր և ծառայող։

Գործարանի «Գիտելիք» ընկերության խումբը, որը միավորում է 41 դասախոս, նույնպես վերակառուցել է իր աշխատանքը։ Խմբի նախաձեռնությամբ սահմանված է դասախոսությունների միասնական օր։ Բացի դրանից, ընկերության անդամները հանդես են գալիս նաև շաբաթ և կիրակի օրերին կազմակերպվող միջոցառումների ժամանակ։ Նրանք իրենց հրապարակային ելույթներում հատուկ ուշադրություն են դարձնում գործարանի առջև դրված կարևորագույն խնդիրների պարզաբանմանը։ Դասախոսները շարունակում են լայնորեն պրոպագանդել տնտեսական ռեֆորմի և աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմների հետ կապված բազմաթիվ հարցեր։ Դասախոսությունների ընդհանուր թեմատիկայում մեծ տեղ է հատկացվում երիտասարդությանը աշխատանքային և հեղափոխական ավանդույթների, ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելուն։

Կոլեկտիվի գաղափարական դաստիարակման գործում կարևոր դեր են խաղում կուսկոմի՝ հասարակական հիմունքներով գործող քաղլուսկաբինետը և գրադարանը։ Գրադարանն ունի 8.770 կտոր գեղարվեստական և քաղաքական գիրք, ստանում է 55 անուն թերթ ու ամսագիր։ Գրադարանից օգտվում են շուրջ 2.000 ընթերցող։

Հաճախորդների համար նպաստավոր պայմաններ են ստեղծված նաև գործարանի տեխնիկական ինֆորմացիայի գրադարանում։ Այստեղ բանվոր-ծառայողները ծանոթանում են գիտության ու տեխնիկայի ինչպես հայրենական, այնպես էլ արտասահմանյան նորագույն նվաճումներին։ Գրադարանն ստանում է 68 անուն գիտական և տեխնիկական պարբերական։

Հնգօրյա աշխատանքային շաբաթի անցնելուց հետո գործարանի կուսակցական կոմիտեն, դիրեկցիան, արհկոմը և կոմերիտմիության կոմիտեն պատշաճ ուշադրություն են նվիրում նաև կոլեկտիվի կուլտուրական հանգստի կազմակերպմանը։ Յուրաքանչյուր ամսվա սկզբին մշակվում է կուլտուրական հանգստի կազմակերպման միջոցառումների պլան, որը բազմացվում և փակցվում է արտադրամասերում, գործարանի ցուցափեղկերում։

Հանգստյան օրերին գործարանի բանվոր-ծառայողների համար որպես կանոն, կազմակերպվում են էքսկուրսիաներ, կինոնկարների կոլեկտիվ դիտումներ, գեղարվեստական ինքնագործ խմբերի ելույթներ, սպորտմիջոցառումներ, տուրիստական և ալպինիստական արշավներ, թանգարանների, պատկերասրահների և կուլտուրական այլ օջախների այցեր։

Միայն այս տարվա անցած ամիսներին մայրաքաղաքի պատմության և հեղափոխության թանգարաններն են այցելել ավելի քան 400 լամպագործ։ Բանվոր-ծառայողների առանձին խմբեր եղել են Դիլիջանում, Կիրովականում, Ծաղկաձորում, Հրազդանի կիրճում, Թբիլիսիում և Բաքվում։ Մոտ 300 մարդ այցելել են պետական պատկերասրահ, 120-ը՝ Մատենադարան, իսկ կինո-



նկարների և թատերական ներկայացումների կոլեկտիվ դիտումներին մասնակցել են շուրջ 3500 հոգի։ Բնորոշն այն է, որ այդ բոլոր միջոցառումներին մասնակցում են նաև լամպագործների ընտանիքների անդամները։

Հաճախ կազմակերպվող միջոցառումները հետապնդում են կոնկրետ նպատակ. Թբիլիսի և Բաքու կազմակերպված էքսկուրսիաների ընթացքում լամպագործները եղել են հեղափոխության հիշարժան վայրերում, հանդիպումներ ունեցել եղբայրական հանրապետությունների մայրաքաղաքների արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների հետ, կատարել աշխատանքի փորձի փոխանակում։

Երկօրյա հանգստի անցնելու կապակցությամբ վերակառուցվել է գործարանի ակումբի աշխատանքը։ Ակումբին կից երգի-պարի, էստրադային, թատերական, խորեոգրաֆիկ խմբերն այժմ ավելի լավ են գործում։ Գեղարվեստական ինքնագործ խմբեր են ստեղծվել առանձին արտադրամասերում։ Մասսայական միջոցառումներն ակումբում մեծ մասամբ անցկացվում են շաբաթ ու կիրակի օրերը։ Այնտեղ հաճախակի կազմակերպվում են ցուցափեղկեր ու ստենդներ՝ նվիրված նշանավոր իրադարձություններին, հոբելյանական տարեթվերին, սիստեմատիկաբար ցուցադրվում են գեղարվեստական և գիտատեխնիկական ֆիլմեր, քննարկվում կինոնկարներ ու գրքեր։

Հնգօրյա աշխատանքային շաբաթը լայն հնարավորություններ է ընձեռում ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականացման համար։ Սպորտային 11 սեկցիաներում ընդգրկված են 1100 բանվոր-ծառայող։ Հաճախակի են կազմակերպվում ներգործարանային ֆիզկուլտմրցումներ, ընկերական հանդիպումներ։

Հնգօրյա աշխատանքային շաբաթի անցնելուց հետո զգալի չափով բարելավվել են մարդկանց աշխատանքային և կուլտուր-կենցաղային պայմանները։ Այժմ ձեռնարկությունում գործում են կանանց ու տղամարդկանց վարսավիրանոցներ, կենցաղ-սպասարկման արհեստանոցներ, 300-տեղանոց ճաշարան ու մի քանի արտադրամասերում՝ բուֆետներ։ Այդ ամենի շնորհիվ նվազել են հիվանդության պատճառով աշխատանքի չներկայանալու դեպքերը, մարդիկ գործում են ավելի մեծ եռանդով, արդյունավետ։

Ձեռնարկությունում լույս են տեսնում 28 պատի թերթ, գործում են խոտանարարների և առաջավորների տախտակներ, կոմերիտական լուսարձակներ, ցուցադրական ագիտացիայի այլ պարագաներ։ Դրանց միջոցով խրախուսվում են արտադրության առաջավորները և խարազանվում՝ նրանք, ովքեր խոչընդոտում են կոլեկտիվի նորմալ աշխատանքը, թերանում իրենց պարտականություններում։

Բարձրացել է ձեռնարկության ռացիոնալիզատորների և նորարարների ստեղծագործական ակտիվությունը։ Հոբելյանական տարում ներդրված 197 առաջարկություններից ստացվել է 320.000 ռ. պայմանական տնտեսում։ Արդյունքները գոհացուցիչ են նաև ընթացիկ տարում։ Գործարանի ինժեներատեխնիկական աշխատողները պարտավորվել են 1968—1970 թթ. ընթացքում հանդես գալ առնվազն մեկական նորարարական առաջարկությամբ և անհրաժեշտ օգնություն ցույց տալ բանվոր-նորարարներին։ Հասարակական հիմունքներով գործող նորարարության և գյուտարարության բյուրոն, ուր ընդգրկված են 93 ինժեներա-տեխնիկական աշխատող, օգնում է բանվոր-նորարարներին, նրանց ստեղծագործական մտահղացումների տեխնիկական հիմնավորմանը։

Լամպագործները հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանքները կատա-



digitised by A.R.A.R.@

րել են ժամկետից շուտ, հայրենիքին լրացուցիչ տվել մեկ միլիոն 100 հազար ռուբլու արտադրանք։ Նախորդ տարվա համեմատությամբ, գործարանի համախառն արտադրանքի ծավալը աճել է 14 տոկոսով։ Հոբելյանական տարվա 3 եռամսյակներում կոլեկտիվը անընդմեջ նվաճել է մրցանակային տեղեր, իսկ մեծ Հոկտեմբերի 50-ամյակի տոնակատարության՝ օրերին արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական հուշադրոշին։

Երևանյան մակնիշով 220.00, 220.60 տիպի նորմալ լուսավորման լամպերը իրենց որակով լավագույնն են ճանաչվել Միության մեջ, լյումինեսցենտային լամպերի այրման տևողությունը մեկուկես անգամ գերազանցում է համամիութենական, իսկ ավտոմոբիլային լամպերը բավարարում են միջազգային ստանդարտի պահանջները։ Գործարանի արտադրանքը առաքվում է արտասահմանյան 30 երկրներ։

Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում մեկ օրում արտադրվող լամպերի քանակն ավելացել է մոտ 30 հազարով։ Կոլեկտիվը պետական պլանը կատարել է 103 տոկոսով, երկրին տալով 21,3 միլիոն ռուբլու բարձրորակ լամպ։ Լրացուցիչ տրվել է շուրջ 100 հազար ռուբլու արտադրանք։

Կոլեկտիվը հաջողությամբ է կատարել նաև տնտեսական նոր ռեֆորմի կարևորագույն պահանջը՝ արտադրանքի իրացման պլանը։ Պլանից դուրս իրացվել է 60 հազար ռուբլու արտադրանք։ Այժմ գործարանում լայն մրցություն է ծավալվել հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, մեծ Լենինի ծննդյան 100-ամյակը արժանավայել դիմավորելու համար։

ԱԼԵՔՍԱՆՅԱՆ Ա. Վ.
ՍԱՂԱԹԵԼՅԱՆ Ս. Գ.
ՂԱԶԱՐՅԱՆ Պ. Ա.

# ԿՈՄՍՈՄՈԼԻ ԱԿՈՒՄԲԸ

(ԷՋԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ)

## ԱՄԻՐԽԱՆՅԱՆ Հ. Ա.

Կոմսոմոլի ակումբի շենքը հիմա էլ կանգուն է Աբովյանի և Պուշկինի փողոցների անկյունում։ Այժմ այնտեղ տեղավորված է պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեն։ Երիտասարդական ակումբ քսանական թվականներին, ապա՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիության Կենտկոմի վարչական շենք... Իրոք, երջանիկ կենսագրություն ունի այդ շենքը։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման մարտաշունչ օրերից հինգ տարի էր անցել։ Հանրապետությանը վերականգնող ձեռքեր էին պետք։ Անհրաժեշտ էր մասսայական եռանդ, նախաձեռնություն բոլոր փոքր ու մեծ գործերում։

Ժողովրդի հեղափոխական խանդավառությունը ղեկավարում, հունի մեջ էր դնում Հայաստանի կոմունիստական կուսակցությունը։ Արարատյան դաշտից մինչև Սյունիք, գեղատեսիլ Սևանի ափերից մինչև քառագագաթ Արագածի փեշերն ու հովիտները, մինչև Գուգարաց աշխարհ— ամենուր համախմբվում էին աշխատավոր մարդկանց ուժերը, ստեղծագործական ունակությունները։ Անտարակույս վերաշինության այդ մեծ գրոհում երիտասարդությունը վճռական դեր էր խաղում։

Ամեն ինչի պակաս էր զգացվում այն տարիներին։ Բայց ամենից շատ ժամանակը չէր հերիքում։ Այս օրերի հեռուներից որքան էլ ապատություն տանք մեր երևակայությանը, կրկին կդժվարանանք հստակ պատկերացնել, թե ինչպես ծով կարիքի մեջ ապրող մարդիկ աշխատում էին ուժերի գերլարման լարումով և միաժամանակ սովորում... Իսկ ե՞րբ, ե՞րբ էր հանգստանում, նոր կյանքի քաղցրությունը ճաշակում քսանականի երիտասարդ սերունդը, որը ոչինչ չէր տեսել տառապալից մանկությունից պատ։

Հայաստանի մայրաքաղաքում, մյուս քաղաքներում ու գյուղերում, որտեղ էլ շրջելիս լինեիր, առաջինը քեզ կողջունեին լենինյան խոսքերը՝ *Սովորել, սովորել, սովորել։* Եվ սովորում էին ամենքը՝ ամեն տեղ։ Աշխատանքի, հանգստի բոլոր պահերին թռիչքի միայն մի գլխավոր ուղեծիր կար՝ *Սովորել։*

Հայաստանի կոմերիտմիությունն այդ մեծ գործի առաջին դիրքերում էր։

Հեղափոխական ռոմանտիկայի, խիզախ ծրագրերի իրագործման, ստեղծագործության և ուսման չտեսնված ծարավի տարիներ էին։ Երիտասարդ մարդը անսահման հպարտ էր, որ բանվոր էր, միևնույն է աշխատում էր Երևանի մեխանիկական գործարանո՞ւմ, նորաստեղծ կարբիդի գործարանո՞ւմ, տպարանո՞ւմ, թե երկաթուղում։ Հպարտ էր նա, երբ ուշ երեկոյան վերադառնում էր Զանգվի ձորից՝ Երևանի առաջին հիդրոշինի փոշին իր թավ հոնքերին ու թարթիչներին։ Հպարտ էր, երբ Քանաքեռ տանող ճանապարհի շրջակայքը կանաչապատելու շաբաթօրյակներից խոնջացած տուն էր դառնում, որ մի քիչ շունչ քաշելուց հետո գնա բանվորական ֆակուլտետ, լիկկայան գնա, կամ ակումբ։

Պատանեկությունը բարի նախանձով էր նայում բոլոր նրանց, ովքեր կարմիր աստղակիր կոմունարկաներ ունեին, կարմիր ժապավենավոր շինելներ էին հագնում։ Ու երբ տեսնում էին նրանց կուռ շարքերը փողոցով խրոխտ անցնելիս, հապարավոր շուրթեր կրկնում էին թևավոր խոսքերը՝ «Կարմիր բանակ, արթուն պահակ... թուր ու դանակ կարմիր բանակ...», իսկ երբ պատահում էին ռազմական դպրոցների ուսանողները, նրանց շուրջը պատանիների շարքերն էին խտանում՝ ասես հավաքվելով հայրենասիրական միտինգի։

Երիտասարդության մեծամասնությունն անկուսպ ձգտում էր հասարակական, քաղաքական աշխատանքի։ Գուցե հենց դրանով պիտի բացատրել հասարակագիտական ու քաղաքական գիտելիքների ծարավը։ Քչերն էին ընտրում այսպես կոչված «մաքուր գիտությունների» բնագավառը։

Քսանական թվականներին Հայաստանի լենինյան կոմերիտմիության Կենտկոմը հարկադրված եղավ մոբիլիզացիոն կարգով «Համալսարանի որոշ ֆակուլտետներում կոմերիտական կորիզ



digitised by A.R.A.R.@

ապահովելու» նպատակով երիտասարդ ուսանողներ ուղարկել կենսաբանական, քիմիական ֆակուլտետները: Երևանի կոմերիտական ակտիվից շատերը մտան լսարանները՝ ունկնդրելու ժամանակի նշանավոր գիտնականներ Ղամբարյանի և Չրբաշյանի, Հովհաննիսյանի, Պողոսյանի, Նավակատիկյանի, Աճառյանի, Տոնյանի դասախոսությունները: Բայց նրանք զուգընթաց սովորեցին նաև Հայաստանի մեծ կառույցի աղյուսները շարելու և այդ գործում երիտասարդ մասսաների խանդավառությունը ղեկավարելու արվեստը:

Կոմսոմոլի ակումբը, մանավանդ երեկոները, իրենից ներկայացնում էր երիտասարդ մարդկանց մի խառնարան, որտեղ նրանք ոգեշնչում, խրախուսում, փորձ էին հաղորդում միմյանց, համատեղ սովորում, հաղորդակից դառնում նոր միայն վարգացող սովետական կուլտուրային ու արվեստին, այն ամենին, ինչ նոր էր արմատավորվում կյանքում ու կենցաղում:

*ԱՌԱՋԻՆ ՌԱԴԻՈԲԱՐՁՐԱԽՈՍԸ*

Նոր էր ավարտվել Քանաքեռի ռադիոկայանի շրջապատի ծառատունկը: Այդ կայանի գլխավոր ինժեները երիտասարդ Կոստանդին Ավետիսյանն էր, իսկ նրա եղբայրը՝ Արտաշես Ավետիսյանը տպարանի գրաշարներից էր, առաջ քաշված կոմերիտական ղեկավար աշխատանքի: Նրան ճանաչում էին ամենուր, ուր կար երիտասարդություն: Նրան սիրում էին բոլորը, որովհետև և՛ խելոք էր, և՛ համեստ, վգայուն էր և հոգատար ուրիշների նկատմամբ:

Ահա ընկեր Մինասյանը կարգի է գցում մեր ակումբի առաջին ռադիոընդունիչը: Այսօր դահլիճում առաջին անգամ ռադիոհամերգ է լինելու,— նկատեց մեկը:

Այդ պահին մի կոմերիտական միջանցքում հայտարարեց, որ ռադիոհամերգն սկսվում է: Դահլիճը լեփ-լեցուն էր: Հարյուրավոր երիտասարդներ անհամբեր, լռությունը լարած, սպասում էին: Բեմի վրա էր մեխանիկական գործարանի ավագ ինժեներ Մինասյանը: Նրան լավ գիտեին քաղաքում: Կարճահասակ, գիրուկ, դյուրաշարժ մարդ էր նա, վայելուչ հագնված, մըշտափայլ դեղնավուն գետրերով, գլխին ինժեների հնաձև գլխարկ, ճակատին երկու մուրճիկներ՝ խաչավորված:

Սիրելի ընթերցող. այս տողերը հնամոլության գովք չեն, այլ այն առաջին քայլերի նկարագիրը, որոնք աստիճանաբար մեծացան և հասցրին էլեկտրոնների, կիբեռնետիկայի, հաշվիչ մեքենաների մեր ժամանակաշրջանին, երբ եթերային ձայները կարող են հնչել և՛ տիեզերքի անհունում, և՛ ձեր գրպանում:

Ահա բեմի վրա, սեղանին դրված է ռադիոբարձրախոսը՝ «Рекорд» մակագրությամբ:

Բարձրախոսին միացած լարերը կգուշությամբ կարգի բերելով, ինժեներ Մինասյանը բեմ է բերում ռադիոընդունիչը, արագ շարժումներով ետ է քաշում բեմի հետնապատը ծածկող վարագույրները:

Բարձրախոսից հնչում է հեղափոխական հանրածանոթ երգը.

Смело мы в бой пойдем.<br>
За власть Советов<br>
И как один умрем<br>
В борьбе за это...

Բաց պատուհաններից փողոց է խուժում Մոսկվայից Հայաստանի լեռնաշխարհը հասած հեղափոխական խրոխտ երգը...

*ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ՏԵՆԴ*

Պատկերացրեք կարճ շալվար հագած, սպիտակ բլուզավոր երկու պատանի ախոյանների, ոսկեհուռ դիպակով ծածկված բազկաթոռների մեջ նստած, շախմատային գոտեմարտի բռնված:

Նախ մի՛ զարմանաք: Այդ շքեղ կահույքը սովետական իշխանության հաստատման առաջին օրերին *բռնագրավված* է Երևանի ինչ-որ բուրժուայի ընդունարանից և, համապատասխան մարմինների կարգադրությամբ, հատկացված է երիտասարդական ակումբին: Եվ ահա ախոյաններն այդ *պալատական* բազմոցներում խորասուզված՝ ծրագրում են շախմատային քայլերը:

— Ալյոխինը գինդերմատի անգերազանցելի վարպետ է,—կատակում է խաղացողների շուրջը հավաքվածներից մի երիտասարդ, խրախուսաբար շոյելով ախոյաններից մեկի ճակատը:

— Ձեռքերդ ու լեզուդ մի քիչ կարճ պահիր, թող տեսնենք ինչ ենք անում,—բարկանում է շախմատիստը:

— Պապդ Ապարանի իր պալատում էդպիսի բազկաթոռի մեջ նստած է մտածել...

Ընդհանուր ծիծաղ է պոռթկում:

Ժխորի մեջ շարունակվում է մարտը շախմատի տախտակի վրա: Այս զույգը մենակ չէ: Սենյակում մարտեր են տեղի ունենում հինգ, վեց տախտակների վրա:

Գրադարանում երկար հերթ է գրված շախմատի տախտակներ ու ֆիգուրներ ստանալու համար: Ինչպես ձեռքից-ձեռք են անցնում գրքերը, այնպես էլ արագ մաշվում են հինավուրց մարտախաղի ֆիգուրները:

Շախմատային տենդ է Երևանի երիտասարդական ակումբում և շատ շատերը ուշ տուն դառնալով, դժվարությամբ են փակում աչքերը, իսկ քնած ժամանակ էլ երազում տեսնում շախմատային արքաներին՝ Կապաբլանկային, Ալյոխինին, որոնց մասին միայն լսել են, իսկ ավելի երջանիկները տեսել են միայն նրանց լուսանկարները:

Ո՞վ գիտե, գուցե այս տենդի մեջ էլ ստեղծվեց մասսայական սեր հաշվարկային մտածողության ու տրամաբանության նկատմամբ, պատվաստվեց խոհամարտի ճաշակ, որը մարզում է ուղեղը, կոփում բնավորությունը: Թող ներվի մեզ, եթե ինչ-որ հաջորդականություն որոնենք քսանական թվականներին երիտասարդության շրջանում լայնորեն տարածված շախմատային տենդի ու այն փաստի մեջ, որ համաշխարհային շախմատի թագն այսօր արժանավորապես կրում է մեր Տիգրան Պետրոսյանը և, որպես այս ամենի խորհրդանիշ, շուտով Երևանում վեր է խոյանալու շախմատի տան շենքը:

*ՆՈՐԻՑ ԾԱՂԿԵՑ ԱԿԱՑԻԱՆ...*

Այդ գարնանն էլ, երբ բացվեցին ակումբի բակի ակացիայի առաջին կապտաճերմակ ծաղիկները, մեզ մոտ եկավ մի երիտասարդ:

Առավոտ էր: Գալիս ու գնում էին միայն գրադարանի հաստ ու կենտ հաճախորդներ: Նրանց ընդունում էր և ճանապարհում գրադարանավարը:

Երբ բակի դուռը բացվեց, և ներս մտավ հիշյալ երիտասարդը, կարծում էինք, թե գրադարանի հերթական հաճախորդն է: Բայց... նա արտաքնապես օտարոտի էր, ամենևին նման չէր ակումբի հաճախորդներին: Կոկիկ ու վայելուչ հագնված էր, փողկապով, կոստյումը եվրոպական էր, կոշիկները նորաձև: Ոչ, նա սովորական հաճախորդ չէր:

Վերև բարձրացավ, կիրթ շարժումներով բաց արեց դուռը: Մենք պատուհանից հետևում էինք եկվորին: Ընդառաջ գնացի նրան:

— Ի՞նչ կկամենայիք:

Լայն, ցցուն ճակատ ուներ: Աչքերն այնպե՜ս վճիտ ու խոսուն էին...

— Սխալված չե՞մ, երիտասարդական ակո՞ւմբ է սա:

— Այո՛:

— Վարչության անդամներե մեկու կրնա՞մ տեսնիլ:

— Ի՞նչ կկամենայիք, խնդրեմ:

Երիտասարդը գրպանից հանեց մի թուղթ և մեկնեց.

— Կարդացեք, խնդրեմ:

Հայաստանի լուսավորության ժողովրդական կոմիսարիատից էր: Ժողկոմ Ասքանազ Մռավյանն առաջարկում էր ակումբի առաջին հարկի սենյակներից մեկը ժամանակավորապես հատկացնել արտասահմանից հայրենիք եկած քանդակագործ Արա Սարգսյանին՝ որպես աշխատանոց օգտագործելու համար:

Սովետական Միության ժողովրդական նկարիչ Արա Սարգսյանի բազմաբեղուն կյանքում սա մի աննշան ակնթարթ է, իհարկե: Բայց մեծերի կյանքի ամեն ակնթարթում էլ մեծ խորհուրդ կա: Երջանիկ պատահականությունը գուցե նրան բերեց Երևանի երիտասարդական ակումբը այն դժվարին տարվա գեղեցիկ գարնանը...

Հետևյալ օրը քանդակագործը մի քանի ընկերների օգնությամբ ակումբ բերեց քանդակագործական պիտույքներ, ընդօրինակման նմուշներ, ինչ-որ հիշատակների բեկորներ, կտավ, մարմար:

Եվ աշխատում էր նա անխոնջ, երբեմն ակումբի այցելուների հիացած հայացքների ներքո, երբեմն փակված իր մտահղացումների ներաշխարհում:

Երևանի երիտասարդությունը տեսնում էր, թե ինչպես են բարձրանում առաջին հիդրոկայանների պատերը: Ինքն էր քարը քարին դնում: Ամեն առավոտ մի վիհ էր ծածկված լինում, մի ավերակված տան հետքերն էին անհետանում, ուրիշ փողոցի մի կտորն էր կարգավորվում: Աբովյանից վեր, Քանաքեռի բլրալանջին մի քանի նորատունկ ծառ էր ավելանում: Երիտասարդներն ակումբ գալով, տեսնում էին, թե ինչպես է ձևավորվում իրենց հասակակիցը, որ հայրենիք էր եկել իր ստեղծագործություններով այն կարդարելու համար: Դեռ հուշարձաններ ու կոթողներ չկային Երևանում, բայց արդեն ելնում էին նրանք, ովքեր պիտի ստեղծեին մայրաքաղաքի գեղեցկությունը: Ու նրանցից մեկն իր փոքրիկ, կիսախավար արվեստանոցում աշխատում էր և առաջ շարժվում երկրի հետ:

Եվ գիտե՞ք, երիտասարդ մարդու ձևավորման ինչպիսի՜ գործոններ էին առաջին հայացքից հասարակ թվացող այս փաստերը:

— Կուլտուրայի տանը բացվել է Սովետական Հայաստանի նկարիչների առաջին ցուցահանդեսը, գնանք դիտելու, ասում էր ակումբի հաճախորդներից մեկը:

— Երեկ չափազանց հետաքրքրական դիսպուտ տեղի ունեցավ պետական դրամատիկական թատրոնում,—պատմում էր մի արվեստասեր: Դիսպուտը թատրոնի վարագույրի շուրջն էր ,որ նկարել է Մարտիրոս Սարյանը: Զարմանալին այն էր, որ նիհիլիստի մեկը բեմ էր բարձրացել և ինչ-որ տափակություն էր համարում այդ սքանչելի ստեղծագործությունը:

Այդ վայ-քննադատին բանաստեղծ Եղիշե Չարենցը պատասխանեց մի քանի դիպուկ և ոչընչացնող խոսքերով: «Մենք մեղավոր չենք, որ վայ-քննադատի կարճատես աչքերին ամեն ինչ տափակ է երևում»:

Երիտասարդներն այս խոսքերի վրա բարձր քրքջացին և ուրախ խմբով մտան կուլտուրայի տան շքամուտքից:

Շուտով իրենց ստեղծագործությունների ցուցահանդեսը կազմակերպեցին նաև երիտասարդական ակումբի ինքնուս նկարիչները: Վրձիններն, իհարկե, անվարժ էին, ցածր էր ստեղծագործությունների գեղարվեստական արժեքը, բայց դրանց վառվռուն գույներն առնված էին Հայաստանի բնությունից, վերաշինվող Երևանից:





digitised by A.R.A.R.@

Գեղեցկի, սիրո այս շիկացած մթնոլորտում շատ պատանիների մեջ կարթնեց իսկական կոչման կգացմունքը, և ճամփաները նրանց տարան դեպի նոր կազմակերպված գեղարվեստական տեխնիկումը, որտեղ համախմբվում էին հայ նկարիչները՝ ուսումնածարավ երիտասարդությունից արվեստի գործիչներ պատրաստելու: Գեղարվեստական ուսումնարանի դասատուներից մեկը եղավ Արա Սարգսյանը: Երիտասարդական ակումբի իր ժամանակավոր արվեստանոցի հուշը գուցե և լիովին խամրել է նրա բազմահարուստ մտապատկերների ծովում, բայց երիտասարդ քանդակագործի աշխատանքը ակումբում անջնջելի հետք թողեց:

*ԿԱՊՈՒՅՏ ԲԼՈՒԶԱՎՈՐՆԵՐ*

Այդպես էին կոչվում այն ժամանակվա բոլոր ակումբներում գործող *կենդանի լրագրի* մասնակիցները: *Կենդանի լրագիրը* քաղաքական հրատապ ագիտացիայի թատերականացված ձև էր: Լրագրի յուրաքանչյուր համար նվիրվում էր ընթացիկ քաղաքականության կոնկրետ հարցերի:

Պատկերացրեք պատանիների և աղջիկների մի խումբ դահլիճի որոտալի ծափահարությունների տակ բեմ է գալիս, բարձր բռնած Զանգվի ձորում կառուցվող հիդրոկայանի և կարբիդի կամ բամբակազտիչ գործարանների մակետները: Կոլեկտիվ արտասանությամբ հնչում են հակիրճ նախադասությունները: Կապույտ բլուզավորները պատմում են արդյունաբերական առաջին ձեռնարկությունների շինարարության ընթացքի մասին, դրվատում անձնվեր աշխատանքը, գովում առաջավորներին, չխնայելով ձաղկում նրանց, ովքեր չեն ընթանում ժամանակի հետ, չեն մասնակցում հասարակական հանրօգուտ աշխատանքին:

Կարճ ընդմիջում և կրկին բեմահարթակ են գալիս կապույտ բլուզավորները: Այս անգամ նրանք կոչ են անում՝ «երեսներս դեպի գյուղ, օգնել գյուղի երիտասարդությանը՝ հաջողությամբ նախապատրաստել և անցկացնել գարնանացանը»:

Տեքստը հակիրճ է, դիպուկ, մեծ մասամբ չափածո:

Փոխվում է պատկերը: Բեմի հետևից լսվում է կլառնայի ու դհոլի կիլ նվագը: Բեմ է մտնում երիտասարդների կլոր պարի շղթան ու կրնգում դահլիճում և բոլոր հանդիսականների հոգում: Այն ժամանակները նոր էր վերակենդանանում հայկական ժողովրդական պարը, որը, սակայն, երիտասարդության շրջանում տարածվում էր հուժկու թափով: Այդ գործում մեծ երախտիք ունի Վահրամ Արիստակեսյանը:

Կոմսոմոլի ակումբում, կյանքի հետ անխզելիորեն կապված գաղափարական աշխատանքի մթնոլորտում, ձևավորվում էին երիտասարդության հակումները: Կապույտ բլուզավորներից ոմանք ձգտում էին դեպի բեմ և բռնում դերասանական արվեստի դժվարանց առապարները:

Ընթերցո՛ղ, գուցե քեզ բախտ է վիճակվել տեսնել մեր մեծ վարպետի՝ Ավետիք Իսահակյանի կյանքին նվիրված նշանավոր կինոնկարը, կամ Պոեմ Հայաստանի մասին, կինոնովելը: Այդ բարձրարժեք ֆիլմերի ստեղծողներից էր նաև նրա ռեժիսոր Վիլյամ Հայկազյանը: Այն ժամանակ Վիլյամ չէր նրա անունը: Ծնողները նրան Խաչիկ էին կոչել, Խաչատուր... Ծնվել էր նա Արևմտյան Հայաստանի Հայոցձոր գավառում, ճաշակել էր որբության ամբողջ դառնությունը և երկրորդ ծնունդն ապրել 1920 թվականին, սովետական իշխանության հաստատման օրերին: Հայկազյանը առաջին կոմերիտականներից մեկն էր, որ ինքնամոռաց սիրեց բեմը և լիովին նվիրվեց թատրոնին:

Քայլում էր նա Երևանի փողոցներով ու մըտքում կրկնում Օթելլոյի և Համլետի մենախոսությունները: Նա անգիր գիտեր Շեքսպիրի հայերեն թարգմանված ողբերգությունների շատ մենախոսությունները:

Արտահայտիչ դեմքով որևէ ծանոթ տեսնելիս, նա երկար զննում էր դիմագծերը, ապա ափսոսանքով նկատում.

— Ինչո՞ւ բնությունն ինձ արտիստական դեմք չպարգևեց...

Նա սիրեց թատրոնը, դրամատուրգիան և սեփականացնելով հանճարեղ դրամատուրգի անունը, կոչվեց Վիլյամ Հայկազյան: Հետո նա դարձավ շրջանային թատրոնների եռանդուն կազմակերպիչը և իր գեղեցիկ կյանքն ավարտեց կինոյում, լինելով Հայֆիլմի մի շարք բարձրարժեք փաստագրական նկարների ռեժիսոր:

Ես չափազանց հակիրճ պատմեցի միայն Վիլյամ Հայկազյանի մասին, իսկ քանի՜-քանի հայկազյաններ տառապալից մանկությունը հաղթահարելով, անցան սովետական պատանեկության առաջին ոսկե շրջանը, ապա մասնակցեցին հայ ժողովրդի պետականության վերականգնման, Հայաստանի նորաստեղծ էկոնոմիկայի զարգացման, մեր հնավանդ ժողովրդի կուլտուրական գանձերը պահպանելու և բազմապատկելու մեծ գործին:

Երևանի երիտասարդական ակումբն այդ սերնդի դաստիարակության դպրոցներից էր:

*ՍՊԻՏԱԿ ԵՐԱԶ*

Բացվում է վարագույրը: Բեմի վրա կանոնավոր շարված են բազմաթիվ պատանիներ: Ոչ նրանց եռաշղթան է շարժվում, ոչ էլ դահլիճում նստածներից ու կանգնածներից որևէ մեկը:

Լարված սպասումի պահ է:

Բայց ահա շարժվում է կողքի վարագույրը, և առաջաբեմ է գալիս երկարահասակ, միջին տարիքի մի մարդ:—Դեմուրյանն է, կոմպոզիտոր



Դեմուրյանը,—շշուկով իրար են հաղորդում հանդիսականները:

Նա բարձրացնում է ձեռքը և դահլիճում նըստածներից շատերը գուցե առաջին անգամ լսում են իրենց մայր ժողովրդի խմբերգը:

Հնչում է երգը՝ քառաձայն երանգներով, և լեփ-լեցուն դահլիճը մտովի միանում է դրան:

Հետո դադար, ապա կորեղ հնչում է ավանդական *Հորովելը:*

Ի՞նչ պատահեց: Երգչախումբն իր տարերքի մեջ է, իսկ դահլիճի ետևի դուռը ծեծում են:

— Որտե՞ղ է պահակը,—մտքումս պայրանում եմ:

Կտրվում է Հորովելի թելը:

— Վառեք լույսերը, բացեք դուռը, սա ի՞նչ անկարգություն է,— վրդովվում է Դեմուրյանը:

Ամբողջ դահլիճում դժգոհության ալիք է բարձրանում, բոլորը ետ են շրջվում: Ոմանք վազում են դեպի դուռը, որն արդեն բացվել էր:

— Մենք էլ ենք ուզում լսել, մեղավոր չենք. բանֆակի պարապմունքները նոր վերջացան,— դահլիճով մեկ գոռում է խմբի ղեկավարը՝ հաղթանդամ մի երիտասարդ:

— Տո, տնաշակ, կուլտուրայի շորշոփները ե՞րբ են քեզ հասնելու, բա համերգը կխանգարե՞ն,—իրեն արդարացնելու համար մտնողների առաջն է կտրում պահակը:

Բեմն արագ դատարկվեց: Չորս երիտասարդ դաշնամուրն առաջին պլան քաշեցին: Դահլիճը խուլ աղմկում է մինչև այն ժամանակ, երբ վարագույրի հետևից հայտնվում է ամբողջովին սպիտակ հագնված մի աղջնակ: Փոքր է նա, հազիվ յոթ-ութ տարեկան: Մանկական նազանքով մոտենում, նստում է աթոռին: Դահլիճը լցվում է մանկական ռիթմիկ մի եղանակով.. Նվագն ավարտված է: Ծափահարում են փոքրիկ դաշնակահարուհուն՝ այսօրվա վաստակավոր արտիստուհի Թամարա Դեմուրյանին:

Հայրն ամեն օր նրան բերում էր Երևանի երիտասարդական ակումբը՝ դաշնամուրի վրա դասեր տալու: Կոմպոզիտորը նոր էր փոխադրվել Երևան, տանը գործիք չկար:

*ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀՈՐԴՈՒՄ ԵՆ, ՈՐ ՄԻԱՆԱՆ*

— Ինձի Բաղդիկ կըսեն... — սրախոսում են տղաները մեծ երգիծաբանի խոսքերով, ասում են ու բերնե-բերան տարածում:

— Սա ժամացույցին պատմությունն ալ չլմընցավ...—կեղծ վրդովմունքով արտասանում է մեկ ուրիշը, իրեն դնելով խեղճ Աբիսողոմ աղայի, իսկ շատախոս ընկերոջը՝ Մանուկ աղայի տեղը:

Մի ժամանակ եղավ, երբ Հակոբ Պարոնյանի խոսքը հնչում էր գրեթե ամեն օր և ամենուր: Երիտասարդական ակումբի բեմում ներկայացվեցին նրա մի շարք պիեսները: Բեմադրության նախաձեռնողները եղան Մոսկվայի՝ Հայաստանի կուլտուրայի տանն առընթեր գործող թատերական ստուդիայի սաները:

Ակումբի ռեժիսորն էր մեր թատրոնի երախտավորներից մեկը՝ Տիգրան Շամիրխանյանը: Չափազանց համեստ էր նա, այդ փոքրամարմին, կարճահասակ մարդը, որի մեջ, սակայն, կուտակված էին վիթխարի եռանդ, անսպառ աշխատասիրություն:

— Պիտի գործել այնպես, որ երիտասարդությունը սիրի թատրոնը,—շարունակ կրկնում էր նա:—Մեր նպատակն է այնպես դնել գործը, որ ակումբի բեմում առաջին ներկայացումը դիտած պատանին կամ աղջիկը, դառնա պետական դրամատիկական թատրոնի մշտական հաճախորդը: Սա մեր դրամխմբակի առաջին պատվիրանն է, ջանացեք, որ բոլորը սիրեն թատրոնը:

Տիգրան Շամիրխանյանն ինքը երիտասարդ էր, բայց բեմական գործունեության բեղմնավոր ուղի անցած:

— Հատակ արտասանեցեք բեմից: Ով չի կարդացել հայ ժողովրդի գրական գոհարները, թող լսի դրանք իր ընկերների շուրթերից: Դա իմաստությունը տարածելու լավագույն միջոց է,—սովորեցնում էր նա իր սաներին:

— Տերյանի ստեղծագործություններից ի՞նչն է ամենից շատ դուր գալիս քեզ,—հարցնում էր նա դրամխմբակի անդամներից մեկին:

— «Մթնշաղի անուրջները» շարքը:

— Հապա որևէ բան արտասանիր այդ շարքից,—խրախուսում էր ռեժիսորը:

— ...Աննշմար, որպես քնքուշ մութի թև...

— Սպասիր,—ընդհատում էր Շամիրխանյանը,— ասա տերյանական նրբությամբ, մթնշաղի անուրջի պես թափանցիկ, հասկացա՞ր:

Հետո, հանկարծ, ինչ-որ գյուտ արած մարդու պես, կդառնար իր շուրջը համախմբված կոմերիտականներին.

— Վաղը պետական թատրոնում բեմադրում են Չարենցի «Կապկապ թամաշան»: Կարդացե՞լ եք: Գնանք միասին դիտենք:

*ՏԵՍԱՆԵԼԻ ՈՒՐՎԱԳԾԵՐ*

Մամուլում կարդացի, որ արդեն հիմնադրված է Երևանի երիտասարդության կուլտուրայի պալատը: Այն պատրաստ պիտի լինի յոթանասուն թվականին: Հայաստանի մայրաքաղաքի երիտասարդության առաջին ակումբի մասին այս ակնարկը գրելիս հոգու աչքերով տեսնում եմ այդ հոյակերտ պալատի շենքը՝ Երևանի կապույտ երկինքը մխրճված: Տեսնում եմ կուլտուրայի այդ պալատն իր բազմաթիվ սենյակներով ու դահլիճներով, որտեղ եռում է ստեղծագործ աշխատանքը, ուր հնչում է նույն լենինյան կոչը՝ *Սովորել, սովորել սովորել:*

Ի՜նչ իմաստալից, գեղեցիկ հաջորդականություն է սա, լավագույն ավանդույթների էստաֆետային փոխանցում:

digitised by A.R.A.R.@

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌԱՎԵԼ ԲԱՐՁՐ ՏԵՄՊԵՐ

*Կոմունիստական շինարարության ժամանակակից էտապում առաջնակարգ նշանակություն է ստացել գյուղատնտեսության զարգացման տեմպերի բարձրացման պրոբլեմը: Գյուղատնտեսության ընդհանուր վերելքն ապահովելու համար առանձնահատուկ նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումները, որոնց կենսագործմամբ խոշոր քայլ կատարվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, մթերումների սիստեմի կատարելագործման, արտադրության կառավարման մեջ տնտեսագիտական մեթոդների ավելի լայն կիրառման, կոլտնտեսությունների ու սովխոզների և դրանց աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ:*

*Մարտյան պլենումի որոշումների հիման վրա ձեռնարկված միջոցների արդյունավետության մասին են վկայում հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների 1965—1966 թվականների արտադրական ու տնտեսական գործունեության արդյունքները: Այսպես, 1964 թվականի համեմատությամբ, հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1965 թվականին աճեց 17,1 տոկոսով: Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, նախորդ տարիների համեմատությամբ, կոլտնտեսություններն ու սովխոզները 1966 թվականին հեկտարից ավելի շատ հացահատիկ ստացան (12,3 ցենտներ):*

*Միայն բուսաբուծության և անասնաբուծության արտադրանքի պետական մթերման գների բարձրացման շնորհիվ հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները 1966 թվականին ստացան 14,6 միլիոն ռուբլի: Մարդօրվա դրամական վարձատրությունը մեկ տարում ավելացավ 4 տոկոսով:*

*Հանրապետության գյուղատնտեսական արտադրության մեջ մեծ է կոլտնտեսությունների դերը: 1966 թվականի տվյալներով կոլտնտեսությունները մշակում են հանրապետության գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության 55,2, վարելահողերի՝ 62,3 տոկոսը և մեծ տեսակարար կշիռ ունեն գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածություններում:*

*1966 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության 69,6, տեխնիկական կուլտուրաների՝ 78,3, կարտոֆիլի ու բանջարա-բոստանայինի՝ 59,3 և կերայինի՝ 54,1 տոկոսը բաժին էին ընկնում կոլտնտեսություններին:*



*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեծ է նաև կոլտնտեսությունների տեսակարար կշիռը պետական մթերումների մեջ:*

Կոլտնտեսային արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետության պետական մթերումների մեջ (տոկոսներով)

| | Տարիներ | | | |
|---|---|---|---|---|
| | 1960 | 1964 | 1965 | 1966 |
| *Հացահատիկ* . . . . . . . | 98,0 | 57,8 | 30,0 | 32,0 |
| *Ծխախոտ* . . . . . . . | 92,8 | 68,9 | 66,3 | 65,5 |
| *Շաքարի ճակնդեղ* . . . . . | 87,9 | 87,1 | 86,0 | 87,6 |
| *Կարտոֆիլ* . . . . . . . | 82,5 | 48,6 | 48,5 | 39,4 |
| *Բանջարեղեն* . . . . . . | 68,5 | 58,4 | 59,7 | 66,0 |
| *Խաղող* . . . . . . . | 72,3 | 59,3 | 54,4 | 58,5 |
| *Պտուղներ* . . . . . . . | 25,8 | 27,6 | 19,1 | 19,1 |
| *Անասուն և թռչուն* . . . . . | 75,2 | 49,7 | 49,0 | 46,0 |
| *Կաթ* . . . . . . . . | 72,3 | 54,1 | 49,2 | 48,6 |
| *Ձու* . . . . . . . . | 53,1 | 41,4 | 35,8 | 30,0 |
| *Բուրդ* . . . . . . . . | 83,3 | 61,1 | 61,8 | 59,2 |

*Աղյուսակի տվյալները վկայում են, որ խաղողի, ծխախոտի հումքի, բանջարեղենի և շաքարի ճակնդեղի մթերումների մեջ կոլտնտեսությունների տեսակարար կշիռը 58,5—87,6 տոկոս է: Անասնաբուծական արտադրանքի մթերումների մեջ (բացի բրդից) սովխոզներին բաժին է ընկնում 50 տոկոսից ավելին: Հայտնի է, որ սովխոզներում ապրանքայնության մակարդակը բարձր է. այդ է պատճառը, որ անասնաբուծական մթերքների մթերումների մեջ դրանց տեսակարար կշիռն զգալի է:*

*Վերջին տարիների ընթացքում մեծ աշխատանք է կատարվել կոլտնտեսությունների հանրային տնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ու ընդարձակման, հետևապես՝ արտադրության ինտենսիվացման մակարդակի բարձրացման ասպարեզում:*

*Կոլտնտեսությունների հանրային արտադրության տնտեսական հիմքը կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն է, որի կարևորագույն մասն անբաժանելի ֆոնդերն են: Դրանք կոլտնտեսային արտադրության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ու հետագա զարգացման կարևորագույն գործոններից են: Ներտնտեսային կուտակումների շնորհիվ կոլտնտեսություններն զգալի չափով ընդլայնել են իրենց անբաժանելի ֆոնդերը:*

Անբաժանելի ֆոնդերի, կապիտալ ներդրումների և հիմնական ֆոնդերի աճը հանրապետության կոլտնտեսություններում (միլիոն ռուբլով)

| | Տարիներ | | | |
|---|---|---|---|---|
| | 1950 | 1960 | 1965 | 1966 |
| *Անբաժանելի ֆոնդեր* . . . . | 88,9 | 236,0 | 269,8 | 279,9 |
| *Կապիտալ ներդրումներ* . . . | 12,4 | 32,6 | 31,8 | 33,5 |
| *Հիմնական ֆոնդեր* . . . . | 68,7 | 172,2 | 199,8 | 205,9 |



digitised by A.R.A.R.@

Հանրապետության կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1966 թ., 1950 թ. համեմատությամբ, ավելացել են 3,1, իսկ 1960 թ. 1,2 անգամ, մեկ կոլտնտեսությանն ընկնող (միջին հաշվով) անբաժանելի ֆոնդերը համապատասխանաբար՝ 4 և 1,8 անգամ։

Կապիտալ ներդրումների ավելացման շնորհիվ կոլտնտեսությունները տարեցտարի ավելացնում են հիմնական ֆոնդերը, դրանով ամրապնդում և զարգացնում նյութական բարիքների արտադրության տեխնիկական հիմքը։ Հանրապետության կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերի արժեքը 1966 թ., 1940 թ. համեմատությամբ, ավելացել է 8,5 անգամ, 1950 թ. համեմատությամբ՝ 3, իսկ 1960 թ. համեմատությամբ՝ 1,2 անգամ։ Հիմնական ֆոնդերի աճը զգալի է 100 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության և մեկ աշխատունակ կոլտնտեսականի հաշվով։

Հիմնական ֆոնդերի ավելացման հետ միասին բարելավվել և որակապես փոխվել է դրանց կառուցվածքը։ Եթե կոլտնտեսային կարգի զարգացման սկզբնական շրջանում հիմնական ֆոնդերի կազմում մեծ տեսակարար կշիռ ունեին ձիաքարշ մեքենաները, հասարակ գործիքներն ու կենդանի քարշող ուժը, ապա այժմ ունեն՝ տրակտորները, կոմբայնները և գյուղատնտեսական մյուս մեքենաներն ու սարքավորումները, ինչպես նաև ավտոմեքենաները։ Բավական է նշել, որ 1966 թ. կոլտնտեսությունների հիմնական արտադրաֆոնդերի 17,5 տոկոսը բաժին է ընկել գյուղատնտեսական տեխնիկային ու տրանսպորտին։

Էլեկտրիֆիկացված են հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների որոշ արտադրապրոցեսներ։ Միայն 1966 թ. արտադրության ու լուսավորության նպատակով սպառվել է 104,8 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա (1956 թ. համեմատությամբ՝ 1,7 անգամ ավելի)։ 1966 թ. կոլտնտեսությունների էներգետիկ հզորության 99,2 տոկոսը (1958 թ. 93,5 տոկոսի փոխարեն) բաժին է ընկել մեխանիկական շարժիչներին, իսկ անասուններին (մեխանիկական ուժի հաշվով)՝ միայն 0,8 տոկոսը։ Այդ հզորությունը 100 հեկտար ցանքատարածության հաշվով կազմել է 256, մեկ աշխատողի հաշվով՝ 5,6 ձիաուժ։

Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսությունները գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք աճեցրին։ 1966 թ., 1964 թ. համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացել է 22, շաքարի ճակնդեղինը՝ 8, խաղողինը՝ 27,3 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում զարգացել է նաև անասնաբուծությունը, որոշ չափով ավելացել անասունների գլխաքանակն ու մթերատվությունը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման շնորհիվ բուսաբուծության և անասնաբուծության համախառն արտադրանքի արժեքը 1966 թ., 1964 թ. համեմատությամբ, ավելացել է 38,2 միլիոն ռուբլով։

Ապրանքային արտադրանքի ավելացմամբ մեծացել են նաև կոլտնտեսությունների դրամական միջոցները (տես 63-րդ էջի աղյուսակը)։

Աղյուսակից երևում է, որ կոլտնտեսությունների դրամական միջոցները 1965 թ., 1950 թ. համեմատությամբ, ավելացել են 188, 1960-ի համեմատությամբ՝ 15,2 տոկոսով։ Եթե 1950 թվականին 100 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածությանն ընկնող դրամական միջոցները կազմել են 2,9, 1960-ին՝ 9,8 հազար ռուբլի, ապա 1966-ին դրանք հասել են 16,3 հազարի։



Դրամական միջոցների աճը հանրապետության կոլտնտեսություններում
(համապատասխան տարվա գներով)

| Տարիներ | Ընդամենը դրամական միջոցներ (մլն. ռուբ.) | Այդ թվում | | 100 հա գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության վրա ընկնող (հազ. ռուբ.) | Այդ թվում | |
|---|---|---|---|---|---|---|
| | | բուսաբուծությունից | անասնաբուծությունից | | բուսաբուծությունից | անասնաբուծությունից |
| 1950 | 42,2 | 32,5 | 7,1 | 2,9 | 2,2 | 0,5 |
| 1960 | 105,1 | 60.9 | 37,6 | 9,8 | 5,7 | 3,5 |
| 1965 | 121,5 | 62,4 | 47,1 | 16,2 | 8,4 | 6,3 |
| 1966 | 118,8 | 61,9 | 46,5 | 16,3 | 8,5 | 6,4 |

Այդ ժամանակաշրջանում աճել են նաև անասնաբուծությունից ստացված դրամական միջոցները. դա բացատրվում է անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմամբ և ապրանքայնության աստիճանի բարձրացմամբ։

Հացահատիկի և անասնաբուծական մթերքների պետական գնման գների բարձրացման (1965 թ.) շնորհիվ կոլտնտեսություններն այժմ իրենց ապրանքային արտադրանքի գերակշռող մասը վաճառում են պետությանը։ Այսպես, 1966 թ. կոլտնտեսությունների ընդհանուր դրամական մուտքերի 76,5 տոկոսն ստացվել է պետությանն ու կոոպերացիային վաճառված արտադրանքից։

Հանրային տնտեսության եկամուտների ավելացման հետ միասին բարձրացել է նաև կոլտնտեսականների տարեկան միջին վաստակը։ 1966 թ., 1964 թ. դիմաց, այն աճել է 35,8 տոկոսով։ Կոլտնտեսությունների տնտեսական գործունեության հիմնական ցուցանիշների վերլուծությունից պարզվում է, որ դեռևս ցածր է կոլտնտեսային արտադրության շահութաբերության աստիճանը, որովհետև ցածր է աշխատանքի արտադրողականության մակարդակը, հետևապես բարձր է արտադրվող արտադրանքի ինքնարժեքը։

Գյուղատնտեսական մթերքների մի մասի արտադրության վրա կատարված աշխատանքային ծախսումները դեռևս բարձր են։ Ավելին, կոլտնտեսությունների զգալի մասը մեկ ցենտներ արտադրանքի արտադրության վրա ավելի շատ աշխատանք է ծախսում, քան հանրապետության միջինն է։ Այսպես, 1966 թ. կաթնարտադրությամբ զբաղվող կոլտնտեսությունների 51,3%-ը 1 ցենտներ կաթի համար ծախսել է 3 և ավելի մարդ-օր, իսկ տավարի մսի արտադրությամբ զբաղվող կոլտնտեսությունների 44,6 տոկոսը մեկ ցենտներ միս ստանալու համար՝ 17—20 և ավելի մարդ-օր։ Դա բացատրվում է աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակով։ Այսպես, 1966 թ. տվյալներով հանրապետության կոլտնտեսություններում կարտոֆիլի տնկման աշխատանքների 31 տոկոսն է մեքենայացված, բանջարանոցային կուլտուրաների միջշարային տարածությունների մշակության՝ 45, սիլոսային կուլտուրաների բերքահավաքի՝ 37, խոտհնձի՝ 30 տոկոսը։

Վիճակը մխիթարական չէ նաև անասնապահության մեջ։ Այսպես, կովերի մեքենայական կիթը 3,5 տոկոս է, խոշոր եղջերավոր անասունների, խոզերի և թռչունների մեքենայացված ջրամատակարարումը, համապատասխանաբար՝ 20,9, 9,7 և 9,6 տոկոս։ Խոշոր եղջերավոր անասունների կերի մատակարարումը մեքենայացված է 2,3, իսկ կովանոցներից գոմաղբի հեռացումը՝ 15,2 տոկոսով։ Մեքենայացման նման ցածր մակարդակը պայմանավորված է



digitised by A.R.A.R.@

ո՛չ միայն շատ տնտեսություններում համապատասխան մեքենաների ու սարքավորումների բացակայությամբ, այլև ձեռք բերված ու տեղակայված տեխնիկայի անբավարար օգտագործմամբ։ Այսպես, հաշվարկված է, որ հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում տեղակայված 450 կթի ագրեգատների լրիվ օգտագործման դեպքում հնարավոր է այդ կարևոր ու աշխատատար պրոցեսի մեքենայացման մակարդակը հասցնել մոտ 35—40 տոկոսի։

Անժխտելի է, որ գյուղատնտեսական աշխատանքներն ագրոտեխնիկական օպտիմալ ժամկետում կատարելը մեծապես նպաստում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը. սակայն դրան հասնելու ուղին ոչ միայն տեխնիկայի անընդհատ ավելացումն է, այլև եղածի արդյունավետ օգտագործումը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության կոլտնտեսություններում տարեցտարի նվազում է տրակտորների տարեկան արտադրողականությունը։ Այսպես, 15 ձիաուժ ունեցող մեկ տրակտորի տարեկան արտադրողականությունը 1966 թ. կազմել է 190 հեկտար՝ 1960 թ. 213 և 1958 թ. 296 հեկտարի փոխարեն։ Լավ չեն օգտագործվում նաև կոմբայնները։ Մեկ կոմբայնի սեզոնային միջին արտադրողականությունը 1958 թ. 159 հեկտարից 1966 թ. իջել է 150 հեկտարի։ Այդ ժամանակաշրջանում զգալի չափով ավելացել են 15 ձիաուժ ունեցող մեկ տրակտորի տարեկան շահագործողական ծախսերը։ Մեկ հեկտար փափուկ վարի հաշվով վառելանյութի ծախսը բավականին բարձր է, որը հետևանք է տրակտորային ագրեգատների անհամեմատ մեծ անգործարար անցումների։

Շատ տնտեսություններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղատնտեսական տեխնիկայի խնամքին ու պահպանմանը։ Չկան մեքենաների համար անհրաժեշտ ծածկեր. աշխատանքներն ավարտելուց հետո դրանք մնում են բաց երկնքի տակ, երբեմն կեղտոտ և առանց յուղելու, որի պատճառով շարքից շուտ են դուրս գալիս։

Կոլտնտեսային արտադրության գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իջեցնել արտադրանքի վրա կատարվող աշխատանքային ծախսումները։ Դրան կարելի է հասնել մշակվող կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների արմատավորման միջոցով։ Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման համար մեծ նշանակություն ունի արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, քանի որ միավոր տարածության հաշվով ավելի շատ ծախսումներ են կատարվում։ Կոլտնտեսությունների հիմնական խնդիրն է՝ արտադրության ինտենսիվացմանն ուղղված բոլոր ձեռնարկումները, գլխավորապես աշխատանքային ու նյութա-դրամական ծախսումներն առավել արդյունավետ օգտագործելու շնորհիվ անընդհատ բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասունների մթերատվությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։

Կոլտնտեսությունների արտադրանքի վրա կատարված ծախսերի վերլուծությունը ցույց է տալիս, որ դեռևս չափազանց բարձր է արտադրանքի հիմնական տեսակների ինքնարժեքը։ 1966 թ. 10 ռուբլուց բարձր ինքնարժեքով հացահատիկ է արտադրել կոլտնտեսությունների 52,1, կարտոֆիլ՝ 81,2 տոկոսը։ Որոշ կոլտնտեսություններում անգամ վնասով են արտադրվում ծխախոտը, խաղողը և պտուղները։ Դրությունն անհամեմատ վատ է անասնա-



պահության բնագավառում։ Եթե հանրապետության կոլտնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների քաշաճի մեկ ցենտների ինքնարժեքը 1966 թ. կազմել է 141,8 ռ., ապա 239-ում՝ 150 ռուբլուց բարձր։ Անասնապահական մթերքների բարձր ինքնարժեքի պատճառով հանրապետության կոլտնտեսությունները 1966 թ. կրել են 8,3 միլիոն ռուբլու վնաս։

Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե 1966 թ. վնասով կաթ արտադրած 422 կոլտնտեսություններում կաթի ինքնարժեքը հասցվեր պետական գնման գների մակարդակին, ապա փաստացի ծախսումները կկրճատվեին 6,2 միլիոն ռուբլով կամ 37,5 տոկոսով, բրդինը՝ 2,0 միլիոնով կամ 29,1 տոկոսով, խոշոր եղջերավոր անասունների մատղաշի և բտման ենթակա հասակավոր անասունների քաշաճինը՝ 4,1 միլիոնով կամ 26,3 տոկոսով։ Վնասները կանխելու համար անհրաժեշտ է արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 26,3—37,5 տոկոսով։ Արտադրանքի բարձր ինքնարժեքով պետք է բացատրել, որ 72 կոլտնտեսություն կամ հանրապետության կոլտնտեսությունների 13,7 տոկոսը 1966 թ. աշխատել է վնասով։

Հայտնի է, որ արտադրանքի ինքնարժեքը գլխավորապես գոյանում է աշխատանքի վարձատրության և նյութական միջոցների (սերմեր, կեր և այլն) ծախսումներից։ Սակայն կերի և սերմերի բարձր ինքնարժեքը նույնպես աշխատանքի մեծ ծախսումների հետևանք է։ Ուստի, հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացնել աշխատանքային ծախսումների խիստ կրճատման վրա։ Դրանք հատկապես մեծ տեսակարար կշիռ ունեն այն ճյուղերում, որտեղ ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։ Հետևաբար, արտադրանքի ինքնարժեքի իջեցման գլխավոր ուղին արտադրապրոցեսների համակողմանի մեքենայացումն է։ Դա հնարավորություն կընձեռի նվազեցնել կենդանի աշխատանքի ծախսումները և գյուղատնտեսական աշխատանքները կատարել ագրոտեխնիկական օպտիմալ ժամկետներում, նվազագույնի հասցնել բերքահավաքի ժամանակ առաջացած կորուստները։

Արտադրանքի ավելացման և դրա վրա կատարվող ծախսումների իջեցման գլխավոր ուղիներից մեկն էլ աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումն է։ Կոլտնտեսություններում դեռևս բավարար աշխատանք չի տարվում նյութական խրախուսման միջոցներ կիրառելու ուղղությամբ։

Կոլտնտեսություններում վարձատրությունը կատարվում է գլխավորապես քանակական ցուցանիշները հաշվի առնելով, անտեսվում է որակը։ Այսպես, հացահատիկի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, խաղողի, պտուղների, բանջարեղենի և կերային կուլտուրաների, ինչպես նաև անասնապահական մթերքների արտադրության որակի և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության մակարդակի մեջ ուղղակի կապ չկա։ Վարձատրությունը, լավագույն դեպքում, պայմանավորված է արտադրված արտադրանքի քանակով, իսկ հիմնականում՝ արտադրական նորմաների կատարմամբ։ Գյուղատնտեսական մթերքների որակը պետք է դառնա կոլտնտեսությունների արտադրական ու տնտեսական գործունեությունը բնութագրող կարևորագույն ցուցանիշ։ Որակի բարձրացումը շահութաբերության բարձրացման կարևորագույն ռեզերվ է։ Հետևապես, մեր կարծիքով, անհրաժեշտ է վարձատրելիս հաշվի առնել և՛ քանակը, և՛ որակը։

Ընթացիկ հնգամյակում (1966—1970 թթ.) զգալի չափով կամրապնդվի հանրապետության գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան։ Պետա-



digitised by A.R.A.R.@

*թյուններից մեկում։ Այս սիստեմով մեծ չափով բարձրացվում է անմիջական արտադրողների՝ բանվորների, վարպետների, արտադրամասերի պետերի պատասխանատվությունն իրենց թողարկած արտադրանքի որակի համար։ Նրանց արգելվում է տեխնիկական վերահսկողության բաժիններին (ՏՎԲ) ներկայացնել տեխնիկական փաստաթղթերի պահանջներին չհամապատասխանող արտադրանք։ Նախքան ՏՎԲ ներկայացնելը, նրանք պարտավոր են մանրազննին ստուգել պատրաստի արտադրանքի որակը և շտկել նկատվող թերությունները։ Եթե ստուգման ժամանակ հայտաբերվում է որևէ արատ, ապա դադարեցվում է դրանց հետագա ստուգումը և ամբողջ պարտիան վերադարձվում է շտկման։ Վերադարձված արտադրանքը երկրորդ անգամ ստուգվում է միայն արտադրամասի պետի գրավոր միջնորդությամբ։ Իսկ երրորդ անգամ՝ դիրեկտորի թույլտվությամբ։ Դժվար չէ նկատել, որ այս պայմաններում ՏՎԲ-ի աշխատանքները նոր բովանդակություն են ստանում։ Վերահսկիչների խնդիրն է՝ ո՛չ թե խոտանել արտադրանքը, այլ սահմանել իսկական վերահսկողություն, բացատրական ու հրահանգչական աշխատանքներ կատարել արտադրամասերում, բացահայտել ու վերացնել խոտանի պատճառները։*

*Սարատովի այն գործարանում, որտեղ այս սիստեմն առաջին անգամ մշակվել ու ներդրվել է, խոտանը կրճատվել է 8, իսկ ՏՎԲ հսկիչ կետերից վերադարձվող արտադրանքի քանակը՝ մոտ 30 անգամ։ Արտադրանքի 98—99 տոկոսն ընդունվել է առաջին անգամ ներկայացնելով։*

*Անթերի արտադրության սարատովյան սիստեմն այժմ ուսումնասիրում են Չեխոսլովակիայի, Բուլղարիայի և ԳԴՀ-ի մասնագետները։ Այն կիրառվում է նաև մի շարք կապիտալիստական երկրներում (ԱՄՆ, Ճապոնիա, ԳՖՀ և այլն)։ Այս սիստեմն առավել մեծ տարածում է գտել ԱՄՆ-ում։ Անթերի արտադրության սիստեմը կամ, ինչպես ամերիկացիներն են անվանում, անթերի աշխատանքի կազմակերպման ծրագիրը («*Zero defects program*») ԱՄՆ-ում կիրառվել է 1962 թվականից։ Ամերիկյան մամուլի տվյալներով այժմ այս սիստեմով աշխատում են երեք հազարից ավելի ֆիրմաներ՝ երկու միլիոն բանվոր-ծառայողներով։*

*Ներկայումս մեր երկրում սարատովյան սիստեմով են աշխատում արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 10 տոկոսը։ Չնայած այս սիստեմը մշակվել է մեքենաշինության համար, բայց այն միայն մեկ ճյուղի մենաշնորհը չէ։ Այժմ այն կիրառվում է նաև քիմիական, նավթավերամշակման, փայտամշակման, սննդի, թեթև և արդյունաբերության այլ ճյուղերում։ Մեր հանրապետությունում սարատովյան սիստեմը հաջողությամբ կիրառվում է Երևանի սարքաշինական, Կիրովականի քիմիական մանրաթելերի, Լենինականի շաղափող հաստոցների և մի շարք այլ ձեռնարկություններում։*

*Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը քննեց հիշյալ սիստեմի ներդրման ընթացքը երկրի արդյունաբերական ձեռնարկություններում և այդ առթիվ ընդունած որոշման մեջ պրակտիկ միջոցառումներ նախատեսեց արտադրանքի որակի բարելավման այդ մեթոդները լայնորեն արմատավորելու ուղղությամբ։*

*Տեխնիկական առաջադիմության հետևողական իրականացման, տվյալ դեպքում, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, տեխնոլոգիայի կատարելագործման ու արտադրության քիմիացման, ինչպես նաև արտադրության և աշխատանքի ռացիոնալ կազմակերպման մեջ թաքնված են արտադրանքի որակի բարելավման հսկայական ռեզերվներ։ Դրանք վճռական ազդեցություն են ունենում ձեռնարկության շահութաբերության, իրացվող արտադրանքի ծավալի, ինչպես նաև տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշների վրա։ Արտադրանքի որակի բարձրացման ռեզերվների մոբիլիզացումն արտադրության պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկություններից յուրաքանչյուրի առաջնահերթ խնդիրներից մեկն է։*


ՕՐԴՅԱՆ Է. Հ.

Տնտեսական գիտությունների թեկնածու


## ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*Կալինինոյի շրջանում վերջին երեք տարում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման ասպարեզում։ 1964 թվականի համեմատությամբ, անցյալ տնտեսական տարում շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների համախառն արտադրանքն աճեց 50 տոկոսով և կազմեց 9 միլիոն ռուբլի։*

*Հայտնի է, որ Կալինինոյի շրջանի էկոնոմիկայի գլխավոր ուղղությունը մսա-կաթնային անասնապահությունն է, որոշ տնտեսություններում՝ կարտոֆիլագործությունը։ Համախառն արտադրանքի ու դրամական եկամուտների մոտ 70 տոկոսն ստացվում է հանրային անասնաբուծությունից։ Շրջանը տալիս է հանրապետության կաթի տարեկան արտադրանքի 8,5, կարտոֆիլի՝ 22 տոկոսը։*

*Հողագործության և անասնաբուծության զարգացման, շրջանի տնտեսություններում կազմակերպական միջոցառումների կիրառման շնորհիվ, նշանակալի չափով աճեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնապահության մթերատվությունը։ 1967 թվականին օգտագործվել է (մեկ հեկտարի հաշվով) 3,8 ցենտներ հանքային պարարտանյութ (1964 թվականի 2 ցենտների փոխարեն)։ Ավելին, աշնանացանի 91 տոկոսը կատարվել է «Անքիստ—1» բարձր բերքատու ցորենով, իսկ կարտոֆիլի ցանքի համար հիմնականում օգտագործվել են էլիտա I և II վերարտադրության սերմեր. զգալի չափով մեքենայացվել են աշխատատար պրոցեսները։ Այս և այլ միջոցառումների շնորհիվ 1965—1967 թվականներին, նախորդ երեք տարվա համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին բերքատվությունը շրջանում ավելացավ 5,1 ցենտներով, այդ թվում՝ աշնանացան ցորենինը՝ 5,6, կարտոֆիլինը՝ 43, միամյա կերինը՝ 47, կերային արմատապտուղներինը՝ 152 ցենտներով։*

*Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում հատկապես աչքի ընկան Նորաշենի, Միխայլովկայի, Մեդովկայի, Կալինինոյի, Լոռվա տոհմաբուծարանի տնտեսությունները, որտեղ աշնանացան ցորենի բերքատվությունը հեկտարից կազմեց 20—26 ցենտներ։*

*Վերջին երեք տարում զգալի չափով աճեց անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Մսի համախառն արտադրանքն աճեց 165, իսկ կաթինը՝ 3100 տոննայով. մեկ կովի միջին կաթնատվությունը կազմեց 2591 կիլոգրամ։ Անասնաբուծական մթերքների աճն, առաջին հերթին, պայմանավորված է կերի կայուն բազայի ստեղծմամբ։ Այդ բնագավառում շրջանի աշխատավորները լուրջ հաջողությունների են հասել։ Արոտների, խոտհարքների բարելավման, ցանովի կերաբույսերի տարածությունների ընդարձակման շնորհիվ 1967 թվականին հանրային անասնապահության համար նրանք կուտակել էին մոտ 36 հազար տոննա խոտ, 57 հազար տոննա սիլոս և 2500 տոննա կերի արմատապտուղ։*

*Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում խոշոր հաջողությունների հասան Կալինինոյի սովխոզի բանվորները։ Վերջին երեք տարում մեկ կովի միջին կաթնատվությունն ավելացավ 952 կիլոգրամով և հասավ 3219-ի, իսկ Լոռվա տոհմաբուծարանում, համապատասխանաբար՝ 333 և 3668 կիլոգրամի։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացու-*



digitised by A.R.A.R.@

մը հնարավորություն ընձեռեց տարեցտարի գերակատարելու դրանց վաճառքի ու հանձնման պլանային առաջադրանքները։

Շրջանի էկոնոմիկայի վերլուծությունը ցույց է տալիս, որ վերջին տարիներին ամրապնդվել է ո՛չ միայն կոլտնտեսությունների, այլև սովխոզների ֆինանսա-տնտեսական դրությունը։ Բացի Ղըզըլշաֆակի սովխոզից, մյուս 5 տնտեսությունները շահութաբեր են։ Առավելապես շահութաբեր է Կալինինոյի կաթնա-անասնապահական սովխոզը, որն այս տարի հանրապետությունում առաջինն անցավ լրիվ տնտեսական հաշվարկի (շահույթները 1967 թ. կազմեցին 279 հազար ռուբլի)։

Հասկանալի է, որ տնտեսական հաջողություններն ինքնին չեն ստեղծվում։ Դրանք համառ, քրտնաջան, գիտականորեն կազմակերպված աշխատանքի արդյունք են, որ կարող են ապահովել կազմակերպչական աշխատանքի մեծ ցիղ ունեցող կադրերը, որոնք կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցում են արտադրության բարձրացման խնդիրների հետ։ Ահա թե ինչու ՀԿԿ շրջանային կոմիտեն, ամենից առաջ, կոլտնտեսություններն ու սովխոզները ապահովել է գործիմաց ղեկավար կադրերով։ Շրջանի 18 կոլտնտեսությունների ղեկավարներից 13-ը գյուղատնտեսության մասնագետներ են, որոնցից երկուսը գյուղատնտեսական գիտությունների թեկնածուներ։ Որպես արտադրության լավագույն կազմակերպիչներ շրջանում և հանրապետությունում աչքի են ընկնում Կալինինոյի սովխոզի դիրեկտոր Գուրգեն Ավդալյանը, Նորաշենի կոլտնտեսության վարչության նախագահ Անդրանիկ Մանուկյանը, Լոռվա տոհմաբուծարանի դիրեկտոր Խաչիկ Սիմոնյանը, փորձակայանի դիրեկտոր Մկրտիչ Գալստյանը և ուրիշներ։

Գյուղատնտեսական արտադրության բարձրացմանը մեծապես նպաստում է կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը։ Կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններն այնպես են դասավորել կուսակցականների ուժերը, որ արտադրության ոլորտում է աշխատում կոմունիստների մոտ 70 տոկոսը։ Նրանք ապահովում են իրենց ավանգարդային դերը, գլխավորում սոցիալիստական մրցությունն ու մոբիլիզացնում գյուղի աշխատավորներին՝ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Սոցիալիստական մրցությունը լայն ծավալ է ստացել ամենուրեք—արտադրության վճռական տեղամասերում՝ բրիգադաներում ու ֆերմաներում։ Խրախուսելի է, որ շրջանը մրցում է Կրասնոդարի երկրամասի, Կարենովսկու, Վրացական ՍՍՀ Դմանիսի և մեր հանրապետության Ստեփանավանի շրջանների հետ։ Այդ մրցությունը փոխադարձ օգնության ու փորձի փոխանակման բնույթ ունի։ Այսպես, կարենովսկցիները Կալինինոյի տնտեսություններին 1966 թ. տվին 350 տոննա «Անքիստ—1» բարձր բերքատու ցորենի սերմացու, իսկ վերջիններս նրանց տվեցին «Կովկասյան գորշ» ցեղի մատղաշներ և կարտոֆիլի որակյալ սերմացու։

Ուշագրավ է Կալինինոյի սովխոզի կուսկազմակերպության, դիրեկցիայի ու արհմիության տեղկոմի նախաձեռնությունը։ Արդեն երկրորդ տարին է նրանք սահմանել են «Սովխոզային մրցանակի դափնեկրի» բարձր կոչում, որը շնորհում են արտադրության առաջավոր կթվորին, անասնապահին, բանվորին, մեխանիզատորին, բրիգադավարին։ Դիպլոմի հետ հանձնվում է նաև ոսկե ժամացույց (անվանական)։ Այդպիսի մրցանակի են արժանացել 36 մարդ։ Սոցիալիստական մրցությունը ծավալելու, արտադրության և քաղաքական աշխատանքի առաջավոր փորձը պրոպագանդելու նպատակով կուսակցության շրջանային կոմիտեն ամեն եռամսյակ հատուկ բյուլետեններ է հրատարակում։

Անասնաբուծության զարգացման ուղղությամբ աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար շրջանը վերջին երեք տարիներին արժանացել է ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի փոխանցիկ դրոշին։ Արտադրության ավելի քան 110 առաջավորներ ու մի շարք տնտեսություններ պարգևատրվել են կառավարական շքանշաններով, մեդալներով, ԺՏՆՑ-ի դիպլոմներով ու մեդալներով։

Եթե 1964 թվականին Կալինինոյի շրջանում կար միայն մեկ կթվորուհի, որն իր խնամած կովերից տարեկան ստանում էր միջինը 4000 կգ կաթ, ապա անցյալ տարի նրանց թիվը հասավ հինգի։ Նոր է լրացել Սարատովկայի կոլտնտեսության հորթապահուհի Տատյանա Ցակուշևայի 60 տարին։ Իր 37 տարվա բարեխիղճ ու տքնաջան աշխատանքով կթվորուհին շատ բան է արել հարազատ կոլտնտեսության վերելքի համար։ 950—1050 գրամից պակաս չի եղել նրա խնամած հորթերից յուրաքանչյուրի օրական քաշ-աճը։ Անցյալ տարի Տատյանա Ցակուշևան արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։

Շրջանում և հանրապետությունում հայտնի է անվանի կարտոֆիլագործ, ՍՄԿԿ անդամ, Նորաշենի կոլտնտեսության բրիգադավար Սեդրակ Սուքիասյանի անունը։ Նա ամեն տարի 40 հեկտար կարտոֆիլի ցանքի յուրաքանչյուր հեկտարից հավաքում է 220, իսկ օղակավարուհի Ժենյա Բաղդասարյանը՝ 520 ցենտներ բերք։

Բազմամարդ է գյուղատնտեսական արտադրության վարպետների բանակը Կալինինոյի շրջանում, որոնց աշխատանքը բարձր է գնահատվում։ Նրանք են Լոռվա տոհմաբուծարանի կթվորուհի, Լենինի կրկնակի շքանշանակիր Արաքսյա Մուրադյանը, Նովոսելցովոյի կոլտնտեսության կթվորուհի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, Լենինի շքանշանակիր Մարիա Կապիլովան, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիրներ՝ կթվորուհիներ Գյուլիստան Մամեդովան (Լոռվա տոհմաբուծարանից), Ֆեդոսիա Ժաբինան (Սարատովկայից), Սրբուհի Մինասյանը (Բլագոդարնոյեից), Վասիլի Ստրելնիկովը (Մեդովկայից), Մարիա Ջիբուրչան (փորձակայանից) և շատ ուրիշներ։

Շրջանի կոլտնտեսային ու սովխոզային արտադրության և էկոնոմիկայի ակնառու աճը բնավ չի նշանակում, թե Կալինինոյում գյուղատնտեսությունը հասել է բարձրագույն մակարդակի, թե սպառված են բոլոր հնարավորություններն ու ռեզերվները նրա հետագա զարգացման համար։ Ամենևին։ Տնտեսությունների գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ շահութաբերության բարձրացման և էկոնոմիկայի ավելի բարձր աճ ապահովելու համար շրջանում կան հսկայական չօգտագործված ռեզերվներ ու պոտենցիալ հնարավորություններ։ Այսպես, արտադրության ընդհանուր աճի դեպքում, ոչ բոլոր տնտեսություններում է զգացվում էկոնոմիկայի ջական տեղաշարժ։ Ի դեպ, այդ հազիվ թե կարելի է բացատրել բնակլիմայական կամ այլ օբյեկտիվ պատճառներով։

Ամենից առաջ գյուղատնտեսության ղեկավարման գործում շրջանի կուսակցական, սովետական օրգանները, մասնագետները դեռևս բավարար չեն վերլուծում տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված նվաճում-



digitised by A.R.A.R.@

ները։ Նրանք հաճախ բավարարվում են միջին ցուցանիշներով, որոնց ետևում
թաքնված են չօգտագործված հսկայական ռեզերվներ։
Միանման բնատնտեսական պայմաններում հացահատիկային կուլտուրա-
ների բերքատվությունը մի խումբ առաջավոր տնտեսություններում 21—26
ցենտներ է, իսկ շրջանի 8 տնտեսություններում՝ դրանից 12—16 ցենտներով
պակաս. կարտոֆիլի բերքատվության տարբերությունը հասնում է 100—150
ցենտների։ Շրջանի ընդհանուր տնտեսական ցուցանիշների բարձր աճը
ապահովում են հիմնականում տնտեսապես ու կազմակերպչորեն առաջավոր
մի շարք տնտեսություններ (Նորաշենի, Մեղովկայի, Միխայլովկայի կոլ-
տնտեսությունները, Կալինինոյի, Լոռվա տոհմաբուծարանի սովխոզները և
շրջկենտրոնի փորձակայանը)։ Մինչդեռ Շահնազարի, Ղըլըշաֆակի, Իլմազ-
լուի, Սարչապետի, Ղարաքիլիսայի, Պրիվոլնոյեի խոշոր տնտեսությունները
գրեթե դոփում են տեղում։
Նույնն է վիճակը անասնաբուծական մթերքների արտադրության բնա-
գավառում։ Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե բոլոր տնտեսություններում
մեկ կովի կաթնատվությունը հասցնեին շրջանի միջին կաթնատվության մա-
կարդակին (2591 կգ), ապա Կալինինոյի շրջանը տարեկան կարտադրեր ոչ թե
18741, այլ մոտ 20700 տոննա կաթ, որը հավասար է 304 հազար ռուբլու լրա-
ցուցիչ եկամտի։
Գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների թե-
րակատարման պատճառն այն է, որ վերջին 2 տարում առանձին տնտեսու-
թյուններում ընկել է աշխատանքային կարգապահությունը։ Գյուղատնտեսա-
կան արտադրության մեջ աշխատող կոլտնտեսականների թիվը կրճատվել է
164, իսկ սովխոզների բանվորներինը՝ 401 մարդով։ Հատկապես մեծ է հո-
սունությունը Շահնազարի, Լոռվա տոհմաբուծարանի, Ղարաքիլիսայի, Սար-
չապետի, Նորաշենի տնտեսություններում։ Ամեն տարի 1200—1500 երիտա-
սարդ աշխատողներ թողնում են գյուղը։
1966 թվականին կոլտնտեսություններում աշխօրերի պարտադիր մինի-
մումը չեն կատարել 837, 1967-ին՝ 1036 հոգի։ Աշխատանքի վատ կազմա-
կերպման, ագրոմիջոցառումների և մեքենայացման անբավարար կիրառման
հետևանքով Սարչապետում, Ղարաքիլիսայում և Ղըլըդաշում ցածր են գյուղա-
տնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնապահության մթե-
րատվությունը։
Կոլտնտեսությունների ու սովխոզների որոշ ղեկավարներ և մասնագետ-
ներ միջոցներ չեն մշակում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն իջեց-
նելու, տնտեսությունների շահութաբերությունը բարձրացնելու ուղղությամբ։
Այդ է պատճառը, որ վերջին տարիներին անընդհատ բարձրանում է գյուղա-
տնտեսական մթերքների ինքնարժեքը։ Միայն կաթի ինքնարժեքի բարձրա-
ցումից շրջանի տնտեսությունների շահութաբերությունն իջել է 116 հազար
ռուբլով։ Հաշվումները ցույց են տվել, որ եթե 1 ցենտներ կաթի ինքնարժեքը
մնար 1964 թվականի մակարդակին (13 ռ. 26 կոպ.), ապա շրջանի տնտե-
սությունները միայն կաթի արտադրությունից կստանային 307 հազար ռուբլու
լրացուցիչ եկամուտ։
Գյուղատնտեսական մթերքների բարձր ինքնարժեքը, ամենից առաջ, բա-
ցատրվում է աշխատանքային ու նյութական մեծ ծախսումներով, որոնք ան-
համեմատ քիչ են հատուցվում։ Բերենք միայն մի փաստ. 1967 թվականին
շրջանի տնտեսությունները պետությունից գնել են ավելի քան 10.000 տոն-



նա համակցված կեր, որը դրամական արտահայտությամբ կազմում է մոտ
650 հազար ռուբլի։ Այդ այն դեպքում, երբ մեծ հնարավորություններ կան ստեղ-
ծելու սեփական արտադրության ավելի էժան համակցված անասնակեր ու
արմատապտուղներ, որն անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման
հիմնական միջոցն է։
Տարիներ շարունակ ինչպես Կալինինոյի, այնպես էլ հանրապետության
բոլոր տնտեսություններում հսկայական աշխատանք է ծախսվում շրջապատի
հողով սիլոսի դեզերը ծածկելու համար։ Միայն Կալինինոյի սովխոզում պատ-
րաստում են մոտ 10—12 հազար տոննա սիլոս։ Դժվար է պատկերացնել, թե
որքան հող, ծղոտ և աշխատանք է պետք սիլոսի այդ հսկայական մասսան
ծածկելու համար։ Անարտադրական ծախսերը կրճատելու, բարձրորակ սիլոս
ունենալու նպատակով անցյալ տարի սիլոսի դեզերը ծածկեցին պոլիէթիլե-
նային թաղանթով, որից սովխոզը տնտեսեց 15 հազար ռուբլի։ Այդ փորձը
կարելի է հեշտությամբ կիրառել ամենուրեք։
Շրջանի էկոնոմիկայի շահութաբերության բարձրացման կարևոր պայ-
մաններից մեկը բարձրորակ մսի, կաթի, բրդի, կարտոֆիլի և այլ մթերքների
արտադրությունն է։ Սակայն, այդ կարևոր գործին անհրաժեշտ ուշադրություն
չի նվիրվում։ Անասնաբուծական մթերքների ինքնարժեքի իջեցման և շահու-
թաբերության ավելացման ուղիներից մեկը անասունների բտման գործի ճիշտ
կազմակերպումն է՝ բարձր գիրությամբ մսի հանձնումը։ Ամեն տարի շրջանի
կոլտնտեսությունները և սովխոզները պետությանը վաճառում են 900—1300
գլուխ հյուծված և միջակից ցածր գիրությամբ անասուններ (կամ հանձնված
ամբողջ մսի՝ 27,2—46 տոկոսը), իսկ առանձին տնտեսություններում (Շահնա-
զար, Էվլու, Պրիվոլնոյե, Ղարաքիլիսա, Սարչապետ) պետությանը վաճառած
ցածր գիրության միսը կազմում է 35—73 տոկոս։ Եթե շրջանի տնտեսություն-
ների ղեկավարներն ու մասնագետները փորձիմացությամբ կազմակերպեին
անասունների բտման գործը և հյուծված ու միջակից ցածր գիրությամբ անա-
սունները պետությանը հանձնեին գոնե միջակ գիրությամբ, ապա կոլտնտե-
սություններն ու սովխոզները տարեկան կստանային 375—540 հազար ռուբլու
լրացուցիչ եկամուտ։
Կալինինոյի շրջանի էկոնոմիկայում կարևոր դեր է խաղում բարձր մթե-
րատու անասունների տոհմաբուծությունը («Կովկասյան գորշ» ցեղատեսա-
կով)։ Վերջին ժամանակներս տոհմային-սելեկցիոն աշխատանքները խիստ
թուլացել են, որի հետևանքով կովերի ստերջությունը հասնում է 21—24 տո-
կոսի։ Այդ նշանակում է, որ կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան
մոտ 1500—1600 տոհմային մատղաշներ պակաս են ստանում, այսինքն՝
միջին հաշվով նրանք կորցնում են ավելի քան 400—430 հազար ռուբլի լրա-
ցուցիչ եկամուտ։ Պետք է նկատել, որ բոլոր հնարավորությունները կան առա-
ջիկա 3—5 տարում տնտեսությունները բարձր մթերատու տոհմային տնտե-
սություններ դարձնելու համար, որը մեծ չափով կխթանի ո՛չ միայն Կալինի-
նոյի, այլև հանրապետության անասնաբուծության հետագա զարգացմանը։
Այդ հնարավորություն կընձեռի, որ շրջանը տարեկան վաճառի ոչ թե 1000,
այլ 2008—3000 և ավելի տոհմային մատղաշ, որը տնտեսությունների եկա-
մուտը կավելացնի 1 միլիոն 800 հազար ռուբլով։
Տոհմային-սելեկցիոն անբավարար աշխատանքի հետևանքով կաթի յու-
ղայնությունը համեմատաբար ցածր է։ Վերջին 3 տարվա ընթացքում շրջանի
տնտեսությունները կորցրել են 1200 տոննա հաշվարկված կաթ, որը կազմում



digitised by A.R.A.R.@

է 186 հազար ռուբլի։ Արդի էտապում ՍՍՀՄ-ում և զարգացած շատ երկրներում ավելի մեծ ուշադրություն են նվիրում կաթի մեջ սպիտակուցների պարունակությանը։ Սակայն Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա անասնաբուծության և անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտը և տեղի մասնագետները տոհմային-սելեկցիոն աշխատանքում այդ կարևոր հարցին պատշաճ ուշադրություն չեն դարձնում։

Շրջանի էկոնոմիկայի շահութաբերության բարձրացման նոր ռեզերվներն ու ուղիները օգտագործելու համար կուսակցության շրջանային կոմիտեն, գյուղատնտեսության արտադրական վարչությունը և սկզբնական կուսկազմակերպություններն առաջին հերթին պետք է խորանան էկոնոմիկայի հարցերում, գիտական հիմունքներով վարեն գյուղատնտեսական արտադրությունը, իսկ դրա համար անհրաժեշտ է արտադրության միջին օղակը՝ բրիգադների, ֆերմաների ղեկավարությունը ամրապնդել բանիմաց, գրագետ, եռանդուն կազմակերպիչներով ու մասնագետներով։ Մինչդեռ Կալինինոյի բրիգադավարների ու ֆերմայի վարիչների ընդհանուր թվի մոտ 70 տոկոսն ունի տարրական ու թերի միջնակարգ կրթություն. 120 բրիգադավարներից ու ֆերմայի վարիչներից մասնագետներ են միայն 18-ը։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման և տնտեսությունների բարձր շահութաբերությունն ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը։ Մինչդեռ շրջանում ամեն տարի չեն կատարվում տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանները, որը պետք է խիստ մտահոգի կուսշրջկոմին, շրջանային սովետին և տնտեսությունների ղեկավարներին։

Անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և քաղաքական ամբողջ աշխատանքը նպատակամղել հնգամյակի խնդիրների լուծմանը, կոլտնտեսությունների ու սովխոզների շահութաբերության բարձրացմանը։

ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Զ. Մ.
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա.

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

Պատմական դժնդակ հանգամանքների բերումով մեր ժողովրդի բազմամարդ հատվածները հարկադրված էին սփռվել աշխարհով մեկ։

Հանգրվանած երկրներում նրանք մասնակցել են հասարակական քաղաքական կյանքին, առաջադիմական շարժումներին։ Այս հոդվածում մենք փորձում ենք համառոտակի լուսաբանել հայ աշխատավորության մասնակցությունը ԱՄՆ-ի կոմունիստական շարժմանը՝ նրա սկզբնավորման շրջանում։

ԱՄՆ-ը հայաշատ գաղութներից է, ուր 1917—1920 թթ. հայ բնակչությունը հարյուր հազարից ավելի էր։ Այն կենտրոնացած էր արդյունաբերական խոշոր քաղաքներում՝ Բոստոնում, Չիկագոյում, Նյու-Յորքում, Դետրոյտում, Ֆիլադելֆիայում և այլուր։ Հայ բնակչության ճնշող մեծամասնությունն աշխատավորներ էին, գործարանային բանվորներ, որոնց թիվը 50 հազարից ավելի էր։ «Ֆորդի գործարանում,— գրում էր Ալ. Մյասնիկյանը 1924 թվականին,— ստվարաթիվ հայ բանվորություն կա՝ հազարավոր, իսկ Պուլմանի մոտ՝ հարյուրներով, այսպես և Չիկագոյի սպանդանոցներում»։

Արդեն դարասկզբին հայ բանվորությունը զգալի թիվ էր կազմում Ամերիկայում։ Նրա շարքերը համալրվեցին առաջին համաշխարհային պատերազմի տարիներին թուրքական յաթաղանից փրկված շատ տարագիրներով։ Կարիքն ու հոգսը, Արևմտյան Հայաստանում թուրքական լծի տակ տառապող հարազատների ճակատագիրը թույլ չէին տալիս նրանց ներգրավվելու ԱՄՆ-ի քաղաքական կյանքին, շփվելու այլազգի բանվորների հետ։ Գաղութահայության մեջ գործող հայ ազգայնական կուսակցությունները, եկեղեցին անում էին ամեն ինչ՝ հայ աշխատավորությանը դաստիարակելու տիրապետող պետական սոցիալական կարգերի նկատմամբ հնազանդության, օրինապահության, ազգային ուրույն պատյանից դուրս չգալու ոգով, նրանց հեռու պահելու առաջադիմական սոցիալական շարժումներից։ Ամերիկահայության հոգաբարձուների նմանօրինակ մտահոգությունը պատճառաբանվում է նրանով, որ հայերը Ամերիկայում հյուր են և պետք է շնորհակալ լինեն ամերիկյան հյուրընկալությունից։ Նրանք աչալուրջ հետևում էին, որ հայ գաղութը չներթափանցեն հեղափոխական, ինտերնացիոնալիստական տրամադրություններ և չշեղեն նրանց «Հայկական դատից»։ Հայ բանվորությանը դասակարգային հեղափոխական պայքարից հեռու պահելու ազգայնական կուսակցությունների ջանքերը խրախուսում էին ԱՄՆ-ի տիրող դասակարգերը, քանի որ դրանք համապատասխանում էին նրանց շահերին։

Մինչև 1905 թվականը մասնակցե՞լ են արդյոք հայ բանվորները ամերիկյան սոցիալիստական շարժումներին, մենք փաստեր ու տեղեկություններ չունենք։ Հայտնի է, որ ԱՄՆ-ում գոյություն ունեին սոցիալիստական երկու ոչ-հետևողական հեղափոխական և մարքսիստական կուսակցություններ—բանվորական, որի պարագլուխն էր Դանիել դը Լեոն և սոցիալիստական, որը ղեկավարում էր Յուջին Դեպսը։ Սոցիալիստական կուսակցությունը, մանավորապես այդ կուսակցության ձախ թևը (որին պատկանում էր կուսակցության լիդեր Դեպսը),



digitised by A.R.A.R.@

հետագայում դարձավ ԱՄՆ-ի բանվորության դասակարգային պայքարի ղեկավարը։ Ձախ սոցիալիստները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին մնացին ինտերնացիոնալիզմի դիրքերում, դեմ դուրս եկան պատերազմին և դրան ԱՄՆ-ի մասնակցությանը։ ԱՄՆ-ի հայ բանվորներն սկսում են սոցիալիստական շարժման մեջ ներգրավվել 1904—1905 թթ.։ Դրան մեծ չափով նպաստում են Կովկասում ծավալվող հեղափոխական շարժումները և Կովկասի սոցիալ-դեմոկրատների գործունեությունը։ Ամերիկայի հայ բանվորների կազմակերպման նախաձեռնողները Թիֆլիսի էնֆիենջյանցի ծխախոտի գործարանի նախկին բանվոր Հայկ Ադամյանն էր և 90-ական թվականներից Ամերիկա գաղթած բանվոր Արամ Ջարդարյանը[1]։ Նրանց հաջողվում է մեկ—մեկ ու կես տարվա ընթացքում հավաքագրել սոցիալիզմի համակիր հայ բանվորներին, ներգրավել նրանց ԱՄՆ-ի սոցիալիստական կուսակցության շարքերը և 1906 թվականին մի քանի քաղաքների հայ սոցիալիստների ներկայացուցչական ժողովում հիմնադրել «Ամերիկայի սոցիալիստական հայ կազմակերպությունը»։

1907 թվականին առանձին գրքով լույս տեսան «ԱՄՆ-ի սոցիալիստական հայ կազմակերպության» ծրագիրը և կանոնադրությունը։ Նույն թվականին կազմակերպությունն ամերիկահայ բանվորներին ուղղված կոչ հրապարակեց, որտեղ ասված էր.

> «Ամերիկայի սոցիալիստ հայ կազմակերպութիւնն ալ Միացյալ Նահանգներուն մեջ գիտակցության հասած հայ բանվորներու կազմակերպությունն է, որ մասը կկազմե միջազգային սոցիալ-դեմոկրատիային և մասնավոր նպատակ ունի այս երկրի մեջ գտնվող հայ բանվորը քաղաքականապես և տնտեսապես կազմակերպելու և մյուս ազգերու բանվորության հետ միևնույն դրոշի տակ հավաքելու՝ ընդդեմ ընդհանուր թշնամու։
> ... Բանվոր ընկերնե՛ր, գործելու ժամը հասած է, մի՛ վարանիք, դեպի առա՛ջ, վարձկան գերության շղթաները փշրելու և թոթափելու ամեն մի բռնակալ լուծ»։

Պետք է նկատի ունենալ, որ հայ սոցիալիստական կազմակերպությունը մեկուսացած չէր, ամերիկյան սոցիալիստական կուսակցության հատվածն էր (ինչպես ռուսական, հունական և այլ հատվածները) և պատկանում էր սոցիալիստական ձախ, հեղափոխական թևին։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, հակառակ ԱՄՆ-ի աջ սոցիալիստների և հայկական ազգայնական բոլոր կուսակցությունների սոցիալ-շովինիստական դիրքին, հայ-սոցիալիստները նշավակում էին իմպերիալիստական պատերազմը և պայքարում Անտանտի շահերին նպաստող ազգայնական կուսակցությունների ձեռնարկումների դեմ։ Սակայն հայ սոցիալիստները սակավաթիվ էին, թույլ և զուրկ լայն կազմակերպական պրոպագանդիստական աշխատանք ծավալելու համար անհրաժեշտ նյութական միջոցներից։ Հայկական մյուս կուսակցություններն ու հոսանքներն ունեին իրենց թերթերն ու ամսագրերը, իսկ հայ սոցիալիստներն ստիպված էին իրենց գաղափարական հակառակորդների դեմ պայքարել սահմանափակ քանակով հրատարակվող «Գործավոր» ձեռագիր թերթով (որը լույս էր տեսնում Դետրոյտում), երբեմն էլ թռուցիկներով։

Հոկտեմբերյան հեղափոխությունը մեծ բեկում առաջացրեց ինչպես Ամերիկայի բանվորական, սոցիալիստական շարժման մեջ, այնպես էլ հայ աշխատավորների հասարակական-գաղափարական կյանքում։ ԱՄՆ-ի առաջավոր բանվորները Հոկտեմբերյան հեղափոխությանն արձագանքեցին գործադուլներով։ Բանվոր դասակարգի գիտակից մասը կանգնեց Հոկտեմբերյան հեղափոխության, Սովետական Ռուսաստանի պաշտպանության դիրքերում։ Այդ շարժումը գլխավորում էին ձախ սոցիալիստները, որոնց շարքերում էին առաջավոր հայ բանվորները։ Հայ բանվորական սոցիալիստական խմբերը պրոպագանդում էին հոկտեմբերի գաղափարները, դրվատում աշխարհում առաջին բանվորա-գյուղացիական պետությունը և նրա առաջնորդ՝ Վ. Ի. Լենինին։

Հեղափոխության առաջին օրերին Հայկ Ադամյանը, ինչպես նշել է «Նոր աշխարհ» թերթը (Նյու-Յորք), ասել է.

> «Ես լիովին ծանոթ եմ ընկեր Լենինին, նրա հեղափոխական տոկունությանը։ Նա, որ այս րոպեիս գլխավորում է հեղափոխությունը և ղեկավարում այն, առանց զիջողականության, մարքսիստորեն հեղափոխությունը տանում է դեպի վերջնական հաղթանակ» (№ 40, 1929 թ.)։

Հոկտեմբերյան հեղափոխության նկատմամբ իր համակրանքը հայտնեց ամերիկահայ սոցիալիստ Արամ Ջարդարյանը։ Բոստոնում հրատարակվող ռամկավար կուսակցության օրգան «Ազգ» թերթը 1918 թվականին, խոսելով ամերիկյան սոցիալիստների ձախ թևի բոլշևիկների հանդեպ ունեցած վերաբերմունքի մասին, գրում է.

> «Մեր հայ ընկերավարականներն ալ. երբ որ պոլշեւիկությունը տիրեց Ռուսաստանի մեջ, ցնծության աղաղակներով ողջունեցին պրոլետարիատի հաղթանակը» (1918 թ., դեկտեմբերի 5)։

Հայ սոցիալիստները ակտիվ մասնակցեցին Ամերիկայի կոմունիստական կուսակցության հիմնադրման համար մղվող պայքարին։ Ամերիկյան ձախ սոցիալիստները Հոկտեմբերյան հեղափոխությունից և III կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրումից հետո սահմանազատվեցին աջ սոցիալիստներից։ Վերջնական պառակտումը տեղի ունեցավ 1919 թվականի սեպտեմբերին։ Ձախ սոցիալիստները Չիկագոյում հրավիրեցին իրենց համագումարը և հիմք դրին կոմունիստական կուսակցությանը։ Հիմնադիր համագումարին մասնակցում էին սոցիալիստական կուսակցության հայկական հատվածից Արամ Ջարդարյանը, Սուրեն Տոհումյանը։ Հայկական հատվածը ամբողջովին հարեց կոմունիստական կուսակցությանը։

Հայ կոմունիստները գործում են կազմակերպված կոմբջիջներում։ Այսպես, օրինակ, 1919 թվականին Նյու-Յորքի կոմունիստական հայկական բջջին անդամակցում էին ցինկոգրաֆ-բանվոր Առաքել Թաթյանը, կարի գործարանի բանվորուհի Վարյա Ստեփանյանը, բանվոր Հակոբ Խաչատրյանը, ցինկոգրաֆ-բանվոր Արսեն Չոլախյանը և ուրիշներ։ 1920 թվականին կազմավորվում է ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության հայկական բյուրո, որի անդամներն էին՝ Ա. Ջարդարյանը, Ա. Թաթյանը, Ա. Չոլախյանը, Խ. Քյոսեյանը և Տ. Կոզիկյանը։

Այսպիսով, ստեղծվում է հայ կոմունիստների մի փոքր, բայց կայուն կորիզ, որն ակտիվ, հետևողական հեղափոխական աշխատանք է ծավալում ամերիկահայ բանվորության շրջանում, դառնում ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության ավելի ուշ ձևավորված հայկական ֆեդերացիայի շաղախը։ Այս խումբը կապեր է հաստատում հնչակյան և դաշնակցական կուսակցությունների շարքերում և հոկտեմբերյան հեղափոխության ազդեցության տակ գտնվող բանվորների հետ, որոնք սկսել էին քննադատաբար վերաբերվել ազգայնական կուսակցությունների ծրագրերին ու տակտիկային։ Գաղափարական մեծ բեկում առաջացավ հնչակյան և դաշնակցական կուսակցությունների բանվորական խավերում։

Հնչակյան սոցիալ-դեմոկրատական կուսակցության ամերիկյան մասնաճյուղի թերթերն ու ամսագրերը, որոնք Հոկտեմբերյան հեղափոխության, բոլշևիզմի գնահատման հարցում սոցիալ-շովինիզմի տեսակետներն էին պաշտպանում, փաստերի ճնշման տակ սկսեցին ավելի հաճախ նյութեր տպագրել Սովետական Ռուսաստանի, բոլշևիկների արտաքին ու ներքին քաղաքականության հաջողությունների մասին։

Համերաշխությունը Սովետական Ռուսաստանի նկատմամբ ավելի դրսևորվեց 1918 թվականի վերջին, երբ Գերմանիան պարտվեց, ու պարզ դարձավ հաղթանակած հեղափոխության երկրի ներքին գործերին Անտանտի պետությունների միջամտության էությունը։ Մինչև Գերմանիայի պարտությունը ռուսական գործերին միջամտելը դաշնակիցները պատճառաբանում էին իրենց ռազմական հակառակորդի դեմ կռվելու անհրաժեշտությամբ։ Գերմանիայի պարտությունից հետո սովետական կարգերի դեմ ուղղված ինտերվենցիան ակնհայտ դարձավ։

Իմպերիալիստների խաչակրաց արշավանքը մեծ զայրույթ առաջացրեց կապիտալիստական երկրների, ինչպես և ԱՄՆ-ի բանվորների շրջանում։ «Ձեռքներդ հեռո՛ւ Ռուսաստանից» կոչը դարձավ Սովետական Ռուսաստանին միջազգային պրոլետարիատի օգնության նշանաբանը։ Այս տեսակետից հետաքրքրական է Չիկագոյում լույս տեսնող հնչակյան «Երիտասարդ Հայաստան» թերթում «Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի» համագումարի մասին Գուրգեն Թահմազյանի Փարիզից գրած թղթակցությունը (1918 թ., օգոստոսի 17, № 31)։

> «Քերենսկին, որ հոս կգտնվի, իր բոլոր ջանքերուն հակառակ՝ չկրցավ համոզել բանվորությանը պոլշեւիկներու հակասոցիալիստական քաղաքականության մը հետևելուն վրա։ Աշխ. ընդ. դաշնակցության համար Լենինն է... որ այսօր կմարմնացնի ռուսական հեղափոխությունը։
> Երբ դաշնակիցները զինվորականապես միջամտեն՝ արտաքուստ Գերմանիայի դեմ քալելու նպատակով՝ բայց և այնպես իրերու բերումով պիտի պատերազմին պոլշեւիկներու դեմ, իսկ պոլշեւիկներու դեմ կռվելը հակահեղափոխության զարկ տալ կնշանակե։ Ահա ինչու համար դեմ կարտահայտվեն որեւէ միջամտության՝ զայն նկատելով ռուսական ժողովրդին կամքին հակառակ։ Որովհետև կսեն, եթե ռուս ժողովուրդը պոլշեւիկներուն դեմ ըլլար, անոնք ցարդ տապալված կլլային»։

Մի քանի ամիս անց 1918 թվականի դեկտեմբերին, երբ Գերմանիան արդեն պարտվել էր, իսկ Սովետական Ռուսաստանի դեմ դաշնակիցների ինտերվենցիան շարունակվում էր, Թահմազյանը Փարիզից գրում էր «Երիտասարդ Հայաստանին».

> «Ուրեմն վարագույրը պատռված է... այլեւս խոսք չկա գերմանացոց դեմ կռվելու, քանի որ պատերազմը վերջացավ։ Կռիվը կհայտարարվի սովետներու,

---

[1] Հ. Ադամյանը (Հ. Փիլոսյանը) մահացել է 1918 թ., Ա. Ջարդարյանը՝ 1967 թ.։





digitised by A.R.A.R.@

> րիտասարդ Հայաստանը» (1920 թ. հունիսի 30, № 15)։

Հոկտեմբերյան հեղափոխության և կոմունիստական շարժման աճող ազդեցությամբ պետք է բացատրել հնչակյան սոցիալ-դեմոկրատական կուսակցության շարքերում սկսված խմորումները։

Ամերիկայի կոմունիստական բանվորական կուսակցության կենտրոնական վարչության աջակցությամբ հայ կոմունիստների խմբին հաջողվում է 1920 թվականին Նյու-Յորքում հիմք դնել «Նոր հոսանք» թերթին, որի շուրջը համախմբվում են կոմունիստ և բողոքող հնչակյան բանվորներ ու մտավորականներ։

1921 թվականի հունվարից մինչև տարվա վերջը «Նոր հոսանք»-ը կանոնավոր կերպով լույս է տեսել ամիսը մեկ անգամ, 8 էջ ծավալով։

Նույն թվականի հոկտեմբեր ամսից այն հրատարակվում էր որպես «Հայ բանվորական միության օրգան» (մինչ այդ կոչվում էր «Աշխատավորական ամսաթերթ»)։ Հայ կոմունիստները 1921 թ. ամռանից հանդես էին գալիս «Հայ բանվորական միություն» լեգալ անունով։

«Նոր հոսանք» ամսաթերթը սիստեմատիկորեն լուսաբանում էր կոմունիստական շարժման թեորիական և տակտիկական հարցերը, Սովետական Ռուսաստանի ու նորաստեղծ Սովետական Հայաստանի կյանքը, նրանց տնտեսական ու քաղաքական հաջողությունները, մերկացնում դաշնակցական պարագլուխների ու մամուլի օրգանների հակասովետական բարբաջանքները։

«Հայ ընկերվարական կուսակցությունները» խորագիրը կրող հոդվածում նրա հեղինակ Հ. Մկրյանը, քննադատելով սոցիալիստական պիտակի տակ գործող հայ-ազգայնական կուսակցություններին, հատկապես դաշնակցությանը, նշում է, սակայն, որ հնչակյան շարքերում կան սոցիալիզմին անկեղծ համակրողներ, որոնց հետ պետք է աշխատանք տանել։

> «...Հարզանք ու անկեղծ ճամկրանք դեպի Մարքսն ու Լենինը,—գրում էր հեղինակը,—առատորեն կա այդ շարքերուն մեջ։ Քիչ մը ջանք, քիչ մը աշխատասիրություն և կտեսնինք, որ շարքերը կըզարգանան, որովհետև ճոն կան լավ տըրամադրություն ճանդեպ ընկերվարության»։

Ուշադրավ են պրոլետարական դիկտատուրայի հարցին նվիրված հոդվածները, որոնց մեջ քննադատվում են Կ. Կաուցկու տեսակետները և լուսաբանվում մարքսիստական-լենինյան հայացքը սոցիալիստական հեղափոխության, պետության, պրոլետարիատի դիկտատուրայի մասին։

«Նոր հոսանքը» մեծ խանդավառությամբ դիմավորեց սովետական կարգերի հաստատման լուրը Հայաստանում։ Երկրորդ համարում զետեղված «Սովետական Հայաստան» հոդվածում ասված էր.

> «Նոր ավետիս մըն է, որ շառերուն հրճվանք կպատճառե, իսկ ուրիշներուն՝ սարսափ։
>
> Հայաստան սովետական դարձած։
>
> Հրճվանք կպատճառե այն բոլոր պրոլետար բանվորներուն, որոնք գիտակցելով կապիտալիստական և պուրժուական քանդիչ ու աղետաբեր կարգերու ճասցրած անսահման չարիքն՝ կտեսնեն, որ երկիր մըն ալ կազատվի այդ գիշատիչ գերության ճանկերեն»։

Ամերիկահայ բանվորների համախմբումը կոմունիստական կուսակցության շուրջը առավել ուժեղ դրսևորվեց Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո։ Ավելի խորացան հակասությունները ռեակցիոն, հակասովետական ուժերի և առաջադիմականների, սովետները համակրողների միջև։ Կատարվեց այդ ուժերի բևեռացում։ Աշխատավորները հոծ զանգվածներով ողջունում էին սովետական կարգերի հաստատումը Հայաստանում, պատրաստակամություն հայտնում՝ օգնելու նորաստեղծ հանրապետությանը։ Նույնիսկ ռամկավարները որոշ տատանումներից հետո պատրաստակամություն հայտնեցին մասնակցելու հայրենիքի վերաշինման գործին։ Մյուս կողմից՝ սուր պայքարի տեղիք էր տալիս ԱՄՆ ճողոպրած դաշնակցական կառավարության մի շարք անդամների և կուսակցության լիդերների ստով ու զրպարտանքով շաղախված սանձարձակ պրոպագանդան Սովետական Հայաստանի և Սովետական Ռուսաստանի դեմ։ Ամերիկահայ կոմունիստները գլխավորում էին առաջադեմ ուժերի պայքարը դաշնակցության դեմ։

> «Հայ գործավոր,—գրված է ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության կոչում,—դու ալ մի կտորը պրոլետարական աշխարհին, չես կարող զլանալ քո գործակցությունդ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ։
>
> Ոռչափ զորավոր են ամեն երկրներու կոմունիստական կազմակերպությունները այնչափ և զորավոր և ճաջող կլլան արդեն կազմված պրոլետարական կառավարությունները։ Սովիեթ Հայաստանը չկրնար ապրել, քանի որ պուրժուական գայլերը կսպառնան անոր։
>
> Ուրեմն միացիր քու ընկերներուդ... ՄԻԱՑԵՔ ԿՈՄՈՒՆԻՍՏ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՆ, ՄԻԱՆԱԼՈՎ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ»։

Պառակտվեցին նաև դաշնակցության շարքերը։ Բազմաթիվ բանվորներ և մի շարք առաջավոր մտավորականներ դուրս եկան կուսակցության գծի դեմ՝ պահանջելով ճանաչել Սովետական Հայաստանը, օգնել նրա վերաշինման գործին, դադարել իմպերիալիստներին ծառայելուց։ Այս ոգով ԱՄՆ-ի քաղաքներում եղան բազմաթիվ աղմկալից ժողովներ, որոնք երբեմն նույնիսկ ավարտվում էին արյունահեղությամբ։ III ինտերնացիոնալին հարող ձախ դաշնակցական տարրերը՝ Սնար Սնարյանի գլխավորությամբ, սկսեցին համախմբվել և ձևավորվել որպես դաշնակցությունից անջատ կազմակերպություն։ Նրանք կապված էին հայ կոմունիստների և նրանց միջոցով ԱՄՆ-ի բանվորական (կոմունիստական) կուսակցության («Ուորկեր պարտիի») քարտուղար Ռուտենբերգի հետ և ստեղծեցին «Հայ աշխատավորական ֆեդերացիան» և նրա տպագիր օրգանը՝ «Աշխատավոր» թերթը։

1922 թվականի սկզբին հայ աշխատավորական ֆեդերացիայի 380 անդամ միանում են ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության հայկական ֆեդերացիային («Հայ բանվորական միությանը»), կազմում «Հայ բանվորական կուսակցություն», որն ամերիկյան բանվորական կուսակցության հայկական հատվածն էր, գործում էր նրա ընդհանուր ղեկավարությամբ։ Նյու-Յորքում 1922 թվականի փետրվարից սկսում է լույս տեսնել «Բանվորը»՝ Ամերիկայի հայ բանվորական կուսակցության օրգանը, որը Ալ. Մյասնիկյանն անվանեց խիզախ թերթ։

«Բողոքող հնչակյանները», որոնք ստվար թիվ էին կազմում, մեծ ազդեցություն ունեին իրենց կուսակցության մեջ, վարում էին կոմունիստներին մերձենալու գիծ, դատապարտում Սապահ Գյուլյանի և հնչակյան այլ լիդերների երկդիմի քաղաքականությունը։ Սապահ Գյուլյանը, չնայած իր բազմաթիվ պրոկոմունիստական ֆրազներին, ձգտում էր պահպանել հնչակյան կուսակցության ամբողջականությունը հին, նացիոնալիստական գաղափարական դիրքերում։

1921 թվականի փետրվարին Նիկարա Ֆոլսում կայացած Ամերիկյան շրջանի հնչակյան կուսակցության 36-րդ պատգամավորական ժողովը պաշտոնանկ արավ Սապահ Գյուլյանին և, միաժամանակ, որոշում ընդունեց պաշտպանել հընչակյան ընդհանուր համագումարում հնչակյան կուսակցության III ինտերնացիոնալին միանալու գաղափարը։ Հաջորդ պատգամավորական ժողովը կրկին հաստատեց նախորդ ժողովի որոշումը և հրահանգեց իր նորընտիր ղեկավար մարմնին, որ նա այդ իրագործի ԱՄՆ-ի բանվորական կուսակցության միջոցով։

Այդ որոշումը կատարվեց։ Հնչակյանները ամբողջությամբ մտան բանվորական կուսակցության մեջ՝ միանալով «Հայ բանվորական կուսակցությանը», որն այնուհետև կոչվեց «Ամերիկյան բանվորական կուսակցության հայկական ֆեդերացիա—ս.-դ. հնչակյան կուսակցություն»։ «Բանվորականները» տակտիկական նկատառումներով համաձայնեցին հնչակյան անվան ժամանակավոր պահպանման, ինչպես նաև «Երիտասարդ Հայաստանը» կոմունիստական կազմակերպության օրգան դարձնելու հետ։ Հետագա իրադարձություններն զգալ տվին իրենց սխալը։ Ազգայնական բնույթ չձերբազերծված մի շարք տարրեր, հատկապես հնչակյան պարագլուխները, բռնեցին ինտրիգների ու պառակտումների ուղին։

Այդ պայմաններում դրությունը ավելի սրվեց, երբ «Հայ բանվորական կուսակցության» նախկին անդամների մի մեծ խումբ Սնարյանի գլխավորությամբ հեռացավ «Ամերիկյան բանվորական կուսակցության հայկական ֆեդերացիայից»՝ այն համարելով ոչ-հետևողական կոմունիստական։ Սնարյանի ազանդավորական քայլը ուժեղացրեց ֆեդերացիայի պառակտումը։ Սնարյանի արարքը դատապարտեց Ամերիկյան բանվորական կուսակցության գործկոմը և նրանից պահանջեց վերջ տալ ֆրակցիոն պայքարին ու վերադառնալ ֆեդերացիայի շարքերը։

Ժամանակին ամերիկյան բանվորական կուսակցության հայկական ֆեդերացիայում ծագած տարաձայնությունների հարցը քննարկվեց (1923 թվականի դեկտեմբերի 27-ին) կոմունիստական կուսակցության վերադաս օրգաններում և ընդունվեց որոշում ի վնաս պառակտիչների։

Հնչակյան լիդերները և անկայուն տարրերը հեռացան կոմունիստական կուսակցությունից, իսկ կոմունիստական սկզբունքներն ընդունած նախկին հնչակյանները մնացին Բանվորական կուսակցության մեջ։ Դրությունը շտկվեց, ազգայնական տենդենցները հաղթահարվեցին և 1924 թվականի օգոստոսին վերջնականապես ձևավորվեց Ամերիկյան բանվորական կուսակցության հայկական հատվածը, որի տպագիր օրգանը դարձավ «Պրոլետար» թերթը։

Ամերիկահայ կոմունիստական շարժման աճման ու ծավալման գործում նախաձեռնությունը պատկանում է Ամերիկյան կոմունիստական կուսակցությանը (Ուորկեր կուսակցությանը), հատկապես նրա գլխավոր քարտուղար Ռուտենբերգին։ Հայկական ֆեդերացիայի հարցը մի քանի անգամ քննարկել է բանվորական կուսակցության գործադիր կոմիտեի քաղաքական հանձնաժողովը, որի որոշմամբ հրավիրվել են ֆեդերացիայի 1924 թվականի փետրվարյան խորհրդակցությունը և օգոստոսյան համագումարը։ Այդ միջոցառումներին անձամբ մասնակցել և ելույթներ է ունեցել Ռուտենբերգը։

1924 թվականին, անդրադառնալով հայկական գաղութներում ծավալված կոմունիստական շարժման հարցին, Ալ. Մյասնիկյանը գրել է.





digitised by A.R.A.R.@

«Կոմունիստական կազմակերպություններից ամենամեծը և հինը Ամերիկայինն է.. Նա հանդիպեց մի շարք ձախորդությունների, ընդհարվեց խոչընդոտների, սայթաքեց ու ոտքի կանգնեց: Կոմունիզմը չի ծնվում առանց երկունքի: Մանավանդ հայ կյանքում, այն էլ գաղութներում՝ ունենալով իր դեմ զորեղ նացիոնալիստական հոսանքներ: Իսկապես ասած, հայ կյանքում այսօր կա երկու հասարակական բևեռ՝ կոմունիզմ և նացիոնալիզմ կամ բոլշևիզմ և դաշնակիզմ» *(«Կուսակցությունները գաղութահայության մեջ», Թիֆլիս, 1924 թ., էջ 125):*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, Հայաստանում սովետական կարգերի հաստատումը արմատական ազդեցություն ունեցան գաղութահայ, ինչպես և ամերիկահայ հասարակության վրա: Հասարակական հոսանքները բյուրեղացան, հայ աշխատավորությունը դուրս եկավ ազգային պարփակվածությունից, կապվեց Ամերիկայի և ամբողջ աշխարհի առաջավոր, բանվորական, կոմունիստական շարժման հետ, ստեղծվեց և զորեղացավ Ամերիկայի կոմունիստական կուսակցության հայկական հատվածը: Այն մեծ ու անձնվեր աշխատանք կատարեց Ամերիկայի հայ աշխատավորության շրջանում, պայքարեց դաշնակցության դեմ, ամերիկահայ բոլոր առաջադիմական ուժերը համախմբեց դեմոկրատիայի, խաղաղության ու սոցիալիզմի դրոշի շուրջը, կոփեց ու ամրապնդեց Սովետական Միությանն ու Սովետական Հայաստանին նվիրված անկեղծ բարեկամների բանակը, որն այսօր էլ շարունակում է իր առաջադիմական, հայրենանվեր գործունեությունը, պրոպագանդում Սովետական Հայաստանի սոցիալ-քաղաքական, տնտեսական ու կուլտուրական հաջողությունները, ամրապնդում ամերիկահայ աշխատավորության և մայր հայրենիքի կապը, ընթանում միջազգային առաջադիմական ուժերի հետ համերաշխ՝ հանուն խաղաղության և սոցիալական առաջադիմության:*

# Գիտությունը և կյանքը

ՂԱԶԱՐՅԱՆ Վ. Հ.

Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ

## ՍՈՎԻ ԵՐԿՅՈՒՂՆ ԱՆՀԻՄՆ Է

*Բոլոր հակամարտ հասարակական ֆորմացիաների հիմնական սոցիալական չարիքն են եղել բնակչության մեծամասնության մշտական կիսաքաղցն ու սովը: Այդ ֆորմացիաները ո՛չ միայն չեն կարողացել վերացնել այդ չարիքը, այլ ընդհակառակը, նպաստել են, մի կողմից՝ տիրապետող փոքրամասնության բարգավաճմանն ու շռայլ կյանքին, մյուս կողմից՝ բնակչության մեծամասնության թշվառությանը:*

*Սովի և աղքատության հաղթահարումը և այդ պրոբլեմների վերջնական լուծումը մինչև օրս էլ հասարակության ամենահիմնական և մշտապես հուզող հարցերից են: Չնայած մարդկային մտքի և գործունեության հարաճուն վերելքին, ինչպես և մթերքների արտադրության զգալի աճին, այնուամենայնիվ, թերասնումն ու սովը դեռևս շարունակում են պահպանել մարդկությանը նետած մարտահրավերը և մնալ որպես հասարակության ամենակատաղի թշնամին: Երկրի վրա սովից տարեկան մահանում են 30—40 միլիոն մարդ, իսկ Հնդկաստանում՝ 1000 երեխայից՝ 200-ը, հիմնականում այն պատճառով, որ նրանց ծնողները անկարող են սննդամթերք հայթայթել:*

*Գաղութային և կիսագաղութային երկրներում մեծ չափով կրճատվել են հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները՝ տեխնիկական և այլ բույսերի պլանտացիաների ընդարձակման պատճառով, որոնցից ստացվող շահույթը շատ ավելի մեծ է: Դրանով իսկ այդ երկրներում խախտվել է մարդկանց թվի և բնության հնարավորությունների միջև եղած հավասարակշռությունը:*

*Մեր ժամանակներում, թերևս, ամենացավալին այն է, որ հասարակության զարգացմանը զուգահեռ սովի պրոբլեմը ոչ թե մոտենում է իր լուծմանը, այլ ավելի բարդանում մի շարք երկրներում, որտեղ շարունակվում է հասարակության ինտենսիվ աճը, իսկ նյութական բարիքների արտադրությունն զգալիորեն ցածր է: Այդպիսիք են, առաջին հերթին՝ Արևելքի մի շարք երկրներ, ուր բնակվում է մոլորակի մարդկության մեծամասնությունը: Այդ երկրներում նույնքան պրոգրեսիվ իջնում է արտադրըվող սննդամթերքների՝ մեկ շնչին ընկնող բաժինը: Ահա թե ինչ են ցույց տալիս հետևյալ տըվյալները.*

Ցորենի բերքատվությունը (հեկտար/տոննա)
Հնդկաստանում և Ալժիրում

| | *Հնդկաստան* | *Ալժիր* |
|---|---|---|
| *1912 թ.* | *0,82* | *0,72* |
| *1937 թ.* | *0,74* | *0,52* |
| *1960 թ.* | *0,79* | *0,46* |

*Ինչպես տեսնում ենք, 50 տարվա ընթացքում այդ երկրներում զգալիորեն իջել է ցորենի՝ գյուղատնտեսական այդ հիմնական կուլտուրայի բերքատվությունը: Այդպիսին է բերքատվությունը նաև թույլ զարգացած մի շարք այլ երկրներում: Այսպես, օրինակ՝ 1960 թ. ցորենի բերքատվությունը հեկտարից կազմել է. Բրազիլիայում՝ 0,65, Պերուում՝ 0,80, իսկ Սիրիայում՝ 0,36 տոննա: Բերված տվյալները վկայում են, որ նշված երկրների սոցիալական պայմանները հնարավորություն չեն ստեղծում գյուղատնտեսության (և ո՛չ միայն գյուղատնտեսության) զարգացման, հետևաբար ժողովրդի նյութական կարիքների, առաջին հերթին՝ սննդի աղբյուրների ընդլայնման համար:*

*Միացյալ ազգերի գյուղատնտեսության և պարենավորման կազմակերպության ուսումնասիրություններից պարզվում է, որ, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, սննդի արտադրության համաշխարհային մակարդակն աճել է ավելի քան 50 տոկոսով և, չնայած դրան, մեկ շնչին ընկնող սննդի*



digitised by A.R.A.R.@

նորման բոլորովին էլ չի ավելացել, քանի որ աշխարհի բնակչության թիվն զգալի չափով մեծացել է։ Այդ է հիմնական պատճառը, որ Հեռավոր Արևելքի բնակչությունը մշտապես հետապնդել և շարունակում է հետապնդել համատարած սովը, որը մոլեգնում է, հատկապես, անբերրի տարիներին, իր հետ բերելով մասսայական թշվառություն, միլիոնավոր զոհեր։

Երկրի այդ մասի բնակչության ցածր կենսամակարդակի ամենաակնառու ցուցանիշն այն է, որ նա օգտագործում է սննդամթերքների համաշխարհային արտադրության միայն մեկ քառորդը։ Դրան հակառակ, չնայած Հյուսիսային Ամերիկայի և Եվրոպայի բնակչությունը կազմում է աշխարհի մարդկության միայն մեկ քառորդը, սակայն ծախսում է մթերքների համաշխարհային արտադրության կեսից ավելին։ Խիստ հակասական պատկեր կստացվի, եթե համեմատենք կենդանական յուղի օգտագործման չափը Հեռավոր Արևելքի և Հյուսիսային Ամերիկայի ու Եվրոպայի երկրներում։ Այդ տվյալները, վերջին հաշվով, ցույց են տալիս, որ երկրի բնակչության հսկայական մասը կա՛մ թերսնվում, կա՛մ մշտապես տառապում է սովից, որին ամենուրեք զուգակցում են բազմաթիվ հիվանդություններ, հոգեկան տառապանքներ և վաղաժամ մահ... Սովի հետևանքով այդ ժողովուրդը հեծում է տգիտության, անգրագիտության և ճորտատիրության ճիրաններում։ Թույլ զարգացած երկրներում մահացությունը 10 և ավելի անգամ բարձր է, իսկ մարդկանց կյանքի տևողությունը հասնում է ծայրահեղ մինիմումի։

Մյուս կողմից՝ փորձը ցույց է տալիս, որ վերջին մի քանի տասնամյակներում երկրի բնակչությունն զգալի տեմպերով աճում է։ Միացյալ ազգերի կազմակերպության հաշվարկներով 1965 թ. 3 218 միլիոն բնակչությունը 2000 թ. կկրկնապատկվի՝ հասնելով 6 130 միլիոնի։ Դրան համապատասխան կբարձրանան նաև բնակչության՝ սննդամթերքի պահանջները։ Թվում է, այս բոլոր փաստերը խոսում են հօգուտ անգլիական ռեակցիոն տնտեսագետ Թոմաս Մալթուսի հանրածանոթ այն տեսության, թե «բնական» օրենքի համաձայն հասարակությունն աճում է երկրաչափական, իսկ սննդի աղբյուրները՝ թվաբանական պրոգրեսիայով։ Ըստ այս տեսության կապիտալիզմի պայմաններում աշխատավորների նյութական զրկանքների, սովի և կիսաքաղցի պատճառը ո՛չ թե տիրապետող սիստեմն է, տվյալ հասարակական ֆորմացիայի անարդարացի էությունը, այլ բնությունը, որն, իբրև, անկարող է իր բարիքներով բավարարել արագ բազմացող մարդկությանը։ Այդ տեսության նորագույն պաշտպաններից մեկը՝ ամերիկյան նեոմալթուսական Վ. Ֆոգտը պնդում է, որ եթե մարդկությունն անկարող է բավարարվել եղած գյուղատնտեսական օգտահողերից ստացվող սննդամթերքներով, ապա անհրաժեշտ է մտածել բնակչության թվի կրճատման մասին՝ ցանկացած եղանակներով։

1913 թ. «Правда»-ի համար գրած Վ. Ի. Լենինի «Բանվոր դասակարգը և նեոմալթուսականությունը» հոդվածում կարդում ենք. «...մենք անպայման թշնամիներ ենք նեոմալթուսականության, այդ հոսանքի, այդ եսասեր քաղքենիական զույգի համար, որը վախեցած մրթմրթում է՝ մենք, տա աստված, մի կերպ դիմանանք, իսկ երեխաներ, ավելի լավ է չլինեն» (Երկեր, հ. 19, էջ 280—281)։

Մալթուսի և նրա արդի կողմնակիցների կարծիքի անհեթեթությունն ու ռեակցիոն բնույթն ակներև են հենց Ռուսաստանի օրինակի վերլուծմամբ։ Մինչհոկտեմբերյան Ռուսաստանի բազմազգ բնակչության մշտական ուղեկիցն են եղել սովը և համաճարակները։ Ռուսաստանի «ժողովրդական հիվանդությունը» մշտապես եղել է թերսնումը։ Միայն XVIII դարում եղել են 34 սովի տարիներ, XIX դարում՝ ավելի քան 40, իսկ մեր դարում, հեղափոխությունից առաջ՝ 7 այդպիսի տարիներ։ Նույնիսկ ցարական Ռուսաստանի ներքին գործերի մինիստրության 1908 թ. հաշվետվություններից մեկում ասված է, որ սովամահության սպառնալիքը Ռուսաստանի հողագործների զգալի թվի ամենամյա հնարավոր ճակատագիրն է։

Ռուսաստանի ժողովուրդները մեծ Հոկտեմբերի շնորհիվ վերջնականապես ազատագրվեցին սովի և կիսաքաղցության ճիրաններից։ Գյուղատնտեսության կոլեկտիվացման ու մեքենայացման, նոր, առաջավոր ագրոտեխնիկական եղանակների կիրառման, հանքային պարարտանյութերի արտադրության ավելացման, ցանքատարածությունների ընդարձակման և մի շարք այլ միջոցառումների շնորհիվ արմատապես լուծվեց գյուղատնտեսական մթերքների ընդլայնված արտադրության դժվարագույն հարցը և դրանից բխող սովի պրոբլեմը։

Սոցիալական վերափոխումներից բացի, որն, իհարկե, ամենագլխավորն է նշված պրոբլեմի լուծման գործում, ժամանակակից հասարակությունն իր տրամադրության տակ ունի բազմաթիվ այլ միջոցներ, որոնց կիրառմամբ կվերանան կիսաքաղցն ու սովը, զգալի չափով կբարձրանա երկրի բնակչության կենսամակարդակը, մարդկանց դարձնելով նյութապես շատ ավելի ապահով, քան այսօր։

* * *

Մարդու կյանքը, չնայած ժամանակակից հասարակության հոգևոր ու նյութական կուլտուրայի աննախընթաց վերելքին, մինչև օրս էլ լրիվ կախված է բուսական աշխարհից։ Միակ



օրգանիզմները, որոնք ընդունակ են անօրգանական տարրերից էներգիայով հարուստ օրգանական միացություններ, ինչպես և բազմապիսի սննդամթերքներ սինթեզել, բույսերն են։ Այս տեսակետից մարդը ոչնչով չի տարբերվում այն պարազիտներից, որոնք բնակվում են բույսերի վրա և սնվում ու բազմանում են նրանց հաշվին։ Թերևս միակ տարբերությունն այն է, որ մարդն օգտագործում է բույսի մեջ սինթեզվող ամենաարժեքավոր նյութերը։ Մյուս կողմից՝ մարդու երկարամյա ու նպատակասլաց գործունեության շնորհիվ վերափոխվել են 300 հազար ծաղկային բուսատեսակներից միայն 5000-ը, որոնք, ի տարբերություն իրենց վայրի նախորդների, սինթեզում են ավելի մեծ քանակությամբ և ավելի սննդարար նյութեր։ Մինչդեռ պարազիտ օրգանիզմները բնակվում են երկրի բուսական ծածկոցի բոլոր ներկայացուցիչների վրա, որոնց թիվն անցնում է կես միլիոնից։

Երկրի վրա աճող բոլոր բույսերը, միասին վերցրած, ամեն տարի սինթեզում են ավելի քան 375 միլիարդ տոննա օրգանական բազմազան նյութեր, որոնք մեր մոլորակի բնակիչների՝ մարդկանց, կենդանիների և միկրոօրգանիզմների սննդի միակ աղբյուրն են։ Ամբողջ բուսական պաշարները միասին վերցրած կազմում են ավելի քան երեք տրիլիոն տոննա, որից յուրաքանչյուր մարդու միջին հաշվով ընկնում է հազար տոննա։ Սակայն մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ երկրի մակերեսի վրա ամեն տարի սինթեզվող օրգանական նյութերից միայն 16 միլիարդն է կազմում կերային մասը, որից 13 միլիարդը ունի բուսական, իսկ 3 միլիարդը՝ կենդանական ծագում։ Իրականում այժմ ցամաքից և ջրերից հավաքվում են 110 միլիարդ տոննա օրգանական նյութեր։ Սննդի տարեկան օգտագործումը 1959—1961 թթ. հասել է 600 միլիոն տոննա բուսական և 60 միլիոն տոննա կենդանական ծագում ունեցող օրգանական նյութերի, որոնք, միասին վերցրած, կազմում են մեր մոլորակի վրա սինթեզվող բոլոր տիպի օրգանական նյութերի միայն 0,17 տոկոսը։

Օրգանական նյութերի այդպիսի մեծ քանակի միայն 10 տոկոսն է բաժին ընկնում ցամաքային բույսերին, շատ ավելի փոքր մասը՝ գյուղատնտեսական կուլտուրաներին։ Չնայած նշված բույսերը մեր հիմնական խնամակալներն են, բայց, ցավոք սրտի, մինչև օրս էլ զբաղեցնում են մայր ցամաքների ընդհանուր մակերեսի ոչ մեծ տոկոսը։

Բերված փաստերը վկայում են, որ չնայած բուսական աշխարհն ունի վիթխարի հնարավորություններ ժամանակակից հասարակության սննդի և այլ կարիքների բավարարման համար, բայց և այնպես մարդը դեռևս չի կարողացել օգտագործել այդ հնարավորությունները, որի պատճառով էլ շատ երկրներում սովը դեռ շարունակում է մոլեգնել։

Գոյություն ունեն մթերքների արտադրության ավելացման բազմաթիվ ռեալ եղանակներ, որոնց վրա այժմ կենտրոնացված է մեր հասարակության հիմնական ուշադրությունը։ Մյուս կողմից՝ մարդկային մտքի, կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի զարգացման շնորհիվ անընդհատ մեծանում է այդ միջոցների թիվը, ընդլայնվում հեռանկարները։ Նոր և գալիք սերունդների գործունեության հիմնական խնդիրը պետք է լինի այդ։

Բուսական սննդի աղբյուրների ավելացման հիմնական ուղիներից մեկը գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների պրոգրեսիվ ընդլայնումն է բոլոր երկրներում։ Այժմ տարբեր մայր ցամաքներում հողատարածություններն անհավասարաչափ են օգտագործվում։ Եվրոպայում ցանքային կուլտուրաներն զբաղեցնում են 31, ԱՄՆ-ում՝ 11, Աֆրիկայում՝ 9, իսկ Հարավային Ամերիկայում՝ 4 տոկոսը։ Այդ թվերը պարզորոշ բացահայտում են նշված երկրներում նոր հողատարածությունների օգտագործման ճանապարհով գյուղատնտեսական մթերքների ավելացման հեռանկարները։ Ենթադրվում է, որ 2000 թ. հնարավոր կլինի գյուղատնտեսական կուլտուրաներին հատկացվող տարածություններն ընդլայնել առնվազն 8—10 միլիոն քառակուսի կիլոմետրով։ Դրա շնորհիվ գյուղատնտեսական մթերքների արտադրանքը կավելանա ավելի քան 45 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հաջորդ միջոցը օգտագործվող հողատարածությունների բերքատվության բարձրացումը, առաջին հերթին՝ այն առաջավոր երկրների մակարդակին հասցնելն է։ Դրա շնորհիվ հնարավոր կլինի ստանալ առնվազն 4—5 անգամ ավելի շատ բուսական ծագում ունեցող սննդամթերքներ, քան ձեռք է բերվում այժմ։ Սակայն, թերևս, հարկ կա նշելու, որ ներկայումս առաջավոր երկրների բերքատվության աստիճանը չի հասել այն հնարավոր օպտիմումին, որին ձգտում են նրանք։ Միայն վերջին 23 տարվա ընթացքում (1937—1960 թթ.) ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Անգլիայում և Գերմանիայում ցորենի միջին բերքատվությունը (տոննա/հեկտար) բարձրացել է, համապատասխանաբար, ավելի քան 191,2, 187,9, 169,9 և 15,6 տոկոսով։ Հողագործության կուլտուրայի աննախընթաց վերելքը և նոր, ավելի բերքատու սորտերի ստացումը հնարավորություն են ընձեռում պահպանելու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ավելացման ժամանակակից տեմպը։

Գաղութային և կիսագաղութային երկրներում գյուղատնտեսական արտադրության զարգացման աստիճանը, բերքատվությունը Եվրոպայի առա-



digitised by A.R.A.R.@

ջավոր երկրների կամ ԱՄՆ-ի մակարդակին հասցնելու համար պահանջվում են սոցիալական կարգի արդյունավետ վերափոխումներ՝ ագրարային հարաբերությունների արմատական բարելավում և կիսաֆեոդալական կարգերի վերացում: Այդ հնարավորություն կընձեռի առավել չափով մեքենայացնելու գյուղատնտեսությունը, լայնորեն կիրառելու առաջավոր ագրոտեխնիկան: Դրա հետ մեկտեղ, պահանջվում են հսկայական դրամական ներդրումներ այդ երկրների գյուղատնտեսության մեջ, ինչպես և գյուղատնտեսության մասնագետների պատրաստման գործում:

Ամենածանր և դժվարլուծելի հարցերից մեկը գյուղատնտեսության մեջ ներդրվող կապիտալ միջոցների հայթայթումն է, առանց որի անհնար է դրա վերելքը: Նույնիսկ գյուղատնտեսական արտադրության տեսակետից այնպիսի առաջավոր երկիր, որպիսին ԱՄՆ-ն են, ամեն տարի զգալի միջոցներ են ներդնում գյուղատնտեսության մեջ, առանց որի անհնար է պահպանել մթերքների արտադրության բարձր մակարդակը: Միայն 1960 թ. ԱՄՆ-ի գյուղատնտեսության մեջ ներդրվել է 50 միլիարդ դոլար:

Մյուս կողմից՝ այդ նույն երկրում ամեն տարի ռազմական նպատակների համար ծախսվում է 80 և ավելի միլիարդ դոլար, իսկ կապիտալիստական մյուս երկրներում՝ դրա կեսի չափ: Եթե կապիտալիստական և սոցիալիստական բոլոր երկրների ռազմական ծախսերը միասին վերցրած առնվազն հինգ տարի անընդհատ հատկացվեն աշխարհի չզարգացած երկրների գյուղատնտեսությանը, ապա այն կհասնի ԱՄՆ-ի գյուղատնտեսության մակարդակին: Զինաթափման պրոբլեմի լուծումը և թույլ զարգացած երկրներին օգնելը գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելքի ամենահիմնական միջոցներից են:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությանը հսկայական վնաս է հասցնում վնասատու միջատների, կրծողների և հիվանդությունների հարուցիչների անհելի բանակը: Կենդանական այդ բազմազան աշխարհը սնվում է բուսական օրգանիզմներում սինթեզվող առատ սննդով, քայքայում է դրանք և մեծ վնաս պատճառում բերքին: Դրա հետևանքով գյուղատնտեսական կուլտուրաների բերքի մեկ երրորդ մասը կորչում է: Գյուղատնտեսության վնասատուների դեմ արդյունավետ պայքարի կազմակերպումը և նոր, իմուն սորտերի ստեղծումը հնարավորություն կընձեռեն՝ փրկելու բերքի այդպիսի կորուստը և միլիոնավոր մարդկանց ապահովելու սննդամթերքներով:

Մարդկային սննդի մեծ պահեստաֆոնդ են նաև երկրի հսկայական անտառային զանգվածները, ուր յուրաքանչյուր տարի սինթեզվում են միլիարդավոր տոննա օրգանական նյութեր: Մայր ցամաքների վրա եղած անտառային լայնածավալ մասսիվներում ամեն տարի սինթեզվում են օրգանական նյութերի հսկայական պաշարներ, որոնց շատ փոքր մասն է օգտագործվում մարդու կողմից: Տարեկան միլիոնավոր տոննաների են հասնում անտառի թափուկները, խաշամը: Այսպես, օրինակ, հաճարի անտառներում մեկ հեկտար տարածության վրա յուրաքանչյուր վեգետացիոն շրջանում թափվում են ավելի քան 4 տոննա բուսական մնացորդներ (տերևներ, ճյուղեր և այլ մասեր): Հարավային աշխարհագրական լայնություններում եղած անտառներում, որտեղ կլիմայական պայմանները նպաստավոր են փարթամ բուսական համակեցությունների զարգացման համար, նշված խաշամն ամեն տարի հասնում է 8 և ավելի տոննայի: Մի քանի անգամ ավելի շատ բուսական մնացորդներ են առաջանում անտառային մասսիվների համատարած հատումներից: Այս բոլոր թափուկները ժամանակի ընթացքում քայքայվում, ենթարկվում են, այսպես կոչված, միներալիզացիայի, դրա մեջ եղած օրգանական նյութերը դառնում են միկրոօրգանիզմների և պարազիտ սնկերի սնունդ:

Բուսական այդ հսկայական զանգվածները պարունակում են անսահման քանակությամբ էներգիայով հարուստ նյութեր. միկրոբիոլոգիական պրոցեսների շնորհիվ դժվար չէ դրանք վերափոխել մարդու համար պետքական սննդանյութերի: Միկրոօրգանիզմների շատ արժեքավոր ռասաներ սնվելով այդ նյութերով, դրանց փոխարեն սինթեզում են մեծ քանակությամբ սպիտակուցներ, որոնք կարող են ծառայել, առաջին հերթին՝ որպես անասնակեր:

Բույսերը միայն սննդի աղբյուր չեն մարդու համար: Բազմաթիվ բույսերից, որոնք զգալի տարածություններ են զբաղեցնում, ստացվում են դեղանյութեր, վիտամիններ, ներկանյութեր և այլն: Թելատու (բամբակը, վուշը, կանեփը), կաուչուկատու կուլտուրաները շատ երկրներում դուրս են մղում կերաբույսերը:

Քիմիայի աննախընթաց վերելքը տարեցտարի ընդլայնում է նոր, ավելի արժեքավոր նյութեր սինթեզելու հնարավորությունները: Այդ նյութերը մեծ հաջողությամբ և արագ փոխարինում են բնական ճանապարհով ստացվող հագուստին, կաուչուկին, դեղային և այլ բույսերի: Ենթադրվում է այս եղանակով 2000 թ. ազատել հսկայական բերրի հողատարածություններ, ավելի քան 30 տոկոսով ընդլայնել հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը:

Յուրաքանչյուր տարի մեծ դժվարություններով ձեռք բերված սննդամթերքների զգալի տոկոսը ծախսվում է գյուղատնտեսության մեջ օգտագործվող կենդանի բանուժի (ձիերի, ուղտերի, եզների, գոմեշների, ջորիների) սնման ու պահպանման վրա (որոնց թիվն ավելի մեծ է չզարգացած երկրներում): Մեծ չափով սննդամթերք կազատվի գյուղատնտեսական տեխնիկայի ընդլայնմամբ, կատարելագործմամբ և մասսայական օգտագործմամբ. այդպիսով հնարավոր կլինի կերակրել ավելի քան 1 900 միլիոն մարդ:

Չափազանց ուշագրավ է այն փաստը, որ սինթեզվող օրգանական նյութերի ավելի քան 90 տոկոսը բաժին է ընկնում օվկիանոսային ու ծովային բույսերին: Մեր երկիրը իրականում ծովային մոլորակ է. նրա մակերևույթի 70,8 տոկոսն զբաղեցնում է ջուրը, իսկ 29,2-ը՝ ցամաքը: Համաշխարհային օվկիանոսի մակերեսը հասնում է 1,37 միլիարդ քառակուսի կիլոմետրի, որտեղ բազմանում ու զարգանում է երկրի օրգանական նյութերի $^{9}/_{10}$ մասը: Այդ բացատրվում է նրանով, որ ջրի մեջ կյանքն առավելապես տարածված է 3,8 կիլոմետր խորքերում, իսկ ցամաքում՝ հիմնականում հողի վերին մակերևույթում (բացառությամբ համատարած հսկայական անապատային զանգվածների, ձյունապատ լեռնաշղթաների ու լեռնագագաթների, լերկ ժայռերի):

Ջրում այդպիսի քանակությամբ օրգանական նյութերի առաջացումն ու զարգացումը պայմանավորված են հիմնականում պլանկտոնային օրգանիզմների առատությամբ: Միայն մեկ խոր. սմ. ջրում ապրում են մեկ ու կես միլիոն բակտերիաներ, իսկ մեկ խոր. կմ-ում՝ մինչև 500 տոննա: Ավելի շատ հայտնաբերվում են պլանկտոնային ջրիմուռներ, որոնք հանդիսանում են ջրային զանգվածների հիմնական արտադրական ուժը: Օրգանական նյութերի այդպիսի առատությունը ծովաջրերում արդյունք է հիմնականում այդ ջրիմուռների արագ բազմացման ու տարածման: Վերջիններս ամեն տարի ֆոտոսինթեզի ճանապարհով արտադրում են մինչև 36 միլիարդ տոննա թթվածին և կլանում ավելի քան 4 միլիարդ տոննա ազոտական, 0,5 միլիարդ տոննա ֆոսֆորական աղեր և 1,2 միլիարդ տոննա երկաթ: Ջրային պլանկտոնի (բուսական ու կենդանական մանր օրգանիզմների) միաբջիջ ջրիմուռները քլորոֆիլ սինթեզելու համար շատ ավելի երկաթ են կլանում ջրից, քան կարող են արտադրել աշխարհի բոլոր մետալուրգիական գործարանները: Օվկիանոսներում ապրող բոլոր կենդանիների սննդի հիմնական աղբյուրը հենց այդ ջրիմուռներն են: Հասկանալի է, որ ջրային զանգվածներում կուտակվող այդքան մեծ քանակությամբ սննդանյութերի առկայության պայմաններում պետք է աճի, զարգանա ու ավելի բազմակողմանի դառնա կենդանական աշխարհը (գլխավորապես կրազմանյան ձկները), որի հանդեպ մեր պահանջները տարեցտարի մեծանում են: Այժմ տարեկան արդյունահանվում են ոչ ավելի, քան 50 միլիոն տոննա ձկներ ու մթերատու այլ կենդանիներ, մինչդեռ մարդկության պահանջները երկու անգամ ավելի են: Համաշխարհային օվկիանոսում կան 32,5 միլիարդ տոննա օգտակար կենդանիներ, ուստի և հնարավոր է զգալի չափով ավելացնել ձկնորսությունը և ջրային այլ օգտակար կենդանիների հայթայթումը:

Մսի արտադրության ավելացման գործում շատ ավելի կարևոր է անասնապահության զարգացումը: Այժմ մսի համաշխարհային տարեկան արտադրանքը չի գերազանցում 80 միլիոն տոննայից, իսկ մեր պահանջները շատ ավելի են, քան ստանում ենք: Մսի արտադրության ավելացման ամենահիմնական եղանակներից մեկը մարգագետինների ու արոտավայրերի ընդլայնումն է, դրանց արդյունավետության բարձրացումը: Մարգագետիններն ու արոտներն այժմ զբաղեցնում են ցամաքի ընդհանուր տարածության միայն 17 տոկոսը, բայց զանազան երկրներում խիստ տարբերվում են բուսական կազմով և բերքատվությամբ: Մեկ տոննա բարձրորակ կերը մսատու կենդանու օրգանիզմում վերափոխվում է 2—3 ցենտներ մսի: Դրա փոխարեն ցածրորակ ու վայրի անասնակերի նույն քանակը տալիս է մեկ ցենտներից պակաս միս: Մյուս կողմից՝ միևնույն կերաբաժնով կերակրելիս տարբեր ցեղերի անասուններ տալիս են անհավասարաչափ միս: Այստեղ առաջին հերթին կարևոր դեր են կատարում անասունների բիոլոգիական առանձնահատկությունները: Մարդու անելիքներն այս բնագավառում չափազանց շատ են, մանավանդ նոր, բարձրորակ, մսատու ցեղերի ստացման և հնի բարելավման գործում:

***

Վերը թվարկած բոլոր միջոցները հիմնականում վերաբերում են բուսական աշխարհի կողմից սինթեզվող օրգանական նյութերի օգտագործման հեռանկարների ընդլայնմանը: Սակայն դրա հետ միասին բոլորովին չեն բացառվում այն եղանակները, որոնց օգնությամբ հնարավոր է բարձրացնել բույսերի կողմից օրգանական նյութերի սինթեզման արդյունավետությունը: Բուսական ձևերի էվոլյուցիան, սկսած միաբջիջ օրգանիզմներից մինչև ժամանակակից ծաղկավոր բույսերը, ընթացել է հենց ֆոտոսինթեզի արդյունավետության բարձրացման ուղղությամբ:

Ֆոտոսինթեզը (ամենահիմնական արտադրական պրոցեսը երկրի վրա) տեղի է ունենում բույսի կանաչ օրգաններում ու տերևներում: Վերջիններս, որպես օրգանական նյութերի սինթեզի ելակետ, օգտագործում են ջուրը և օդի ածխաթթու գազը: Այդ երկու չեզոք միացությունները քիմիապես միանում են իրար՝ տերևների կողմից կլանված լույսի ճառագայթների էներգիայով: Այս պրոցեսում տերևներում սինթեզ-







digitised by A.R.A.R.@

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

## ՈՒՍՈՒՑԻՉ ՉԵՆ ԴԱՌՆՈՒՄ, ՈՒՍՈՒՑԻՉ ԾՆՎՈՒՄ ԵՆ



Վահագնը տուն էր դառնում դպրոցից, սերտում դասերը, ապա հավաքում դրկից երեխաներին ու դպրոց-դպրոց էին խաղում... Իսկ Վահագնը վարժապետն էր, անպայման վարժապետը. կարմիր մատիտը ձեռքին ուղղում էր բերբիկների վրա երեխաների գրածները, գրքեր կարդում նրանց համար, ապա «դասարանից» դուրս անում, ծնող կանչում...

Գևորգը, որ ժամանակի ուսյալ մարդկանցից մեկն էր, ասես մոռացած հայ մեծ երգիծաբան Պարոնյանի՝ «կանիծեմ վարժապետ ըլլաս» խոսքերը, հրճվանքով մտածում էր. «Որդիս, վարժապետ կդառնա»:

Եվ Գևորգն ինքն սկսեց հարթել որդու՝ Վահագնի այդ փշոտ ու դժվարին ճանապարհը: Դեռ մանկուց նա նկարազարդ հանդեսներ, գրքեր էր գնում նրա համար, կարդում, պատմում...

—Ահա Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանին». մեծ մարդ էր նա, իսկական ուսուցիչ. այնպե՜ս էր սիրում մեր ժողովրդին, այնպե՜ս էր մտածում մանուկների մասին, ցանկանում, որ նրանք լավ, պիտանի մարդ դառնան: Այս էլ Միքայել Նալբանդյանի «Ազատություն» ոտանավորն է, լա՛վ սովորիր այն, նրա նման աշխատիր չվախենալ փորձանքներով լի, փշոտ ճանապարհներից,— արդեն բավականին խելահաս Վահագնին ասում էր հայրը:

Անցնում էին տարիները, և ուսուցիչ դառնալու, լուսավորությանը նվիրվելու միտքն ավելի ու ավելի էր ուռճանում. Վահագնը հաստատակամորեն ընտրեց դպրոց տանող և՛ կարճ, և՛ դժվար ճանապարհը:

1920 թվականի դեկտեմբերի 8-ին Վահագնը առաջին անգամ ոտք դրեց նախկին Ղուրդուղուլիի շրջանի Ղուզիգիդան (այժմ Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ) գյուղի դպրոցը: Թիկնեղ էր նա, հայկական շեշտված դիմագծերով. աչքերի հոգեխույզ հայացքը խորապես ազդում էր աշակերտների վրա:

...Նստած են իր դիմաց 20—25 երեխա և սպասում են, թե ինչ է ասելու «աշխարհի ամենագիտուն մարդը»:

— Ես զգացի, որ թերևս ստանձնել եմ աշխարհի ամենապատասխանատու գործը,— հիշում է նա: Հետագա ժամերն անցնում են անհամեմատ ավելի թեթև ու հանգիստ, բայց միշտ պատասխանատվության խոր զգացումով: Նրա մասին սկսում են խոսել գյուղում, դպրոցում...

— Վահագն վարժապետը խիստ է:

— Պահանջկոտ է...

— Կարգապահ է:

Եվ երբ բանը հասավ «աշնանը ճտերը հաշվելուն», նրա առարկայի քննությունն ամբողջ դասարանը հաջող հանձնեց.

— Հալալ է քեզ, վարժապե՛տ,— երախտագիտությամբ ասում էին գյուղացիները:

1925 թվականի հունվարի 9-ին նա մտնում է նույն շրջանի նախկին Մեծ Շահրիար (այժմ Նալբանդյան) գյուղի դպրոցը, ուր վաղուց արդեն հասել էր նրա համբավը: Նա շատ է զարմանում, երբ իր բարևին դասարանը ոտքի կանգնելով միաբերան պատասխանում է.

— Բարև, ընկեր Շողերյան...

Ու նա մտածում է. «Մեկ՝ լավ, մեկ՝ վատ անունն է շուտ տեղ հասնում: Տեսնես այստեղ ինձ կսիրե՞ն երեխաները... տեսնես ի՞նչ են մտածում իմ մասին այս ջինջ աչքերով տղեկներն ու աղջնակները...»:

Աշակերտներից մեկը դասերից միշտ ուշանում էր: Խորհուրդներն ու խրատներն անցնում էին ձայն բարբառոյ անապատի: Ի՞նչ անել. և ահա մի անգամ էլ այդ աշակերտը դասարան է մտնում ուշացած: Դասատուն գրատախտակի մոտ է կանչում նրան.

Տղան զարմանում է. դասարանը հանկարծակիի է գալիս:

— Պատմի՛ր դասը:

Տիրում է լռություն. աշակերտը շփոթվում է, կարմրում մինչև ականջների ծայրը. նա անպատրաստ է եկել դասի:

— Զգիտես... Նստիր, վաղն առաջինը դու ես պատասխանելու:

Այդ էր ու այդ. մեր հերոսն այլևս չուշացավ դասից և դասերն էլ դրանից հետո միշտ պատրաստ էր գալիս դպրոց:

Մի ուրիշ երեխա ծույլ էր, դասերը չէր սովորում և միշտ հույսը դնում էր հուշարարի վրա: Մի անգամ նրան և մի լավ սովորող աշակերտի Շողերյանը կանչում է գրատախտակի մոտ և ծույլին պատվիրում հարցեր տալ լավ սովորողին: Նա կարմրում է. երկմտում և, որովհետև չգիտեր դասը, չի կարողանում հարցեր տալ:

— Ուրեմն, իմացի՛ր, հաջորդ անգամ կրկին դու նրան դաս ես հարցնելու,—պատվիրում է ուսուցիչը:

Եվ այսպիսի ու տարբեր բազում դեպքեր. Վահագն Շողերյանը հոգեբան մանկավարժի հմտությամբ ուսումնասիրում էր երեխաներին, ուղղում ու շտկում, պահպանում նրանց բացասական ազդեցություններից: Մակարենկոյի «Մանկավարժական պոեմը» նրա սեղանի գիրքն էր:

Երկու տարի հետո, երբ նա աշխատում էր նույն շրջանի նախկին Քյալագարխ գյուղում (այժմ Շենավան), նրա մասին արդեն ասում էին.

— Նվիրված ուսուցիչ է ընկեր Շողերյանը:

***

1929—30 թվականներն են—գյուղում կոլեկտիվ տնտեսությունների կազմակերպման տարիները: Մեծ էր այդ ժամանակ գյուղական ինտելիգենցիայի դերը, օր-օրի ավելի սուր բնույթ էր կրում կուսակցության պայքարը հակասովետական տարրերի և, առանձնապես, կուլակության դեմ: Հազարավոր մարդիկ կուսակցության կոչով գյուղ էին մեկնում՝ ամրապնդելու նորաստեղծ համայնական տնտեսությունները:

Կուսակցության կոչով երիտասարդ ուսուցիչ Վահագն Շողերյանը ևս մեկնեց Ապարան՝ որպես ուսուցիչ և դպրոցի վարիչ. միաժամանակ լուսավորության աշխատողների շրջանային վարչության նախագահն էր նա:

— Ծանր, դժվարին օրեր էին,— պատմում է նա,— գյուղացին տգետ էր, անգրագետ...

Եվ, չխնայելով ուժերն ու եռանդը, դասերից հետո, ազատ ժամերին, նա նվիրվում էր անգրագիտության վերացման գործին: Քանի՜, քանի անգամ Ալիքուչակ գյուղից ոտքով Ապարան է եկել նա, որպեսզի լիկկայանում սովորողների համար ձեռք բերի գրենական պիտույքներ, դասագրքեր... Զուր չեն անցել նրա ջանքերը:

Ահա ինչու, երբ հետագա տարիներին այս կամ այն առիթով նա հայտնվում էր շրջանում, հյուրընկալորեն նրա առջև բացվում էին լիկկայանի, իր երբեմնի «աշակերտուհիների» տան դռները:

— Մենք երախտապարտ ենք ձեզ, ընկե՛ր Շողերյան,— ասում են նրանք,— առաջինը դուք մեզ սովորեցրիք հայոց տառերը:

Եվ հուզմունքից խոնավանում էին վաստակաշատ մանկավարժի աչքերը:

Գլորվում էին տարիներն իրար հետևից:

Եվ գյուղական ուսուցիչ Վահագն Շողերյանի համար եկող ու անցնող ամեն մի տարին տանում է նրան մի նոր գյուղ, մի նոր շրջան և ուսումնական օջախ, կրթական մի նոր հաստատություն: Ահա նա ուսուցիչ է նախկին Վաղարշապատի, ապա՝ նույն շրջանի մի այլ գյուղի երիտասարդական դպրոցում...

Բարձրագույն կրթության ծարավը բերում է նրան պետական համալսարան:

Ավարտելով այս հաստատությունը, նա կրկին գյուղ է վերադառնում, քաջ գիտակցելով թե որքա՜ն կարևոր է գյուղական ուսուցչի դերը նոր սերնդի, երիտասարդության, նոր մարդու դաստիարակության գործում: Այս անգամ նրան հրապուրում է Հայաստանի ամենահեռավոր շրջաններից մեկը՝ Մեղրին: Այստեղ նա իր ուժերը փորձում է նաև ադրբեջանական դպրոցում, լինելով միաժամանակ շրջանային լուսավորության տեսուչ: Հետո վերադառնում է էջմիածին. պարզվում է, որ լավ չեն շրջանի Աղավնատուն գյուղի դպրոցի գործերը: Եվ այստեղ էլ նա չի խնայում իր ուժերը, վարելով միաժամանակ դիրեկտորի, ուսմասվարի, ուսուցչի պարտականությունները:

***

Սկսվում է Հայրենական մեծ պատերազմը:

Խանգարվում է սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ կյանքը: Հայրենիքի պաշտա-





digitised by A.R.A.R.@

պանությունը դառնում է նաև թիկունքի մարդկանց սուրբ պարտականությունը: Առավել մեծ պատասխանատվություն են կրում նրանք, ովքեր կոչված են մատաղ սերունդը կոմունիստական ոգով դաստիարակելու:

Այդ տարիներին, ավելի քան երբևէ, դրսևորվում են Վահագն Տողերյանի կազմակերպչական շնորհքն ու ունակությունները: Ամենից առաջ այդ երևում է ուսումնա-դաստիարակչական և դպրոցաշինարարության գործում: Ինչպես Աղավնատան, այնպես էլ շրջանի մյուս գյուղերի երիտասարդ ուսուցիչների զգալի մասը մեկնում է ռազմաճակատ: Դպրոցներում մնում են առավել տարիքավորները, որոնց հանձնարարվում են իրենց բացակա գործընկերների դասերը: Վահագն Տողերյանը, որն արդեն քսան տարվա գյուղական ուսուցիչ էր, լավ էր գիտակցում հարցի կարևորությունը: Ու երբ նրան առաջարկում են Աղավնատնից փոխադրվել Սամաղարի միջնակարգ դպրոց, քանի որ այդ էին պահանջում գործի շահերը, նա համաձայնում է՝ պատրաստ հաղթահարելու նորանոր դժվարություններ:

— Ինչպես հարմար եք գտնում,— ասում է նա,— այժմ այնպիսի օրեր ենք ապրում, անձնականը հիշել իսկ չես հասցնում:

Եվ ո՛չ միայն այդ օրերին. ով աշակերտ է եղել, լավ գիտե, որ իրենք՝ աշակերտները հենց, միշտ ինչ-որ վեր են դասել ուսուցչին սովորական մահկանացուներից. դրա պատճառներից մեկն էլ այն չէ՞ արդյոք, որ միշտ էլ ուսուցիչներն ավելի շատ ապրել են հասարակական կյանքով, դպրոցի, դասարանի, աշակերտների համար, շատ հաճախ մոռանալով անձնականը: Սամաղարի միջնակարգ դպրոցում միաժամանակ լինելով և՛ դիրեկտոր, և՛ ուսմասվար, և՛ ուսուցիչ՝ նա ներկայացավ կոլտնտեսության վարչություն, պահանջեց հողամաս տալ դպրոցին:

— Շատ դժվար կլինի,— ասում են նրան վարչությունում:

— Դուք միայն հողամասը տվեք,— լինում է պատասխանը:

Նրանք ընդառաջում են: Դպրոցականներն իրենց աշխատասիրությամբ հիշեցնում էին մեղուներին, ամեն մեկն անում էր, ինչ կարող էր:

Դպրոցում հայտարարվեց մոբիլիզացիոն վիճակ: Արտաժամյա պարապմունքները, որոնք միաժամանակ նպաստում են աշխատանքային դաստիարակությանը, տարվում են դպրոցամերձ հողամասում: Մանկավարժական կոլեկտիվը միջին ու բարձր դասարանցիների հետ ամեն օր մեկնում է դաշտ մշակելու դպրոցին հատկացված հողակտորը: Բավականին մեծ եկամուտ է բերում այդ հողամասից ստացված բերքը. դրա մի մասը հատկացվում է Ստալինգրադի № 52 դպրոցին, մի մասը տրվում է պատերազմում զոհվածների ընտանիքների երեխաների համար հագուստ և գրենական պիտույքներ գնելու և փողային նվագախմբի երկու կոմպլեկտ գործիքներ են գնվում ու աշակերտների անունից նվիրվում Թամանյան դիվիզիային:

***

Ավարտվում է պատերազմը: Ինչպես ամենուրեք, այնպես էլ դպրոցում, կյանքը մտնում է հունի մեջ: Ուսուցիչների առջև ծանր ու պատասխանատու խնդիր է դրվում—դասավանդման հետ միաժամանակ սատար լինել բոլոր այն երեխաներին, որոնց հայրերն ու ավագ եղբայրները զոհվել են ռազմաճակատում: Վահագն Տողերյանի դասարանը ևս հոգատարությամբ է շրջապատում նման երեխաներին:

Վերջացել են դասերը: Եվ ուսուցիչը քայլերն ուղղում է պատերազմում զոհված կոլտնտեսական Հ. Ազատյանի տունը:

— Ինչո՞ւ այսօր երեխան չէր եկել դպրոց,— հարցնում է մորը:

Պատասխանի փոխարեն մայրը հառաչում է: Ամեն ինչ հասկանալի է:

— Եկա, որ երեխային բացատրեմ այսօրվա բաց թողած դասը,— ասում է ընկեր Տողերյանը և սկսում պարապել նրա հետ:

Այս դեպքը եզակի չէ: Նրա աշակերտներից մեկ ուրիշը՝ Վարազդատ Շմավոնյանը (այժմ՝ իրավաբան), ապրում էր Աղավնատուն գյուղում և նույնպես դպրոց չէր գալիս: Պարզվում է, որ երեխան ծանր ապրումներից հիվանդացել է. Նրա առողջանալուց հետո վեց ամիս շարունակ Տողերյանը պարապում է նրա հետ, և երեխան հաջողությամբ ավարտում է դպրոցը:

Մեծ սրտացավությամբ նա օգնել է նաև կոլտնտեսային արտադրությանը:

— Գյուղական ուսուցիչը պետք է կապված լինի գյուղացու և հողի հետ:

Նրա խորհրդին են դիմում կոլտնտեսականները գարնանային գյուղատնտեսական աշխատանքների, այգեբացի, էտի, փորի ժամանակ, պտղատու և խաղողի նոր ծառեր տնկելիս: Այդ ամենին գործնական օգնություն ցույց տալու, իրեն դիմող կոլտնտեսականներին զոհացնելու, մասնագիտական խորհուրդներ տալու համար ֆիզմաթի դասատու Տողերյանը ձեռքից բաց չի թողնում գյուղատնտեսական որևէ ամսագիր, թերթ: Մի անգամ դիմելով կոլտնտեսության վարչության նախագահին՝ ասում է.

— Տվեք ինձ կես հեկտարի չափ աղակալած հող և ես իմ դասարանի աշակերտների հետ կապացուցեմ, որ ագրոտեխնիկայի կանոնների ճիշտ կիրառման, լավ խնամքի դեպքում, հեկտարից հնարավոր է 35—40 ցենտներ բամբակի բերք ստանալ:



Նրա ցանկությունը կատարվում է: Եվ երբ աշնանը հավաքվում է բերքը, մարդիկ ասում են.

— Ա՛յ թե ինչ է նշանակում հասկանալ հողի լեզուն:

Իսկ «Պիոներ կանչ» թերթը մի ամբողջ էջ է նվիրում նրա դասարանի աշակերտներին, դրվատելով կոլտնտեսությանն օգնելու նրանց պատրաստակամությունը, աշխատանքային դաստիարակության նրանց հաջողությունները:

Դպրոցի ու կոլտնտեսային արտադրության հոգսերով այրվող ու ապրող ուսուցիչն ակտիվ մասնակցում է հասարակական կյանքին: Գնահատելով Տողերյանի անշահախնդիր նվիրվածությունը, կոլտնտեսականները նրան ընտրել են տեղական սովետի դեպուտատ, գյուղական գործադիր կոմիտեի նախագահության անդամ: Սիրված ու ճանաչված պրոպագանդիստ է նա. միշտ մատչելի ու հանգամանորեն մեկնաբանում, մասսայականացնում է կուսակցության ու կառավարության որոշումները, արժանանալով տեղական ու կենտրոնական մամուլի ուշադրությանը:

«Սովետական Հայաստան» թերթը, օրինակ, նրա մասին գրում է, որ դաշտավարական հինգերորդ բրիգադայի ագիտատոր, բոլորի կողմից հարգված Վահագն Տողերյանի զրույցներից կոլտնտեսականները շատ բան են սովորել: Ըստ արժանվույն է գնահատվել բազմամյա մանկավարժի երկար տարիների բարեխիղճ աշխատանքը. նա արժանացել է հանրապետության վաստակավոր ուսուցչի կոչման: Այս կապակցությամբ իրենց անկեղծ ուրախությունը, ջերմ ցանկություններն են արտահայտում մեր երկրի տարբեր ծայրերում աշխատող նրա հազարավոր աշակերտները...

«Մենք ունենք գիտության թեկնածուներ, ինժեներներ, բժիշկներ, գրողներ, ակադեմիկոսներ, բոլորն էլ դպրոցից են սկսել: Այն ողջ լավը, բարին, ազնիվն ու գեղեցիկը, որ ունենք, տվել են մեր ուսուցիչները, որոնց երբեք չի կարելի մոռանալ... Եվ դուք տարիներ շարունակ քայլել եք այդ ճանապարհով, տարիներ շարունակ կրթել ու դաստիարակել եք շատ ու շատ երեխաների: Մաքառման, պայքարի, դժվարություններով լի տարիներ են եղել դրանք: Ահա ինչու մեծ հուզմունքով շնորհավորում ենք ձեզ վաստակավոր ուսուցչի պատվավոր կոչմանն արժանանալու համար»,—բազմաթիվ նամակներից մեկն է այս, որ գրել է Սամաղարի Xա դասարանի աշակերտուհի Անուշ Համբարձումյանը:

Այժմ Տողերյանը ֆիզիկա է ավանդում Էջմիածնի շրջանի Ն. Խաթունարխ գյուղի միջնակարգ դպրոցում:

Գրեթե կես դար նա դաստիարակում է մանուկներին, սերմանում մեղվաջանություն, սեր տեխնիկական գիտությունների հանդեպ, թև ու թռիչք տալով նրանց հոգուն, ուղղություն՝ նրանց հակումներին: Հեշտ չէ ասել՝ կես դար... Ինչպիսի՜ անհաջողություններ ու դժվարություններ է հաղթահարել իր մանկավարժական բարդ ու հետաքրքրություններով լի կյանքում...

— Շնորհակալությո՛ւն—ասում են բոլոր աշակերտները. նույն զգացումով են նրան հիշում տարիներ առաջ նրանից բաժանվածները, որոնք դարձել են բժիշկ ու երկրաբան, ֆիզիկոս, ինժեներ ու քիմիկոս... Վաստակած ուսուցչի հպարտությունն են նրանք, որ այսօր շնորհակալական բազում հեռագրերով անթիվ հուշեր են արթնացնում իրենց սիրած մանկավարժի, հանրապետության վաստակավոր ուսուցչի սրտում: Քաջառողջության, երջանկության, երկարակեցության ստաբուխ մաղթանքներ կան այդ հեռագրերում, նամակներում...

Մի մեծ առավելություն ունի մանկավարժը, որ հատուկ է միայն իրեն: Չէ՛ որ նա միշտ պատանեկության հետ է, նրանց ընդօրինակման մշտական օբյեկտը, միշտ նրանց ուսուցանող, իմաստնացած ու փորձառու, բայց նրանց պատանեկության մի մասնիկն էլ առած, անսպառ կորովով ու ջահել մնալու հարատև տենչով:

Այդ է պատճառը, որ Վահագն Տողերյանը, չնայած իր ուսած աշխատանքային 50 տարիներին, դեռևս երիտասարդական եռանդով ու նվիրվածությամբ է կատարում իր պատվավոր գործը, ավելի ու ավելի հարստացնելով իր գիտելիքները, աշխատելով ետ չմնալ գիտության զարգացման ընթացքից, ջանում է առավելագույնը տալ իր աշակերտներին:

ՍԱՄՎԵԼՅԱՆ ՍԵԴԱ *(Մանկավարժ)*
ԳԵՎՈՐԳՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ *(Պատմական գիտությունների թեկնածու)*

digitised by A.R.A.R.@

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՈՒՇԱԳՐԱՎ ՆԵՐԴՐՈՒՄ[1]

«Միտք» հրատարակչությունը պրոֆ. Հ. Ե. Թումանյանի խմբագրությամբ լույս է ընծայել «Հոկտեմբերը և Հայաստանի տնտեսական զարգացումը» խորագիրը կրող աշխատությունը, որը Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետի մի խումբ գիտնականների հետազոտական աշխատանքի արգասիքն է։

Գրախոսվող աշխատությունը նվիրված է սովետական իշխանության տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման, բնակչության կենսամակարդակի բարձրացման և զբաղվածության հարցերի ինչպես տեսական, նույնպես և գործնական կարևոր նշանակություն ունեցող կողմերի լուսաբանմանը։ Աշխատության մեջ մեկնաբանված են հայ ժողովրդի ստեղծագործական աշխատանքի արդյունքները, մի բան, որը շատ կարևոր է ո՛չ միայն հանրապետության տնտեսական զարգացման առանձնահատկությունները ճիշտ հասկանալու, այլև սոցիալ-տնտեսական նոր, ավելի բարդ խնդիրները հաջող լուծելու համար։

Քննարկվող աշխատությունը բաղկացած է ընդհանուր ակնարկից, տասնմեկ գլխից և ռուսերեն ամփոփումից։ Ընդհանուր ակնարկում ցույց է տրված, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հայ ժողովրդի ճակատագրի համար վճռական նշանակություն ունեցավ։ Նրա ազատարար դրոշի ներքո, 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում սովետական կարգերի հաստատումն արմատական շրջադարձ նշանավորեց հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ։ Իրականացավ հայ ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրության դարավոր երազանքը. նա ստեղծեց սեփական պետականություն և թևակոխեց հասարակական զարգացման նոր՝ սոցիալիստական ուղին։

Ընդհանուր ակնարկում մեթոդոլոգիական ճիշտ դիրքերից հիմնավորված փաստարկումներով վերլուծվում են նախասովետական Հայաստանի էկոնոմիկայի հետամնացության պատճառները։ Չնայած իր ստացած ողորմելի ժառանգությանը, հայ ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ռուս ու եղբայրական մյուս ժողովուրդների օգնությամբ, պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարեց տնտեսական հետամնացությունը։ Սոցիալիստական շինարարության անցած տարիներին (1920—1965 թթ.) Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց ավելի քան 100 անգամ։ Ինդուստրացման շնորհիվ արդյունաբերության համախառն արտադրանքի քանակական աճի հետ միասին, տեղի ունեցավ հանրապետության էկոնոմիկայի կառուցվածքի արմատական փոփոխություն։ Այդ փոփոխությունն ամենից առաջ արտահայտվեց նրանով, որ շատ արագ տեմպերով զարգացավ Հայրենական պատերազմի շրջանում սկսված մեքենաշինությունը։ Մեքենաշինության աճի բարձր տեմպերի հետ մեկտեղ զարգացան ծանր արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ քիմիականը, շինանյութերի արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան։ Ակնարկում իրավամբ ասված է, որ «...սոցիալիստական շինարարության տարիները Հայաստանում միաժամանակ հանդիսացել են ծանր ինդուստրիայի ստեղծման ու զարգացման տարիներ» (էջ 14)։

Աշխատության առաջին գլուխը նվիրված է սոցիալիստական էկոնոմիկայի արագ զարգացման կարևորագույն հարցի մեկնաբանմանը։ Հարուստ տվյալների տնտեսագիտական վերլուծման հիման վրա ցույց են տրված սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման առավելությունները։

Հայտնի է, որ նախապատերազմյան հնգամյակների տարիներին (մոտ 12 տարում) իրագործվեց մեր երկրի ինդուստրացումը, որի համար կապիտալիստական երկրներից պահանջվեց ավելի քան 100 տարի։ Սովետական Միությունում 1918—1966 թթ. արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան տեմպերը կազմեցին գրեթե 10, իսկ ԱՄՆ-ում 4 տոկոսից էլ պակաս։

Անցած ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերության միջին տարեկան աճը կազմել է ավելի քան 14 տոկոս։ Առավել բարձր տեմպերով է զարգացել ծանր արդյունաբերությունը, որը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջադիմության ու աճի հուսալի հիմքն է։ Աշխատության մեջ ցույց է տրված, որ ներկայումս հանրապետության արդյունաբերական արտադրանքը կազմում է ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի $2/3$-ը, իսկ ազգային եկամտի՝ 64 տոկոսը։

Գրախոսվող գրքի առաջին գլխում քննադատված է բուրժուական տնտեսագետների կողմից սովետական էկոնոմիկայի զարգացման տեմպերի մասին հորինված, այսպես կոչված՝ «մարվող տեմպերի տեսությունը»։ Այդ առասպելի հեղինակները փորձում են ցույց տալ, որ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տեմպերը գնալով պետք է մարեն։ Հակագիտական այդ տեսության պրոպագանդիստները մոռանում են, որ տնտեսության ամեն մի սիստեմի աճի տեմպերը պայմանավորվում են տիրապետող արտադրահարաբերությունների բնույթով։ Մեր և սոցիալիզմի մյուս երկրներում վերացվեցին արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը և մարդու կողմից մարդու շահագործման հարաբերությունները։ Տիրապետող սոցիալիստական արտադրահարաբերությունները, որոնք ավելի ու ավելի են համապատասխանում ժամանակակից արտադրաուժերի զարգացման մակարդակին, ապահովում են սոցիալիստական էկոնոմիկայի աճի, կապիտալիզմի նկատմամբ անհամեմատ բարձր տեմպեր։

Աշխատության երկրորդ գլուխը նվիրված է հանրապետության էկոնոմիկայի էներգետիկ բազայի զարգացմանն ու Հայաստանի էլեկտրիֆիկացման հարցի լուսաբանմանը։ Հայաստանում 1913 թվականին ընդամենը արտադրվել է 5,1 մլն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ 1913 թվականի համեմատությամբ, 1965 թվականին, էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է մոտ 500 անգամ։ Աշխատության այս գլխում քննարկված են աշխատանքի էլեկտրազինվածության և դրա արտադրողականության բարձրացման միջև եղած կապի ու հարաբերակցության հարցերը։ Ցույց է տրված, որ աշխատանքի էլեկտրազինվածության աճն անպայման հասցնում է արտադրողականության բարձրացման։ Տեղին է արծարծված գյուղատնտեսական արտադրության մեջ էլեկտրաէներգիայի օգտագործման չափերի մեծացման հրատապ խնդիրը, որն արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքների արտադրողականության միջև դեռևս գոյություն ունեցող տարբերության վերացման կարևոր ազդակներից մեկն է։

Գունավոր մետալուրգիան և քիմիական արդյունաբերությունը խորագրով (երրորդ) գլխում վերլուծված են ժողովրդական տնտեսության այդ ճյուղերի զարգացման օրինաչափությունները։ Սովետական կարգերի հաստատման առաջին օրերից վերականգնվեցին Ղափանի և Ալավերդու քայքայված պղնձահանքերը, որոնք այժմ նոր ստեղծված Ագարակի, Քաջարանի, Դաստակերտի և մյուսների հետ միասին հարստության անսպառ աղբյուր են։ Հայաստանը Սովետական Միության գունավոր մետալուրգիայի շտեմարաններից մեկն է։

Աշխատության մեջ ցույց է տրված, որ անցած յոթնամյակի ընթացքում մեր հանրապետության գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կազմել է 15,4 տոկոս, իսկ ամբողջ արդյունաբերության հիմնական արտադրաֆոնդերի ընդհանուր գումարի մեջ նրա բաժինը 14,2 տոկոս է։ Գունավոր մետալուրգիայի արագ աճը հնարավորություն ընձեռեց ստեղծելու և զարգացնելու արտադրության այնպիսի առաջավոր ճյուղեր, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկականն ու սարքաշինականը։ Արտադրության այդ ճյուղերը ավելի կզարգանան ընթացիկ հնգամյակում, ներդրումների ծավալը կաճի 2,6 անգամ։

Աշխատության չորրորդ գլուխը, որը նվիրված է հանրապետության մեքենաշինության ու մետաղամշակման հարցերին, հաջողված գլուխներից մեկն է։ Այստեղ քննարկված են մեքենաշինության ստեղծման ու զարգացման, ինչպես նաև տեղաբաշխման ու մասնագիտացման կարևոր պրոբլեմները։ Նախասովետական Հայաստանը փաստորեն մեքենաշինություն չի ունեցել։ Սովետական իշխանության տարիներին ստեղծվել են մեքենաշինության ու մետաղամշակման ավելի քան 100 ձեռնարկություն։ «Իր զարգացման շատ բարձր տեմպերի շնորհիվ,— ասված է աշխատության 137 էջում,— Հայկական ՍՍՀ մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերությունը դարձել է հանրապետության արդյունաբերության հիմնական և առաջնակարգ ճյուղերից մեկը»։

---

1 Հոկտեմբերը և Հայաստանի տնտեսական զարգացումը, «Միտք» հրատ., Երևան, 1967, 461 էջ։





digitised by A.R.A.R.@

Ներկայումս հանրապետության մեքենաշինությունը թողարկում է 6 անգամ ավելի շատ մետաղահատ հաստոցներ, քան նախահեղափոխական Ռուսաստանը 1913 թվականին։ Դրանց արտադրությամբ Հայաստանը Սովետական Միությունում գրավում է հինգերորդ, իսկ բարձր ճշգրտության հաստոցների արտադրությամբ՝ առաջին տեղը և այլն։ Այս գլխում ճիշտ դիրքերից վերլուծված են արտադրության տեղաբաշխման, համակենտրոնացման, մասնագիտացման ու կոոպերացման հարցերը, որոնք կարևոր նշանակություն ունեն հանրապետության արտադրաուժերի զարգացման, հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Գրքում լուսաբանված են (հինգերորդ գլուխ) հանրապետության թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման հարցերը։ Սովետական իշխանության տարիներին գրեթե նոր ստեղծվեցին ու զարգացան թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերը։

Գրախոսվող աշխատության վեցերորդ գլխում վերլուծված են գյուղատնտեսության վերականգնման ու սոցիալիստական վերափոխման, հանրապետության կոլտնտեսային ու սովխոզային արտադրության նյութատեխնիկական բազայի ստեղծման և ամրապնդման, գյուղատնտեսության հիմնական ճյուղերի հետագա զարգացման խնդիրները։

Գյուղատնտեսությանը վերաբերող գլխում հատուկ ուշադրություն է նվիրված հանրապետության ոռոգելի հողատարածությունների ընդարձակման, կապիտալ ներդրումների աճի, գյուղատնտեսական արտադրության մեքենայացման մակարդակի բարձրացման և բերքատվության ավելացման հարցերին։ 1964 թվականին գյուղատնտեսության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 5,7 անգամ (էջ 241)։ Մասնավորապես զարգացան գյուղատնտեսության առավել առաջատար և բարձր եկամտաբեր ճյուղերը՝ խաղողագործությունն ու պտղաբուծությունը։

Տրանսպորտի զարգացմանն է նվիրված աշխատության յոթերորդ գլուխը։ Մեր հանրապետության տրանսպորտի զարգացման հարցերը քննարկվում են Անդրկովկասի տրանսպորտի զարգացման հետ սերտորեն կապված։ Գործիմացությամբ վերլուծված են տրանսպորտի երկու կարևորագույն տեսակների՝ երկաթուղայինի և ավտոմոբիլայինի զարգացման գործում ձեռք բերված հաջողություններն ու հեռանկարները։

Ութերորդ գլխում քննարկված են հանրապետության ժողովրդական տնտեսության մասնագիտացման և տնտեսական կապերի ուժեղացման հարցերը։ Գրքում ցույց է տրված, որ էկոնոմիկայի զարգացման և նրա ճյուղային կառուցվածքի կատարելագործման զուգընթաց ուժեղացել են Հայաստանի տնտեսական կապերը միութենական հանրապետությունների հետ։ Ներկայումս մեր հանրապետությունը տնտեսական կապերի մեջ է ո՛չ միայն սոցիալիստական սիստեմի, այլև Ասիայի ու Աֆրիկայի թույլ զարգացած երկրների, Լատինական Ամերիկայի մի քանի և Եվրոպայի կապիտալիստական շատ երկրների հետ։ Բավական է ասել, որ Հայաստանն արտասահմանյան 70 երկրներ է արտահանում ավելի քան 150 տեսակ արտադրանք։

Իններորդ գլխում վերլուծված են հանրապետության ազգային եկամտի արտադրության ու օգտագործման՝ և բնակչության կենսամակարդակի բարձրացման հարցերը։ Այստեղ ցույց է տրված, որ պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմն է հասարակական արտադրության կազմակերպումն ու զարգացումը ենթարկում մարդկանց պահանջմունքների բավարարման վսեմ նպատակին։ Այդ հաստատվում է նաև մեր հանրապետությունից բերված տվյալներով։

Աշխատության տասներորդ գլխում, հարուստ նյութերի հիման վրա, բազմակողմանի վերլուծված են հանրապետության բնակչության կազմի և զբաղվածության պրոբլեմները։ Ցույց է տրված, որ աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը զուգընթաց արագ տեմպերով աճել է նաև բնակչությունը։ Նշված գլխում կատարված հաշվումներով, 1981 թվականին Հայաստանի բնակչության թիվը կհասնի 3,150 հազարի։ Հանրապետության ինդուստրիալ զարգացման շնորհիվ փոխվել է քաղաքային բնակչության հարաբերակցությունը։

Գրախոսվող աշխատության վերջին՝ տասնմեկերորդ գլուխը, նվիրված է հանրապետության առևտրի ու ֆինանսների զարգացմանը։ Հարուստ տվյալների հիման վրա ցույց է տրված, որ հանրապետության էկոնոմիկայի վերելքի ու բնակչության ռեալ եկամուտների աճի հիման վրա վերելք է ապրել սովետական առևտուրը։

Գրախոսվող աշխատությունը զերծ չէ նաև որոշ թերություններից։ Գրքում բերված վիճակագրական տվյալները սահմանափակվում են գերազանցապես 1962—1964 թվականներով, մինչդեռ կարելի էր օգտագործել նաև 1965 թվականի տվյալները։

Աշխատությունը գրվել է մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ մեր երկրում իրագործվում է տնտեսական ռեֆորմ։ Այդ հանգամանքը հեղինակներին պարտավորեցնում էր ժողովրդական տնտեսության այս կամ այն ճյուղի զարգացման վիճակը քննարկելիս այն կապել տնտեսավարման նոր սիստեմի կողմից առաջադրվող խնդիրների հետ։ Այստեղ մենք նկատի ունենք, մասնավորապես, արտադրության արդյունավետության բարձրացման հարցերը։

Մյուս թերությունն այն է, որ առանձին գլուխներում անհրաժեշտ չափով ուշադրություն չի նվիրվել մի շարք կարևոր հարցերի։ Այսպես, հինգերորդ գլխում, ուր խոսվում է ժողովրդական սպառման առարկաների արտադրության մասին, ինչպես հարկն է չի դրված դրանց որակի բարձրացման հարցը։

Գյուղատնտեսությանը վերաբերող գլխում պետք է ավելի հանգամանորեն լուսաբանվեր ՍՄԿԿ մարտյան պլենումի (1965 թ.) որոշումների նշանակությունը հանրապետության գյուղատնտեսության զարգացման գործում։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ էր ավելի խոր քննարկել գյուղատնտեսական մթերքների գների, կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործման, պլանավորման կատարելագործման և աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցերը։

Աշխատության իններորդ գլխի՝ «Բնակչության կենսամակարդակի բարձրացումը» բաժնում աչքաթող են արված կոլտնտեսականների թոշակավորման, քաղաքում ու գյուղում արդյունաբերական ապրանքների գների տարբերության վերացման և կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրության իրագործման կարևոր խնդիրները։ Առևտրին ու ֆինանսներին վերաբերող վերջին գլխում անբավարար են վերլուծված լայն սպառման առարկաների և հասարակական սննդի որակի բարձրացման հարցերը, ցույց չի տրված տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում ֆինանսների դերը։

Առանձին գլուխների և բաժինների վերաբերյալ մեր ընդհանուր դիտողությունները երբեք չեն նսեմացնում գրախոսվող աշխատության գիտական արժանիքները։

ԲԱԴԱԼՅԱՆ Ս. Ա.
Տնտեսական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր



digitised by A.R.A.R.@

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԺՇԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Բոլորին հայտնի է, թե ինչպես է զարգացել առողջապահության գործը մեր հանրապետությունում։ Մի քանի տասնյակ բժիշկներ ու բուժաշխատողներ, հիվանդանոցային խարխուլ շենքեր, բժշկական պրիմիտիվ գործիքներ ու սարքավորումներ, առանց սանիտարա-պրոֆիլակտիկ որևէ միջոցառման, բժշկական ուսումնա-հետազոտական ոչ մի հիմնարկ։ Ահա այն ամենը, ինչ ժառանգել էր Սովետական Հայաստանն անցյալից։ Այժմ մեզ մոտ ստեղծվել ու լայնորեն ծավալվել է բուժհիմնարկների ցանցը, որն ամբողջապես ի սպաս է դրված ժողովրդի առողջապահության գործին։

Չնայած առողջապահության աննախընթաց զարգացմանը (վարակիչ շատ հիվանդությունների իսպառ վերացմանը, մարդկանց կյանքի ու աշխատանքի, սանիտարական պայմանների բարելավմանը, մահացության ու հիվանդությունների կրճատմանը), այդ բնագավառում, հատկապես գյուղում, դեռևս անելիքներ շատ կան։

Այսպես, խոսելով Արտաշատի շրջանի բնակչության բուժսպասարկման գործում կատարված փոփոխությունների մասին, չպետք է բավարարվել նրանով, որ այժմ չկան ծաղիկ, խոլերա, մալյարիա, տրախոմա, որ հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացել է 15—20 անգամ, բժիշկներինը հասել է մոտ 80-ի, բացվել են շատ կաթնախոհանոցներ, նոր դեղատներ և այլն։ Այժմ մեզ հուզում են այլ բնույթի հարցեր, այլ պրոբլեմներ։ Արտաշատի շրջանի բնակչությանը հետաքրքրում է ո՛չ միայն հիվանդանոցում տեղավորվելը, այլև այն, որ բարդ կլինիկական, լաբորատոր քննությունները կատարվեն տեղում, որ օրգանիզմի նյութափոխանակության խանգարման պատճառը որոշելու համար նա հարկադրված չլինի փոխադրվել մայրաքաղաքի հիվանդանոցները։ Զանազան հիվանդությունների դեմ մղվող պայքարում առավել առաջնահերթ նշանակություն ունի պրոֆիլակտիկան, դրանցից ժամանակին պաշտպանվելը, քան այն ժամանակին բուժելը։ Հիմա քիչ է լավ պայմաններ ստեղծել հիվանդների առողջացման, աշխատունակության վերականգնման համար։ Ժողովրդական տնտեսության արագ աճի, անմարդաբնակ նորանոր շրջանների յուրացմանը զուգընթաց, պահանջվում է մտածել և ստեղծել առողջ միջավայր առողջ մարդկանց համար, պաշտպանել նախ և առաջ, առողջ մարդկանց առողջությունը, հիվանդությունների առաջացման համար ստեղծել անբարենպաստ միջավայր, ավելացնել մարդկանց միջին երկարակեցությունը։



Ահա այդ աստիճանաբար աճող պահանջները մղում են մեզ՝ սովետական բժիշկներիս, ավելի մտահոգվելու ժողովրդի առողջությամբ, հնարավոր ամեն ինչ անել, հիվանդությունների դեմ արդյունավետ պայքարելու համար։

Ինչպե՞ս լուծել գյուղական առողջապահության հրատապ խնդիրները։ Մեր կարծիքով, ամենից առաջ, անհրաժեշտ է գյուղական առողջապահությունը կազմակերպել գիտական հիմունքներով։ Ժամանակն է, որ այդ կարևոր հարցերը լուծելիս, նրա նյութատեխնիկական բազան, հեռանկարները պլանավորելիս ամեն ինչ հաշվարկել գիտական տեսանկյունից։ Այդ հնարավորություն կընձեռի ավելի մեծ ու հեռանկարային պրոբլեմներ մշակելու, լավ աշխատելու այսօր և առավել լավ պատկերացնելու մոտ ապագան՝ իր բոլոր բարդ պահանջներով։ Միայն այդ դեպքում կկարողանանք ավելի կարճ ճանապարհով հասնել նոր նվաճումների։

Ճիշտ կլինի կիրառվող շատ ձևերից ու մեթոդներից բացի, գյուղական առողջապահության գործը կազմակերպելիս ավելի լայնորեն օգտվել ներկայումս արագ զարգացող բժշկական աշխարհագրությունից. ըստ այդմ հաշվի առնելով մարդու և արտաքին միջավայրի փոխազդեցությունն ու կապը՝ ավելի ճիշտ նախագծել ու կազմակերպել գյուղական առողջապահության զարգացումը նաև մեզ մոտ։

Իսկ ի՞նչ նպատակ ունի և ի՞նչ է ներկայացնում իրենից գիտության այդ նոր բնագավառը։

Բժշկական աշխարհագրության ուսումնասիրությունների նպատակն է՝ հետազոտել ու լուսաբանել մարդու առողջության վրա ազդող արտաքին միջավայրի բնական ու սոցիալ-տնտեսական այն պայմանների կոմպլեքսը, որոնք կարևոր նշանակություն ունեն նաև մարդու հիվանդությունների ծագման և տարածման առումով։

Բժշկական աշխարհագրությունը, հիմնվելով բժշկության և աշխարհագրության անհրաժեշտ դրույթների վրա, իր լուման կմուծի մեր ժողովրդի առողջապահության կարևոր գործոններից մեկի՝ մարդկանց կենցաղի ու աշխատանքի հիգիենիկ պայմանների բարելավման ասպարեզում։

Շատ բազմազան հարցերի ուսումնասիրությամբ է զբաղվում բժշկական աշխարհագրությունը. մարդու շրջապատը, նրա արտաքին միջավայրը, բնական և սոցիալ-տնտեսական, աշխատանքային ու կենցաղային պայմաններն այնքան բարդ են ու բազմապիսի, իսկ դրանց ազդեցությունն ու հետևանքները մարդու օրգանիզմի վրա այնքան տարբեր, որ այդ ամենն ուսումնասիրելու համար անհրաժեշտ են աշխարհագրագետների, սոցիոլոգների, կենսաբան-անտրոպոլոգների, տնտեսագետների և այլոց միացյալ ջանքերը։

Ներկայումս բժշկությունն ունի բազում տվյալներ ու փաստեր, որոնք արտացոլում են արտաքին միջավայրի առանձին գործոնների ազդեցությունը մարդու առողջության ու երկարակեցության վրա։ Այժմ անհրաժեշտ է այդ բոլորն ամփոփել, մշակել գործնական առաջարկություններ, որոնց կիրառմամբ մարդկանց առողջապահության գործն ամենուրեք ավելի ճիշտ կկազմակերպվի։

Չնայած իր փոքր տերիտորիային, մեր հանրապետությունն աչքի է ընկնում ֆիզիկո-աշխարհագրական բազմազանությամբ։ Հայաստանի տարբեր կետերում արտաքին միջավայրն այլ կերպ, տվյալ տեղին յուրահատուկ ձևով է ազդում մարդկանց օրգանիզմի վրա, հետևապես տարբեր պայմաններ են պահանջվում առանձին հիվանդությունների ծագման, տարածման, այլ միջոց-



digitised by A.R.A.R.@

ներ՝ դրանց դեմ պայքարի կազմակերպման ու վերացման համար։ Բացի դրանից, բժշկա-աշխարհագրական ուսումնասիրությունների շնորհիվ հնարավոր կլինի ավելի լայնորեն օգտագործել մեր շրջապատում եղած բնականբուժիչ միջոցները, որպիսիք դեռևս լիովին ու ռացիոնալ չեն օգտագործվում։

Բնակչության առողջապահության բարելավման նպատակով աշխարհագրական միջավայրի ուսումնասիրությունը կօգնի՝ ապահովելու տվյալ տերիտորիայի բժշկա-աշխարհագրական բաժանումն ըստ առանձին շրջանների և ըստ այդմ մշակելու առողջապահության կազմակերպման եղանակները։

Նման աշխատանքը, ուսումնասիրությունները հնարավորություն կընձեռեն համապատասխան միջոցներ ձեռնարկելու բնական դրական գործոնների ռացիոնալ օգտագործման, մարդու առողջության վրա աշխարհագրական միջավայրի անբարենպաստ ազդեցության չեզոքացման ուղղությամբ. կձեռնարկվեն դիֆերենցիալ միջոցներ վարակիչ, սոմատիկ և պարազիտար տարբեր հիվանդությունների կանխման, կրճատման ու լիկվիդացման նպատակով, հնարավոր կլինի գիտական հիմունքներով կազմակերպել, պլանավորել առողջապահության (հատկապես գյուղական) գործը, դրա հեռանկարները։

Ժամանակն է, որ առողջապահության գործի յուրաքանչյուր կազմակերպիչ, պլանավորող, ուսումնասիրի բժշկական աշխարհագրությունը, որի դերը, ցավոք, դեռևս անտեսվում է մեզ մոտ։ Շահեկան կլինի մեր պարբերական բժշկական մամուլում տպագրել հանրապետության կոնկրետ պայմաններն ու հեռանկարներն արտացոլող աշխատություններ, ուսումնասիրություններ։

Ինչ խոսք, մեզ մոտ ևս կատարվել են այդպիսի ուսումնասիրություններ։ Օրինակ՝ 1962 թ. հրատարակվել է պրոֆեսոր Վ. Ա. Ալեքսանյանի կապիտալ աշխատությունը Հայաստանի էպիդեմիոլոգիկ աշխարհագրության մասին, որը լայն ճանաչում է գտել Միության մեջ, պրոֆեսոր Ա. Բ. Բաղդասարյանի աշխատությունները մեր հանրապետության բժշկական լանդշաֆտագիտության մասին և այլն։ Մեր կարծիքով, ժամանակն է միավորելու բոլոր ուժերը, կազմակերպելու նպատակասլաց աշխատանք այդ ուղղությամբ և մշակելու հանրապետությունում անցկացվող ուսումնասիրությունների մի ընդհանուր կոմպլեքսային գիտական պլան։ Հարկ է ստեղծել Հայաստանի բժշկա–աշխարհագրական կոմպլեքսային ատլաս, որն ընդգրկի անհրաժեշտ բոլոր հարցերի ուսումնասիրությունն ու պարզաբանումը։ Պետք է ասել, որ արդեն կազմված է այդ ատլասի ծրագրի նախագիծն իր բոլոր բաժիններով։ Այդպիսի աշխատանքներ վաղուց են կատարվում Անդրբայկալում, Ղազախստանում, Մոլդավիայում և այլուր։

Առաջարկում ենք այդ նպատակով մեր հանրապետությունում ստեղծել բժշկա-աշխարհագրական ուսումնասիրությունների կենտրոն, որը սիստեմատիկաբար կզբաղվի այդ խիստ կարևոր գործով։ Հայաստանի առողջապահության մինիստրությունը հավանություն է տվել բժշկական աշխարհագրության հետագա զարգացման ուղղությամբ ձեռնարկվող միջոցներին, և որոշել է մոտ ժամանակներս Երևանում կազմակերպել բժշկա-աշխարհագրական հատուկ բաժին։

Բժշկական աշխարհագրության զարգացումը մեզ մոտ առողջապահության գիտական կազմակերպման ուղիներից մեկն է։ Հուսանք, որ այն իր արժանի տեղը կգրավի մեր հանրապետությունում։

ՀԱՅՐԻՅԱՆ Ա. Պ.
ՇԱԽՈՅԱՆ Զ. Խ.

# ՊԱՏԱՍԽԱՆ ՀԱՐՑԵՐԻՆ

## Գյուղատնտեսական ձեռնարկություններում չօգտագործված հանգստյան օրերի դիմաց փոխհատուցում տալու կարգի մասին

Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղից ընկ. Հենրիկ Գասպարյանը դիմել է խմբագրության, խնդրելով պատասխանել այն հարցին, թե գյուղական պետական ձեռնարկություններում, որոնց աշխատանքը սեզոնային է, հանգստյան օր կա՞, իսկ եթե չկա, աշխատանքի վարձատրությունն ինչ կարգով է կատարվում։

Ստորև այդ հարցին պատասխանում է Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության կոլտնտեսությունների և սովխոզների գործերի գլխավոր վարչության պետ ընկ. Ա. Գ. Մարդոյանը։

Երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, այդ թվում նաև պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում աշխատողների համար սահմանված են հանգստյան օրեր։ Չօգտագործված հանգստյան օրերի դիմաց փոխհատուցում տալու կարգի մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թվականի հուլիսի 28-ի № 71 որոշման համաձայն, սովխոզների և պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների բանվորներին, որոնք աշխատում են բուսաբուծության բնագավառում, չօգտագործված հանգստյան օրերի դիմաց փոխհատուցում է տրվում անձրևային կամ ուրիշ ազատ օրերից։ Չօգտագործված հանգստյան օրերը տրվում են նաև դաշտային յուրաքանչյուր աշխատանքի (գարնանացան, ցել, խոտհունձ, բերքահավաք և այլն) ավարտումից հետո։ Բացի այդ, եթե տնտեսության ղեկավարության կողմից հանգստյան օրերը հայտարարվում են աշխատանքային օրեր, ապա այդ դեպքում առաջիկա երկու շաբաթվա ընթացքում բանվորներին պետք է տրամադրել այլ հանգստյան օրեր։ Հիշյալ ժամանակաշրջանում այդպիսիք չտրամադրելու դեպքում, չօգտագործված հանգստյան օրերի դիմաց հետագայում հանգստյան օրեր տրամադրելու հետ մեկտեղ, բանվորներին հանգստյան օրերին աշխատեցնելու համար լրացուցիչ վճարվում է հետևյալ չափով՝ տրակտորիստ-մեքենավարներին ժամանակավարձային տարիֆային դրույքների չորրորդ կարգով, իսկ բուսաբուծության բնագավառում աշխատող մյուս բանվորներին համապատասխան տարիֆային ցանցի ժամանակավարձային տարիֆային դրույքի 3-րդ կարգով։

Չօգտագործված հանգստյան օրերի դիմաց տրվող փոխհատուցումը, ինչպես նաև դրանց համար լրացուցիչ վճարումը, ձևակերպվում է հրամանով, այդ մասին տեղյակ պահելով բանվորներին։

Գյուղատնտեսական պետական ձեռնարկությունների մյուս աշխատողները (անասնապահներ, վարչական ու հաշվային անձնակազմ, պահակներ և այլն) հանգստյան օրերից օգտվում են այնպես, ինչպես արդյունաբերական ձեռնարկություններում և պետական հիմնարկություններում աշխատող բանվորներն ու ծառայողները։

digitised by A.R.A.R.@

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ԵՐԱՆՈՍԻ ԹՈՒՄԱՆՅԱՆ

*Կարճատև հիվանդությունից հետո, ս/թ հուլիսի 2-ին, վախճանվեց հանրապետության ականավոր գիտնական, մանկավարժ, պրոֆեսոր ՀՈՎՀԱՆՆԵՍ ԵՐԱՆՈՍԻ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ։ Լինելով մեր կուսակցության անձնվեր գաղափարամարտիկներից մեկը, նա իր ողջ կյանքը նվիրաբերեց կոմունիստական շինարարության վեհ գործին։*

*Գաղափարական, ազնիվ ու հայրենանվեր կոմունիստ էր ընկ. Թումանյանը, կոմունիստ, որը հանուն նորոգ կյանքի հաղթանակի այրվում էր աշխատանքի պրոցեսում, կոմունիստ, որը երիտասարդ հասակից դրսևորեց իր գիտական հակումը և նախանձելի աշխատասիրությամբ շոշափելի լումա մուծեց հանրապետության տնտեսական շինարարության ու մարքսիստական տնտեսագիտության բնագավառներում։*

*Լինելով մեր ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ, շուրջ յոթ տարի անմնացորդ Հովհաննեսն իր հարուստ գիտելիքները և սովետական անբասիր գիտնականի անսպառ ջանքերը՝ գիտա-մանկավարժական արդյունավետ ու ծավալուն գործունեությամբ հանդերձ, սիրահոժար նվիրեց ամսագրի գաղափարական, գիտական մակարդակի բարձրացմանը։*

*Առաջավոր գիտնականի, գաղափարական կոմունիստի և ազնիվ ընկերոջ հիշատակը վառ կմնա մեր սրտերում։*

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ
ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.։ Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։* *Ստորագրված է տպագրության 19/VII 1968 թ.։*

*ՎՖ 05831* *Պատվեր 1684* *Տիրաժ 11,200* *Գինը 25 կոպ.։*

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան Թումանյան փ. № 51ա*


## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ.—Նամակներ Կ ա պ ի տ ա լ ի մասին *(ժողովածու), Մ., Քաղհրատ, 1968, 744 էջ։*

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.—Դիալեկտիկական մատերիալիզմի մասին, *Մ., Քաղհրատ- 1968, 432 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Կարլ Մարքս *(Համառոտ կենսագրական ուրվագիծ՝ մարքսիզմի շարադրանքով), «Հայաստան» հրատ., 1968, 117 էջ։*

Մարքսի ընտանիքը նամակներում *(թարգմանված է գերմաներենից), Մ., Քաղհրատ, 1968, 216 էջ։*

ԼԱՊԻՆ Ն. Ի.—Երիտասարդ Մարքսը, *Մ., Քաղհրատ, 1968, 376 էջ։*

ԿՈՇԿԱՐԵՎԱ Լ. Ն..—Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բանվորական աշխատանքի վիճակագրության կազմակերպիչներ, *Մ.,* «Статистика» *հրատ., 1968, 76 էջ։*

Կ. Մարքսի Կապիտալի շուրջ ծավալված գաղափարական պայքարի պատմության ակնարկներ, *Մ., Քաղհրատ, 1968, 266 էջ։*

ՊԵՐԵՍՎԵՏՈՎ Ռ.—Անգնահատելի ժառանգության որոնումները *(Վ. Ի. Լենինի մի քանի ձեռագրերի ճակատագրի մասին), երկրորդ հրատարակություն, Մ., Քաղհրատ, 1968, 352 էջ։*

ԿՈՐՈԼԵՎ Ն. Ե.—Լենինը և միջազգային բանվորական շարժումը *(1914—1918 թթ.), Մ., Քաղհրատ, 1968, 296 էջ։*

ԿԱՍԻՄԺԱՆՈՎ Ա. Խ.—Ինչպես կարդալ և ուսումնասիրել Վ. Ի. Լենինի «Փիլիսոփայական տետրակները», *Մ., Քաղհրատ, 1968, 167 էջ։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության հեղափոխական բեռերիայի զարգացումը, *Մ., Քաղհրատ ,1968, 392 էջ։*

ՌՈՒԴԱԿՈՎ Ե. Վ., ՄԵԼԻՆ Ս. Ա. և ՍՏՈՐՈԺԵՎ Վ. Ի.—Տնտեսական ռեֆորմը սոցիալիստական երկրների գյուղատնտեսության մեջ, *Մ.,* «Экономика» *հրատ., 1968, 183 էջ։*

ԲՈՐԿՈՎ Ի. Ս. *և ուրիշներ*—Ստուգողական աշխատանքների նյութեր ՍՄԿԿ պատմությունից, *Մ.,* «Высшая школа», *1968, 240 էջ։*

ՍՍՀՄ ազգային պետականության կառուցման պատմությունը *(1917—1966), երկու հատորով։ ՍՍՀՄ ազգային պետականության կառուցումը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում (1917—1936 թթ.), հատ. 1, Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 503 էջ։*

ԲՈԼԴԻՐԵՎ Վ. Ա.—Բնակչության տնտեսական օրենքը սոցիալիզմի ժամանակ, *Մ., 1968, 112 էջ։*

ՄԱԼԻՆՈՎՍԿԻ ՄԱՐԻԱՆ, ՊԱՎԼՈՎԻՉ ԵԺԻ, ՊՈՏԵՐԱՆՍԿԻ ՎԱՑԼԱՎ, ՊՇԵԳՈՆՍԿԻ ԱՆՏՈՆԻ, ՎԻԼՑՈՒՇ ՄԱՐԻԱ—Լեհաստանի բանվորական շարժումը պատերազմի և հիտլերյան օկուպացիայի տարիներին։ Պատմական ակնարկ *(սեպտեմբեր 1939—հունվար 1943), Մ., Քաղհրատ, 1968, 456 էջ։*

ՏՐՈՒԽԱՆՈՎՍԿԻ Վ. Գ.—Ուինստոն Չերչիլ։ Քաղաքական կենսագրություն, *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 479 էջ։*

ՆԻԿԻՇՈՎ Ս. Ի.—Փիլիսոփայական հիմունքների լենինյան քննադատությունը, *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 372 էջ։*

ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ—Ջերմաց մխիթարություն *(ռուսերեն), «Հայաստան» հրատ., 1968, 244 էջ։*

ՊԵՏՐՈՍՅԱՆ Հ. Ս.—Ծառայությունների ոլորտը սոցիալիզմի օրոք և նրա կատարելագործման ուղիները, «Հայաստան» *հրատ., 1968, 255 էջ։*

digitised by A.R.A.R.@

44057



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԵՐԲԻՑԻԴ-ԽԹԱՆԻՉ

Հայտնագործվել է նոր հերբիցիդ՝ գիմագին (մրգատու ծառերի շուրջը գտնըվող մոլախոտերն ոչնչացնող նյութ), որը բարձրացնում է սպիտակուցների պարունակությունը որոշ բույսերում։ Գիմագինի չնչին քանակության օգտագործմամբ 80 տոկոսով ավելացել է որոշ սննդային և կերային բույսերի սպիտակուցը։ Դրանով կարելի է ոչնչացնել նաև կանաչ ոլոռնի, գարու, վարունգի, դդումի բանջարանոցների մոլախոտը։ Այժմ փորձեր են արվում պարզելու գիմագինի ազդեցությունը ցորենի և բրնձի դաշտերում։

## ՍՆՈՒՆԴ ՀՈՐԹԵՐԻ ՀԱՄԱՐ

Անգլիայում հորթին լրացուցիչ սնունդ տալու համար ստեղծել են կաթի փոխարինիչ։ Այն պատրաստում են չոր, յուղազերծ կաթի փոշուց, չոր սիճուկներից, այստեղ էլ ավելացնում են մինչև 15 տոկոս եփող ածխածին, որի մեջ կրախմալը արդեն վեր է ածվել շաքարի կամ դեկստրինի, 1—5 տոկոս վիտամինների, 1—5 տոկոս հանքային աղերի, 5—10 տոկոս ջրի։ Այդ ամբողջ զանգվածը մեկ և կեսից երկու րոպե մամլում են 40—70 մթնոլորտային ճընշման տակ։ Ստացվածով կերակրում են ո՛չ միայն հորթերին, այլ երբեմն նաև հասուն կենդանիներին։

## «ՏՈՐԻԱՍ» ՍԵՅՍՄՈԳՐԱՖԸ ՌԱԶՄԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Անգլիական «Էլլիոտ-Օտոմեյշն» ֆիրման անգլիական բանակի համար թողարկում է մոդեռնացված «Տորիաս» սեյսմոգրաֆը, որը սակայն չի հայտնաբերում երկրաշարժը և չի որոշում նրա ուժը։ «Տորիասը» ճանաչում է զանազան մեքենաների առկայությունը մինչև 15 կմ տարածության վրա։ Այն կարող է տարբերել անիվավոր մեքենաների աղմուկը թրթուրավորներից. «լսում է» նաև մարդու և կենդանիների ոտնաձայնը։

## ԱՄԱՆԵՂԵՆ ԼՎԱՑՈՂ «Радуга» ՄԵՔԵՆԱՆ

Հայրենական արտադրության այս մեքենան իր նախորդներից տարբերվում է նրանով, որ տնային տնտեսուհուց ամենևին ուշադրություն չի պահանջում։ Բավական է լցնել նրա մեջ լվացվող ամանեղենը, սեղմել կոճակը, և մեքենան կսկսի աշխատել։ Այն տաքացնում է պահանջվող քանակությամբ ջուր, լվանում, ողողում ամանեղենը, չորացնում և ինքն իրեն անջատվում, ավելորդ էներգիա չծախսելու համար։

Մեքենան միանգամից լվանում է 18 ափսե, 14 գավաթ, 6 զույգ-դանակ-պատառաքաղ։

Радуга-ն տեղադրվում է խոհանոցում, միացվում ջրմուղին, կոյուղուն և էլեկտրացանցին։ Նրա չափերը համապատասխանեցված են հայրենական արտադրության կահույքի չափերին։

## ՍԵՐՄՆԱՑԱՆ ԻՆՔՆԱԹԻՌԸ

Գարնանը, ցածրադիր վայրերում ջուրը լճանում, անանցանելի ցեխ է կիտում և դրա հետևանքով հարյուր-հազարավոր բերրի հողատարածություններ դառնում են անօգտագործելի, քանի որ անհնարին է լինում տրակտորների և գյուղատնտեսական այլ մեքենաների աշխատանքը նման տարածություններում։

Անգլիական ֆիրմաներից մեկն առաջարկել է նման հողատարածություններում օգտագործել ինքնաթիռներ, որոնք ունեն հատուկ սերմնացան։ Անգլիայում այժմ ինքնաթիռով ցանվում է մոտ 4000 հեկտար տարածություն։ Մեծ դաշտը ցանելու համար անհրաժեշտ են միայն երեք հոգի։ Նրանցից մեկը ցորենի սերմը լցնում է օդանավային ցանիչի մեջ, մյուսը ֆլուորեսենցիայի ներկով տարանշում է դաշտը, որպեսզի օդից պարզ երևա, իսկ երրորդը օդաչուն է։

Սերմնացան-ինքնաթիռի համար պահանջվում է վարպետ օդաչու, քանի որ ցանքը կատարվում է 9—12 մետր բարձրությունից, իսկ ինքնաթիռի համար շատ դժվար է այդքան ցածր թռչել։